Յաղագս Նոյի։

Այս ընդէ՞ր արդեւք զսա միայն որդւոյ անուամբ յորջորջեաց, իսկ վասն այլոցն ամենեցուն պարզաբար ասէ, թէ ծնաւ. զոր ընդդէմ իմն մարգարէանայ հայրն. Սա, ասէ, հանգուսցէ զմեզ 'ի գործոյ և 'ի տրտմութենէ ձեռաց, և յերկրէ՝ զոր անէծ տէր Աստուած։ Որ եղև ոչ հանգիստ, այլ ջնջումն որ ինչ միանգամ՝ 'ի վերայ երկրի։ Ինձ թուի՝ հանգուցանելն դադարեցուցանելն է. իսկ դադարեցուցանելն՝ զամբարշտութիւն և զչարիս, սատակմամբ մարդկան զազրագործաց դարուն երկրորդի։ Քանզի գեղեցկաբար ասաց, թէ 'ի գործոց մերոց, որ է յանօրէնութեանց. և 'ի տրտմութենէ ձեռաց, որովք կատարեմք զպղծութիւնս։ Բայց և հանգչին արդարեւ ըստ այս մարգարէութեան ոչ ամենեքին, այլ կատարեալքն յառաքինութեան ոգիք, յորժամ չարիք որպէս հեղեղաւ ջնջեալ մաքրին, իբրև առ՝ Նոյիւ մեղեալքն 'ի չարիս։ Իսկ որդւոյ անուամբ մեծարեաց զնա գիր, իբր զյայտնի և զնշանաւոր և զարժանաւոր ժառանգ հայրենականացն առաքինութեանց։

## Ե

Յաղագս հաւաստի գալոյ ազգաբանութեան երից որդւոցն Նոյի ցԱբրահամ և ցՆինոս և ցԱրամ. և թէ Նինոս ոչ Բէլ և ոչ որդի Բէլայ։

Այս յայտնի է ամենեցուն, զի դժուարահաւաք և տաժանելի է, որպէս գիւտ ժամանակացն իսկըզբանէ մինչև առ մեզ, առաւել ևս գիւտ որդէծնութեան նախարարականացն ծննդոց յերից անտի

De Noé.

Pourquoi appela-t-il seulement Noé, du nom de fils, tandis que pour tous les autres, il dit simplement: il engendre? Celui-ci, dit son père par une espèce de contradiction prophétique, celui-ci nous fera reposer du travail et de la fatigue de nos mains, des peines de la terre que le seigneur Dieu a maudite: ce qui ne fut pas repos, mais anéantissement de tout ce qui était sur la terre. Il me parait que faire reposer, c'est faire cesser, c'est faire cesser l'impiété et l'iniquité par l'extermination des hommes pervers du second age. Car il a fort bien dit: nous fera reposer de nos œuvres, c'est à dire de nos iniquités, et de la fatigue de nos mains avec les quelles nous commettons l'impureté. Il y eut vraiment repos, selon cette prophétie, non pas pour tous, mais pour les âmes consommées dans la vertu, lorsque les crimes sont lavés anéantis comme par le déluge, ainsi que le furent sous Noé les hommes adonnés à l'iniquité. Or, par le nom de fils, l'écriture a glorifié Noé, le déclarânt ainsi l'héritier direct des vertus de ses pères.

V.

Progression égale entre la généalogie des trois fils de Noé jusqu'à Abraham, jusqu'à Ninus et jusqu'à Aram. — Ninus n'est ni Bel, ni fils de Bel.

C'est une chose évidente pour tous, que rien n'est difficile, pénible à rassembler, comme la découverte des temps depuis le commencement jusqu'à nous, surtout la découverte de la filiation des lignées pa-

որդւոցն Նոյի, ցորքան կամք իցեն խուզել ումեք ըստ իւրաքանչիւր դարուց։ Մանաւանդ զի աստուածայնոյն գրոյ զիւրմն 'ի բաց հատեալ՝ յինքն սեփհական ազգ, ելիք զայլոցն իբր զարհամարհելեացն և իւրոցն անարժան կարգելոց բանից։ Օ որոց մեք սկսեալ ճառեսցուք որքան է կարողութիւն, որպէս գտաք զհաւաստին 'ի հնոց պատմութեանց, մերով մասամբ ամենևին անսուտ։

Իսկ դու, ով ուշիմ ընթերցասէրդ, հայեաց աստանօր ընդ հաստատութիւն կարգի երից ազգացդ մինչև ցԱբրաամ, ցՆինոս և ցԱրամ, և զարմացիր։
Սեմ կեցեալ ամս հարեւր, յետ երկուց ամաց ջրհեղեղին, ըստ աստուածային բանից, ծնանի զԱրփաքսաթ։

ՍԵՄ

Սեմ ամս հարեւր, ծնանի զԱրփաքսաթ.
Արփաքսաթ ամս հարեւր երեսուն և հինգ, ծնանի զԿայնան.
Կայնան ամս հարեւր և քսան, ծնանի զՍաղայ.
Սաղայ ամս հարեւր և երեսուն, ծնանի զԵբեր.
Եբեր ամս հարեւր երեսուն և չորս, ծնանի զՓաղեկ.
Փաղեկ ամս հարեւր երեսուն և երիս, ծնանի զՌագաւ։
Ռագաւ ամս հարեւր և երեսուն, ծնանի զՍերուք.
Սերուք ամս հարեւր և երեսուն, ծնանի զՆաքովր.
Նաքովր ամս եւթանասուն և ինն, ծնանի զԹարայ.
Թարայ ամս եւթանասուն, ծնանի զԱբրահամ։

ՔԱՄ

Քամ ծնանի զՔուշ.
Քուշ ծնանի զՄեստրիմ.

triarchales sorties des trois enfans de Noé, si l'on veut poursuivre les rechercher d'âge en âge: vu surtout que la divine écriture séparant les siens, son peuple particulier, laissa les autres nations comme des êtres méprisables, indignes de mention. En commençant nous parlerons donc de ces peuples, autant que possible, d'après ce que nous avons trouvé de certain dans les anciennes histoires, avec la plus grande sincérité de notre part.

Quant à toi, ô lecteur éclairé, contemple l'ordre, la suite des trois races jusqu'à Abraham, à Ninus, à Aram, et tu seras étonné.

Sem ayant vécu cent ans, deux ans après le déluge, selon les divines écritures, engendre Arphaxad.

### SEM

Sem à cent ans, engendre Arphaxad.
Arphaxad à cent trente-cinq ans, engendre Caïnan.

Caïnan à cent vingt ans, engendre Sala.
Sala à cent trente ans, engendre Héber.
Héber à cent trente-quatre ans, engendre Phaleg.
Phaleg à cent trente-trois ans, engende Rëu.

Rëu à cent trente ans, engendre Sarug.
Sarug à cent trente ans, engendre Nachor.
Nachor à soixante-dix-neuf ans, engendre Tharé.
Tharé à soixante-dix ans, engendre Abraham.

### CHAM

Cham engendre Chus.
Chus engendre Mesdrim.

Մեստրիմ ծնանի զՆեբրովթ.
Նեբրովթ ծնանի զԲաբ.
Բաբ ծնանի զԱնեբիս.
Անեբիս ծնանի զԱրբէլ.
Արբէլ ծնանի զՔայաղ.
Քայաղ ծնանի զմեւս Արբէլ.
Արբէլ ծնանի զՆինոս.
Նինոս ծնանի զՆինուաս.

ՅԱԲԵԹ

Յաբեթ ծնանի զԳամեր.
Գամեր ծնանի զԹիրաս.
Թիրաս ծնանի զԹորգոմ.
Թորգոմ ծնանի զՀայկ.
Հայկ ծնանի զԱրմենակ.
Արմենակ ծնանի զԱրամայիս.
Արամայիս ծնանի զԱմասիայ.
Ամասիայ ծնանի զԳեղամ.
Գեղամ ծնանի զՀարմայ.
Հարմայ ծնանի զԱրամ.
Արամ ծնանի զԱրայն գեղեցիկ:

Արդ զԿայնան չորրորդ 'ի Նոյէ ամենայնք 'ի ժամանակագրացն գրեն, և 'ի Սեմայ երրորդ: Նոյնպէս և զԹիրաս չորրորդ 'ի Նոյէ, իսկ Յաբեթայ երրորդ. թէպէտ ըստ մերում թարգմանութեան ոչ ուրեք 'ի բնագրի գտանի: Իսկ զՄեստրայիմ չորրորդ 'ի Նոյէ և երրորդ 'ի Քամայ՝ ոչ 'ի մերում թարգմանութեանս և ոչ 'ի ժամանակագրաց ուրեք կարգեալ գտանեմք: Այլ այսպէս զսա կարգեալ գտաք 'ի յուշմագունէ ումեմնէ և յընթերցասիրէ Ասորւոյ. և հաւատարիմ թուեցաւ մեզ ասացեալն: Քանզի Մեստրայիմ է Մեծրայիմ, որ իմանի Եգիպտոս. և բազումք 'ի ժամանակագրաց զՆեբրովթ,

Mesdrim engendre Nemrod.
Nemrod engendre Bab.
Bab engendre Anébis.
Anébis engendre Arbel.
Arbel engendre Chaël.
Chaël engendre un autre Arbel.
Arbel engendre Ninus.
Ninus engendre Ninyas.

## JAPHET

Japhet engendre Gomer.
Gomer engendre Thiras.
Thiras engendre Thorgom.
Thorgom engendre Haïg.
Haïg engendre Arménag.
Arménag engendre Armaïs.
Armaïs engendre Amassia.
Amassia engendre Kégham.
Kégham engendre Harma.
Harma engendre Aram.
Aram engendre Ara le Beau.

Or, Caïnan est inscrit par tous les chronologistes le quatrième depuis Noé et le troisième depuis Sem; de même aussi, Thiras est le quatrième depuis Noé, le troisième depuis Japhet, quoique, selon notre version, il ne se trouve nulle part dans la bible. Quant à Mesdraïm comme quatrième descendant de Noé, troisième de Cham, nous ne le trouvons inscrit nulle part ni dans notre version, ni dans les chronologistes; mais il est ainsi rangé par un savant Syrien : ce que dit ce savant, nous a paru certain. Car Mesdraïm est Medzraïm, qui signifie Égypte; beaucoup de chronologistes en disant que Nemrod, qui est Bel, était

որ է Բէլ, եԹովպացի զօլ ասելով՝ հաւանեցուցին զմեզ այսպէս հաւաստի լինել, յաղագս բնակութեան սահմանացն ընդ Եգիպտոս։

Յետ որոյ ասասցուք և զայս. զի Թէպէտ և ամք ժամանակաց ծննդոցն Աբրահամու մինչև ց՚Նինոս ոչ ուրեք գտանին Թուեալ, և կամ Թէ առ մեզ ոչ հասեալ, այլ հաւաստեաւ և ոչ Նորին ինքեան՝ Նինոսի. իսկ մերոյն ՅաբեԹի ամենևին ոչ։ Սակայն ասացեալ ազգաբանութիւնդ հաւաստի է. երեցունց ցեղիցն մետասան զօլով ց՚Աբրահամ և ց՚Նինոս և ցմերն Արամ. զի Արայն երկոտասաներորդ է յետ՝ Նինոսի, մանուկ տիովք վախճանեալ։ Եւ է ճշմարիտ, և մի ոք յերկուացի. քանզի պատմէ մեզ զայսոսիկ յոլով իրս հաւատարիմն Աբիւդենոս, և ասէ այսպէս. Նինոս Արբէեղայ, Քայաղայ, Արբէեղայ, Անէեբայ, Բաբեայ, Բէլայ։ Նոյնպէս և զմերն՝ 'ի Հայկայ մինչև ց՚Արայն գեղեցիկ, զոր սպանեալ կաԹոտն Շամիրամ, Թուէ այսպէս. Արայն գեղեցիկ՝ Արամեայ, Հարմեայ, Գեղամեայ, Ամասեայ, Արամանեայ, Արամենակայ, որ եղև հակառակ Բէլայ մենգամայն և կենախուզ։ Եւ զայս մեզ Աբիւդենոս յիւրում առաջնում արձանականի 'ի մանր ազգաբանութեան ասէ. զոր ասա ուրեմն յետոյ ոմանք բարձին։

Այսոցիկ վկայէ և Կեփաղիոն. քանզի ասէ 'ի միում գլխոյն այսպէս. Սանր զամենայնսն յիսկզբան մերոյ աշխատութեանս սկսաք գրել զազգաբանութիւնսն 'ի դիւանացն արքունի. այլ առաք հրաման 'ի Թագաւորաց՝ Թողուլ զաննշանից և զվատաց արանց 'ի հնոցն զյիշատակն, և գրել միայն զքաջս և

éthiopien, nous ont persuadé, que le fait est certain, en raison de la position limitrophe avec l'Égypte.

Après cela nous dirons encore : quoique les années des temps des lignées de Cham jusqu'à Ninus, ne se trouvent comptées nulle part, ou que la connaissance ne nous en soit pas parvenue, quoiqu'il n'y ait pas non plus certitude à l'égard de Ninus lui-même, aucune certitude à l'égard de notre Japhet; cependant la généalogie ci-dessus est certaine: chacune des trois lignées se compose de onze individus, jusques à Abraham, à Ninus, à notre Aram ; car Ara est le douzième après Ninus, Ara mort très jeune. Les faits sont vrais, que personne n'en doute, car ils nous sont rapportés par Abydène, historien très souvent véridique; il s'exprime ainsi: Ninus fils d'Arbel, fils de Chaël, fils d'Arbel, fils d'Anébis, fils de Bab, fils de Bel. De même aussi pour notre filiation depuis Haïg jusqu'à Ara le Beau que fit perir l'impudique Sémiramis, il compte ainsi: Ara le Beau, fils d'Aram, fils de Harma, fils de Kégham, fils d'Amassia, fils d'Aramaïs, fils d'Araménag, Haïg qui fut l'ennemi de Bel et son meurtrier. Ces faits nous sont transmis par Abydène dans le premier recueil de généalogies détaillées qu'on a depuis anéanties.

Céphalion témoigne des mêmes faits ; car il s'exprime ainsi dans un chapitre: « Au commencement de notre entreprise, nous avions commencé à écrire toutes les généalogies, même celles d'individus ordinaires d'après les archives royales ; mais nous avons reçu ordre des rois, de laisser de côté la mémoire de ces hommes insignifiants, sans vertu, dans l'antiquité ; d'inscrire seulement les hommes généreux, les sages, les con-

զիմաստունս և զաշխարհակալս նախնիս, և մի՛ յանպիտոս զժամանակս մեր ծախել. և զայլսն։

Այլ այս մեզ ամենևին օտար և արտաքոյ ճշմարտութեանն, որք զՆինոս Բելայ ասեն որդի, կամ թէ նոյն ինքն Բէլ. զի ոչ ազգաբանութիւնն և ոչ ամացն ժողովումն այսոցիկ վկայէ։ Բայց թէ ըստ նշանաւոր և անուանի լինելոյ՝ ոք պատեհ համարեալ այսպէս կարգիցէ զհեռին մօտաւոր։ Եւ գտաք զայսոսիկ արդարև Յունաց դպրութեամբ. զի թէպէտ և Յոյնք ինքեանք 'ի քաղդէացւոցն փոխեցին յիւրեանց լեզուն, և թէպէտ և քաղդէացի ոք ինքնակամ յօժարութեամբ և կամ թէ 'ի հրամանէ թագաւորաց հարկեալ զայս իրագործել, որպէս Արիոս ոմն և այլք բազումք, սակայն մեք Յունաց համարիմք, որպէս 'ի նոցանէ ուսեալք։

Զ

Յաղագս թէ է ինչ որ հաւաստի, և է որ օտար 'ի Մովսիսէ պատմեն այլքն հնախօսք, և յաղագս Ողիմպիոդորայ փիլիսոփայի անգիր զրուցացն։

ԶՀԱՒԱՍՏԻՆ, որչափ կարացեալ 'ի բազմացն ընտրեալ բանիցն, կարգեցաք զծնունդս երից որդւոցն՝ Նոյի, ցԱբրաամ և ցՆինոս և ցԱրայն. որում ոչ զոք ընդդիմանալ կարծեմ 'ի միտս ունողացն, բայց թէ զճշմարտութեանն ոք խորհելով քակել զոճ, յառասպելս զճշմարիտ բանս ախորժելով փոփոխել փութայցէ. և յայսոսիկ իւրաքանչիւր միտք որպէս կամին՝ ուրախասցին։

Այլ թէ շնորհակալ և մերոյս տքնութեանց և ջանից լինիցիս, ով ուսումնասէր դու և զմեզ այսմ աշխատեցուցող, անցից սակաւ բանիւք յիշատակաց յաղագս որոյ վերագոյնդ կարգեցաք, թէ որպէս առաջինքն 'ի վիպագրացն յաղագս այսորիկ հաճեցան

quérants et de ne pas dépenser nôtre temps inutilement, etc.

Tout à fait étrange et hors de la vérité nous parait l'opinion de ceux qui disent Ninus fils de Bel ou Bel lui-même; ni la généalogie, ni la réunion des années ne justifient cette opinion. Mais sans doute pour se donner quelque célébrité, quelqu'un aura cru convenable de rapprocher ce qui est éloigné. Toutes ces données, nous les avons vraiment trouvées dans la littérature des Grecs; car quoique les Grecs eux-mêmes les aient fait passer du chaldéen dans leur langue, et qu'un certain Chaldéen de sa propre volonté ou d'après l'ordre des rois, ait entrepris ce travail, comme firent Arius et beaucoup d'autres, cependant nous attribuons tout aux Grecs, comme ayant tout appris d'eux.

## VI.

Sur quelques points, les autres archéologues s'accordent avec Moïse, ils en different sur d'autres points.—Discours non écrits du philosophe Olympiodore.

La vérité extraite, autant que possible, d'un grand nombre d'écrivains, nous avons disposé les descendances des trois fils de Noé, jusqu'à Abraham, à Ninus, à Ara : à cela, personne, je crois, parmi les hommes de sens ne s'opposera; mais si croyant briser le type de la vérité, quelqu'un se plait à changer en fables mes véridiques paroles, libre à lui, que chacun s'amuse comme il veut.

Si tu es reconnaissant de nos veilles et de nos efforts, ô toi ami de l'instruction, toi qui nous convie à ce travail, je reviendrai en peu de mots sur ce que nous avons établi plus haut, je dirai comment les premiers d'entre les chroniqueurs se sont plu à écrire

շարագրել. Թէպէտ և ոչ ունիմ այժմ ասել յամբարայնոցս մատենից Թագաւորացն այսպէս արդեւք գտեալ, եթէ ըստ ախորժելոյ որպէս կամեցան իւրաքանչիւրքն փոփոխել զանուանսն և զգրոյցս և զժամանակս, և կամ այլ զինչ և իցէ պատճառ: Բայց որպէս իսկզբանն երբեմն 'ի ճշմարտէն, և երբեմն 'ի ստէն. որպէս յաղագս Նախաստեղծին, ոչ առաջին մարդ ասելով զնա, այլ Թագաւոր. սոյնպէս անուն խժական նմա և անյիշանակ կոչելով, և ամս տալով նմա երեսուն և վեց հազար: Իսկ Թուով նահապետաց և 'ի ջրհեղեղին յիշատակաւ, զոյգ և հաւասար Մովսիսի. նոյնպէս և յետ ջրհեղեղին երիս կարգելով արս անուանիս յառաջ քան զաշտարակաշինութիւնն, զկնի նաւարկութեանն Քսիսութրեայ 'ի Հայս, ճշմարտեն. իսկ անուանցն փոփոխմամբ և բազմօք այլովք ստեն:

Բայց ես այժմ ուրախացայց հաւ առնելով առաջիկայիցս իմոց բանից 'ի սիրելոյն իմմէ և քան զշատս յարդարախօսողէ, 'ի բիւռոսեանն Աբիւղեայ: Յառաջ քան զբուրգն, ասէ, և զբազմաբարբառն լինելոյ ձայնի ազգի մարդկան, և զկնի նաւարկութեանն Քսիսութրեայ 'ի Հայս, Զրուանն և Տիտանն և Յապետոսթէ լինէին իշխանք երկրի: Որ ինձ Թուին Սեմ, Քամ և Յաբեթ:

Եւ 'ի բաժանել սոցա, ասէ, զամենայն տիեզերս ընդ իւրեանց իշխանութեամբ, հարստացեալ տիրէ 'ի վերայ երկոցունցն ևս Զրուանն: Զոր աստ ուրեմն Զրադաշտ մոգ արքայ բակտրիացւոց, որ է Մեդաց, սկիզբն և հայր աստուածոցն ասաց լինել. և բազում այլ ինչ զնմանէ առասպելեաց, զոր անտեղի է մեզ այժմ երկրորդել:

Արդ 'ի բռնանալն, ասէ, Զրուանայ, ընդդիմացան նմա Տիտանն և Յապետոսթէ, 'ի մարտ պա-

touchant ces sujets, quoique je ne puisse pas dire ici, si c'est dans les bibliothèques des rois qu'ils ont trouvé ces documens, ou si chacun selon son caprice a changé les noms, les récits, les temps, ou s'il y a encore quelqu'autre cause. Pour ce qui est du commencement, tantôt il y a du vrai, et tantôt du faux, comme au sujet du premier être créé, en ne l'appelant pas premier homme, mais roi, de même aussi en lui donnant un nom barbare, insignifiant, en lui donnant trente six mille ans; mais quant au nombre des patriarches et à la mention du déluge, il y a accord avec Moïse : de même aussi après le déluge, en mettant trois personnages célébres avant la construction de la tour, après la navigation de Xisuthre en Arménie, ces chroniqueurs disent la vérité; pour le changement de noms, et sur bien d'autres points encore, ils mentent.

Mais à présent, je me réjouirai en commençant mes récits d'après ma chère Sibille bérosienne, plus véridique que beaucoup d'historiens. « Avant la tour, dit-elle, et la multiplication des langues chez le genre humain, après la navigation de Xisuthre en Arménie, Zerouan, Titan, et Japhétos étaient princes de la terre ». Ces personnages me paraissent être Sem, Cham et Japhet.

« A peine ont-ils, dit la Sibille, partagé tout l'univers sous leur puissance, Zerouan s'érige en maître sur ses deux copartageans », Zerouan, que le mage Zoroastre, roi des Bactriens, c'est à dire des Mèdes, dit être principe et père des dieux. Zoroastre a encore débité bien d'autres fables sur le compte de Zerouan, fables qu'il serait déplacé de reproduire ici.

« Titan et Japhéthos s'opposèrent à la tyrannie de Zerouan et engagèrent avec lui la guerre. Car Zerouan

տերազմի ընդ նմա գրգռելով. վասն զի թագաւորեցուցանել զորդիս իւր 'ի վերայ ամենեցուն խորհէր: Եւ յայսպիսում խռան յափշտակեաց, ասէ, Տիտանն զմասն ինչ 'ի ժառանգութեան սահմանացն Զրուանայ: Ապա 'ի մէջ անցեալ քոյր նոցա Աստղիկ, համոզեալ դադարեցուցանէ զաղմուկն. եւ յանձն առնուն թագաւորել Զրուանայ. բայց դաշինս ուխտից եւ երդմանց 'ի միջի հաստատեն, սպանանել զամենայն արու՝ որ ծնանիցի Զրուանայ, զի մի ազգաւ 'ի վերայ նոցա թագաւորեսցէ: Ուստի եւ արս հզօրս 'ի Տիտանացն 'ի վերայ ծննդոց կանանց նորա կարգեին: Եւ սպանեալ զերկուս ումանս վասն երդման ուխտին հաստատուն կալոյ, խորհի այնուհետեւ քոյրն նոցա Աստղիկ համոզերձ կանամբք Զրուանայ, հաւանեցուցանել զոմանս 'ի Տիտանացն՝ ապրեցուցանել զայլ մանկունս, եւ յարեւմուտս կոյս յուղարկել 'ի լեառն՝ որ անուանեալ կարդայրն Դիւցընկէց, իսկ այժմ կոչի Ոլիմպոս:

Արդ զայսոսիկ թէպէտ առասպելս ոք, թէպէտ ճշմարտութիւն հաշուել համարեսցի, բայց ես որպէս համարեալ եմ, բազում ինչ ճշմարիտ է: Քանզի եւ որ 'ի կիպրացւոց Կոստանդեայ եպիսկոպոս Եպիփանոս 'ի հերձուածոցն յանդիմանութեան, յորժամ ճշմարիտ եւ արդարադատ զԱստուած ձեռնարկէ ցուցանել, եւ վասն ջնջելոյ որդւոցն Իսրայէլի զեւթըն ազգսն, ասէ այսպէս, եթէ արդարադատապէս Աստուած զազգսն զայնոսիկ ջնջեաց յերեսաց որդւոցն Իսրայէլի. զի 'ի բաժնի որդւոցն Սեմայ հասեալ էր երկիր կալուածոցս այսոցիկ, բռնութեամբ Քամ 'ի վերայ եկեալ յափշտակեաց: Իսկ Աստուծոյ իրաւունս պահեալ զերդման ուխտին, վրէժ հատուցանէ ազգին Քամայ, 'ի բաց դարձուցանելով զժառանգութիւնն Սեմայ: Այլ զՏիտանն եւ ըզՌափայիմն յիշեն աստուածային գիրք:

pensait à faire regner ses enfans sur tous. Dans ce conflit, Titan, dit l'historien, ravit une partie du territoire de Zerouan: mais leur sœur Asdghig, s'interposant entr'eux, fait cesser le différend. Ils consentent à laisser régner Zerouan, mais ils conviennent par un traité juré, de faire périr tout enfant mâle, qui naîtra de Zerouan, afin qu'il ne regne pas sur eux dans sa postérité : c'est pourquoi ils préposent de robustes Titaniens pour surveiller les couches des femmes de Zerouan. Déjà deux enfans mâles sont immolés pour maintenir le pacte juré, lorsque la sœur de Zerouan, Titan et Japhétos, médite avec les femmes de Zerouan le projet d'engager, de déterminer désormais quelques Titaniens à laisser vivre les autres enfans mâles, et à les envoyer en occident sur la montagne qu'on appelait Tutzenguetz, à présent l'Olympe.

Quoique ces récits soient traités de fables, ou tenus pour vérité, moi, comme j'en suis persuadé, il s'y trouve beaucoup de vrai: car Épiphâne, évêque de Constance en Chypre, dans sa réfutation des hérésies, lorsqu'il entreprend de montrer que Dieu est véritable et juste dans ses jugemens, même en exterminant les sept races par les mains des enfans d'Israël, s'exprime ainsi: « C'est avec justice que Dieu anéantit et fit disparaître ces races de devant les enfans d'Israël; car la terre de ces possessions était échue en partage aux enfans de Sem, et Cham vint fondre sur cette terre et s'en empara. Or, Dieu, gardant les droits des traités jurés, tira vengeance de la race de Cham, en lui arrachant l'héritage de Sem. Les Titans et les Raphaïmes sont mentionnés dans les divines écritures.

Բայց պարտ է մեզ զոմանց անգիր հին զրոյցս, որ պատմեալ եղեն վաղ ուրեմն 'ի մէջ իմաստնոցն Յունաց, և հասին մինչև 'ի մեզ այս զրոյցք 'ի Գորգի և 'ի Բանան անուն կոչեցելոց, և ս երրորդ ոմն Պրա-ւիթ, թէպէտ և յոյժ սակաւուք՝ երկրորդել։ Յորոց մի ոմն 'ի նոցանէ վարժեալ փիլիսոփայութեամբ, ասէր այսպէս, թէ Ով ծերք, յորժամ էի 'ի մէջ Յունաց զիմաստութիւն վարժելով, դէպ եղև 'ի միում աւուրց՝ զի վասն աշխարհագրութեանց և բաժանմանց ազգաց 'ի մէջ արանց իմաստնոց և հմտագունից բան ճառիւր · ոմանք այլազգաբար և ոմանք այլաբանաբար զրոյցս մատենից տային · իսկ որ կատարելագոյնն էր 'ի նոսա, Սլոմպիոդորոս անուն, այսպէս ասաց · Պատմեցից ձեզ, ասէ, զրոյցս անգիրս յաւանդութենէ 'ի մեզ հասեալ, զոր և բազումք 'ի գեղջկաց զրուցեն մինչև ցայժմ ։ Սատեան լեալ զՔսիսութրեայ և զորդւոյ նորա, որ այժմ ոչ ուրեք երևի · յորում, ասեն, կարգ լեալ բանից այսպիսի ։

Յետ նաւելոյ Քսիսութրեայ 'ի Հայս և դիպելոյ ցամաքի, գնայ, ասէ, մի յորդւոց նորա կոչեցեալն Սիմ ընդ արևմուտս հիւսիսոյ դիտել զերկիրն, և դիպեալ դաշտի միում փոքու առ երկայնանստիւ միով լերամբ, գետոց ընդ մէջ նորա անցանելով, 'ի կողմանս Ասորեստանի, դադարէ առ գետովն երկլուսնեայ աւուրս, և անուանէ յանուն իւր զլեառն Սիմ. և դառնայ անդրէն յարևելս հարաւոյ, ուստի եկն ։ Իսկ 'ի կրտսերագունից որդւոցն նորա Տարբան անուն, երեսուն ուստերօք և հնգետասան դստերօք և նոցին արամբք մեկնեալ 'ի հօրէն, բնակէ անդրէն 'ի նոյն գետեզերքն, յորոյ անուն և զգաւառն անուանէ Տարօն, և զանուն տեղւոյն ուր բնակեցաւն՝ կոչէ Ցրօնս · զի անդ զառաջինն սկիզբն եղև բաժանելոյ որդւոց նորա 'ի նմանէ ։ Նորին դարձեալ և առ եզերբ սահմանացն բակտրիացւոց ասէին բնակել

Mais il nous faut, quant à ces anciens discours tenus autrefois au milieu des sages de la Grèce, et transmis jusqu'à nous par les nommés Korki, Panan, et même un troisième personnage appelé David, il nous faut, quoiqu'en très peu de mots, répéter ces discours. Un de ces personnages versé dans la philosophie, parlait ainsi: « Vieillards, lorsque j'étais au milieu des Grecs, cultivant la sagesse, il arriva un jour qu'il il y eut entre ces sages et ces érudits entretien, dissertation au sujet de la géographie et de la division des nations. Les uns d'une manière et les autres d'une autre citaient les livres; or le plus profond de tous, Olympiodore, s'exprima ainsi: Je vous rapporterai, dit-il, les discours non écrits, arrivés à nous par la tradition, discours que beaucoup de paysans tiennent jusqu'à présent. Il est un livre touchant Xisuthre et ses enfans, livre qu'on ne voit aujourd'hui nulle part, livre, dit-on, où se trouve ainsi fixé l'ordre des faits:

« Après la navigation de Xisuthre en Arménie et son arrivée en terre-ferme, un de ses fils appelé Sim, s'en va, est-il dit, au nord-ouest, reconnaître le pays. Arrivé à une petite plaine au pied d'une montagne à longue base, plaine traversée par des fleuves, qui portaient leurs eaux en Assyrie, il s'arrête sur les bords du fleuve, l'espace de deux lunes, et appelle de son nom la montagne, Sim; puis il retourne au sud-est, d'où il était venu. Un de ses fils puinés, nommé Darpan, avec ses trente fils, ses quinze filles et leurs maris s'étant séparé de son père, retourne s'établir sur ces même rives. Sim, du nom de son fils, appelle le canton, Daron; quant au lieu où il a habité lui-même, il l'appelle Tzerônk, (dispersion): car là eut lieu le premier commencement de la séparation de ses enfans loin de lui. Étant allé sur les confins du pays des Bactriens, dit-

սակաւ աւուրս. մնացեալ և մի ոմն պանդ յորդւոցն նորա: Քանզի կողմանք արևելից զԶրուան զՍեմ կոչեն, և Զարուանդ գաւառն անուանեալ ասեն մինչև ցայժմ: Բայց առաւել յաճախագոյն հինքն արամազնեաց 'ի նուագս բամբռան և յերգս ցցոց և պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք: Եւ այսոքիկ զըրոյցք սուտ և կամ թէ արդարև լեալք, մեզ չէ ինչ փոյթ: Այլ վասն գիտելոյ քեզ զամենայն՝ որ ինչ 'ի լրոյ և որ ինչ 'ի գրոց, անցանեմ ընդ բնաւն 'ի գիրս յայս, զի իմասցիս զառ քեզ պարզամտութիւն իմոց խորհրդոցս:

## Է

Յայտարարութիւն սակաւուց, թէ ըստ արտաքնոյն ասացեալ է Բէլդ. ըստ աստուածային բանից ճշմարտութեամբ Նեբրովթ է:

ԶԲԷԼԱՅ, առ որով նախնին մեր Հայկ, բազումք բազում ինչ այլ ընդ այլոյ պատմեն. բայց ես ասեմ զԿռոնոսդ անուն և զԲէլ՝ Նեբրովթ լեալ. որպէս եգիպտացիք թուեն հաւասար Մովսիսի, Եփեստոս, արեգակն, Կռոնոս, որ է Քամ, Քուշ, Նեբրովթ, թողեալ զՄեստրայիմ: Զի առաջին ասեն իշխեանց մարդ լեալ զԵփեստոս և գտակ հրոյ:

Եւ ընդէ՞ր սա գտակ հրոյ և կամ Պռոմեթէոս գողացեալ զառ 'ի յաստուածոցն հուր և շնորհեալ մարդկան. որ է այլաբանութիւն, և ոչ բերէ ասել կարգ բանիս:

Որում և հարստութեանցն եգիպտացւոց կարգ, և ամենայն ժողովումն 'ի Հովուացն հարստութենէ մինչև ցՀեփեստոս, վկայէ հաւասար եբրայեցւոցն լեալ, որ է Յովսեփայ ժամանակացն մինչև ցՍեմ, Քամ և ցՅաբեթ:

on, il y demeura quelques jours, mais un de ses fils y resta : car les contrées de l'orient appellent Sim, Zerouan, et son canton, Zarouant, jusqu'à présent. Mais souvent, très souvent, les anciens descendans d'Aram redisent ces traditions populaires au son des cymbales, dans leurs ballades et leurs danses ». Que ces récits soient faux ou véridiques, peu nous importe. Mais pour t'instruire de tout ce qui se trouve dans la tradition et les livres, je passe tout en revue dans cet ouvrage, afin que tu connaisses toute la sincérité de mes dispositions à ton égard.

## VII.

Montrer en peu de mots, que le personnage appelé Bel par les auteurs profanes, selon les divines écritures est bien Nemrod.

On raconte de Bel, sous qui vivait notre ancêtre Haïg, grand nombre d'histoires différentes ; mais moi je dis, que le personnage nommé Chronos et Bel est bien Nemrod. Comme les Égyptiens comptent par nombre égal avec Moïse, Épheste, le soleil, Chronos, c'est-à-dire Cham, Chus, Nemrod, laissant de côté Mesdraïm ; car ils disent que leur premier homme est Épheste, et inventeur du feu.

Pourquoi inventeur du feu, ou pourquoi Prométhée est-il dit avoir dérobé aux dieux le feu pour le donner aux hommes ? C'est une allégorie que ne permet pas de rapporter l'ordre de cette histoire.

L'ordre des dynasties des Égyptiens, toute la succession en remontant de la dynastie des Pasteurs jusqu'à Épheste, tout témoigne du rapport parfait avec la dynastie des Hébreux, comptée en remontant des temps de Joseph jusqu'à Sem, Cham et Japhet.

Եւ այսոքիկ բաւական լիցին ասել այսչափ։ Զի եթէ զամենայն եղեալս յաշտարակագործութենէն մինչև առ մեզ՝ ՚ի հաստողութիւն քեզ ՚ի մէջ ածել ջանայցեմք պատմութիւն, երբ ապա յըղձալին քո հասանիցեմք զրուցաց պատմութիւնն. մանաւանդ զի առաջիկայս մեր երկար է գործ, և ժամանակ մահկանացուաց սուղ և անյայտ։ Այլ սկսեալ ցուցից քեզ զմերն, թէ ուստի՛ և որպէս։

## Ը

Թէ ո՛վ կամ ուստի՛ զայսպիսի եգիտ զրուցաբանութիւնս։

Արշակ մեծ արքայ Պարսից և Պարթևաց, որ և ազգաւ իսկ Պարթև, ապստամբեալ, ասեն, ՚ի Մակեդոնացւոցն, և թագաւորեալ ՚ի վերայ ամենայն արևելից և ասորեստանեաց, և սպանեալ զԱնտիոքոս թագաւոր ՚ի Նինուէ, հնազանդեցուցեալ զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ, սա թագաւորեցուցանէ զեղբայր իւր զՎաղարշակ ՚ի վերայ աշխարհիս Հայոց, պատեհ իմն համարեալ այսպէս անշարժ իւրոյ թագաւորութեանն լինել։ Եւ քաղաք թագաւորութեան տայ նմա զՄծբին, և սահմանս հատանէ նմա զմասն ինչ յարևմտեայ Ասորւոց և զՊաղեստին և զԱսիայ և զամենայն միջերկրեայս և զԹետալիայ, ՚ի ծովէն Պոնտոսի մինչև ՚ի տեղին՝ ուր Կովկաս յարևմտեանն յանգի ծով, և զԱտրպատական, և այլ որչափ միտք քո և քաջութիւն հասանեն. զի սահմանք քաջաց, ասէ, զէնն իւրեանց, որքան հատանէ՝ այնքան ունի։

Սորա կարգեալ զիշխանութիւն իւր մեծապէս, և հաստատեալ զթագաւորութիւն իւր, կամ եղև գիտել սորա, թէ ո՛յք և որպիսի՛ արք տիրեալ են ՚ի

Assez sur ce sujet; car si nous voulions porter à ta connaissance l'histoire de tous les faits arrivés depuis la construction de la tour jusqu'à nous, quand pourrions-nous arriver à notre dropre histoire, objet de tes desirs, vu surtout que notre œuvre est longue, et le temps accordé aux mortels, de courte et incertaine durée? Mais je vais commencer par te montrer notre histoire, d'où elle est tirée, comment elle se comporte.

## VIII.

### Qui a trouvé ces récits, et d'où sont-ils tirés?

ARCHAG, grand roi des Perses et des Parthes, parthe lui-même de nation, après avoir secoué, dit-on, le joug des Macédoniens, établi son autorité sur tout l'orient et l'Assyrie, tué Antiochus, roi de Ninive, soumis tout l'univers, met son frère Vagharchag sur le trône d'Arménie, croyant cette mesure propre à rendre son empire inébranlable. Il donne à Vagharchag pour capitale Medzpine; pour états, une partie de la Syrie occidentale, la Palestine, l'Asie, toute la partie méditerrannée et la Tidalie, depuis la mer du Pont jusqu'à l'endroit où le Caucase se termine à la mer occidentale, de plus l'Aderbadagan et autre territoire « aussi étendu que te le feront tes pensées, ta valeur, dit-il à Vagharchag; car qui trace des limites à l'empire des braves? leurs armes: plus elles étendent leur territoire, plus ils en possèdent ».

Vagharchag ayant disposé, reglé d'une manière grande et digne, toutes les parties de sa puissance, organisé son royaume, voulut savoir qui, quels princes

վերայ աշխարհիս Հայոց մինչև ցնա. զքաջա՞ց արդեւք եթէ զվատաց անցեալ ունիցի զտեղի։ Իսկ գտեալ զոմն Ասորի Մար Աբաս Կատինայ, այր ուշիմ և վարժ քաղդէացի և յոյն դպրով, զոր յղէ առ մեծ եղբայրն իւր Արշակ արժանի ընծայիւք, բանալ նմա զդիւանն արքունի։ Իսկ գրէ առ նա ձև բանից օրինակ զայս։

## Թ

Թուղթ Վաղարշակայ արքայի Հայոց առ մեծն Արշակ արքայ Պարսից։

ԱՐՇԱԿ Թագաւոր երկրի և ծովու, որոյ անձն և պատկեր որպէս և է իսկ մեր աստուածոց, իսկ բախտ և պատահումն 'ի վեր քան զամենայն թագաւորաց, և միտք լայնութիւն՝ որչափ երկնի 'ի վերայ երկրի. Վաղարշակ կրտսեր եղբայր քո և նիզակակից, որ 'ի քէն կարգեալ արքայ Հայոց. ողջ լեր ամենայն յաղթութեամբ։

Վասնզի պատուէր ընկալայ 'ի քէն՝ քաջութեան և իմաստութեան հոգ տանել, ոչ երբէք անփոյթ արարեալ զքոյովդ խրատու, այլ խնամ տարեալ հոգացայ ամենայնի, որչափ միտք և հասողութիւն բաւեցին։ Իսկ այժմ 'ի քումդ խնամակալութենդ զետեղեալ թագաւորութիւնս, խորհուրդ 'ի մտի եդի գիտել, թէ ո՞յք ոմանք յառաջ քան զիս իցեն տիրեալ աշխարհիս Հայոց, և ուստի նախարարութիւնքս՝ որ աստ կան։ Զի ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի, և ոչ մեհենից պաշտամունք. և ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն 'ի խուռն ամենայն և վայրենի։

Վասն որոյ աղաչեմ զքո տէրութիւնդ, հրամայ-

avaient exercé l'autorité sur le pays des Arméniens jusqu'à lui; si de princes généreux, ou de princes sans vertu il occupait la place. Ayant trouvé un Syrien, Mar Apas Gadina, homme profond et très versé dans les lettres chaldéennes et grecques, il l'envoye avec de riches présens vers son frère ainé, Archag, pour le prier d'ouvrir ses archives royales à ce même Mar Apas Gadina.

Vagharchag écrit à son frère une lettre ainsi concue:

## IX.

**Lettre de Vagharchag roi des Arméniens, au grand Archag, roi des Perses.**

« Archag, roi de la terre et de la mer, toi, de qui la personne et l'image sont comme celles-même de nos dieux, la fortune et les destinées audessus de celles de tous les rois, l'étendue des conceptions aussi vaste que l'étendue du ciel sur la terre, Vagharchag ton frère puiné et ton compagnon d'armes, par ta grace roi des Arméniens, salut, santé, victoire.

« L'ordre que tu m'as donné d'allier les soins de la sagesse aux soins de la valeur, jamais je ne l'ai oublié; j'ai porté sur tout ma sollicitude, autant que me l'ont permis mes moyens et ma capacité. A présent que ce royaume est bien établi par tes soins, j'ai conçu la pensée de savoir, quels princes avant moi ont commandé au pays des Arméniens, d'où viennent les satrapies qui existent ici. Car ici point de reglemens connus, point de fonctions des temples déterminées; on ne sait, quel est le premier des notables, quel est le dernier du pays, rien n'est légal: tout est confus, à l'état sauvage.

« C'est pourquoi, j'en supplie ta Majesté, fais ouvrir

ես բանալ զդիւանդ արքունի ընդդէմ առնդ եկելոյ առաջի քոյոյ հզօր տէրութեանդ. զի գտեալ զըղձալին եղբօր քո և որդւոյ, բերցէ զստոյգն փութապէս. և զմեր հեշտութիւն, որ 'ի կամակատարութենէ լեալ, քաջ գիտեմ խնդութիւն քեզ լեալ։ Ողջ լեր երևելիդ բնակութեամբ 'ի մէջ դից։

Եւ ընկալեալ Արշակայ մեծի զգիրն 'ի ձեռաց Մար Աբայ Կատինայ, մեծաւ ուրախութեամբ հրամայէ առաջի առնել նմա զդիւանն արքունի՝ որ 'ի Նինուէ, միանգամայն և ուրախացեալ այսպիսի միտս ունել եղբօր իւրոյ, որում զկէս թագաւորութեան իւրոյ հաւատացեալ էր։ Եւ խուզեալ սորա զամենայն մատեանս, գտանէ մատեան մի հելլէն գրով, յորոյ վերայ էր, ասէ, վերնագիրն այսպիսի։

Սկիզբն մատենին։

Այս մատեան հրամանաւ Աղէքսանդրի 'ի քաղդէացւոց բարբառոյ փոխեալ 'ի յոյնն, որ ունի զբուն հնոց և զնախնեացն բանս։

Որոյ սկիզբն լեալ ասէ զԶրուանն և զՏիտանն և զՅապետոսթէ, յորում և զիւրաքանչիւր ոք 'ի ծնընդոց երից նախարարականացս այսոցիկ արանց՝ զարս անուանիս կարգաւ շարադասել յիւրաքանչիւր տեղիս մինչև ցբազում ամս։

Յայսմ մատենէ Մար Աբաս Կատինայ զմերոյ ազգիս միայն հանեալ զպատմութիւն հաւաստի, բերէ առ արքայ Վաղարշակ 'ի Մծբին յոյն և ասորի գրով։ Զոր առեալ անձնագեղոյն և քաջաղեղան արին Վաղարշակ, կորովաբանոյն և հանճարեղի, առաջին իւրոյ գանձուն համարելով՝ դնէր յարքունիսն ի պահեստի մեծաւ զգուշութեամբ. և զմասն ինչ 'ի յարձանի հրամայէ դրոշմել։ Յորմէ մեր հաւաս-

tes archives royales à celui qui se présente devant ton auguste Majesté: après avoir trouvé ce que désire ton frère, ton fils, il s'empressera de lui apporter des pièces véridiques. Notre satisfaction née du succès de nos désirs, est, je le sais, pour toi-même un sujet de joie. Salut, héros qui habite au milieu des immortels ».

Le grand Archag ayant reçu la lettre des mains de Mar Apas Gadina, ordonne avec plaisir et empressement de déployer devant lui les archives de Ninive, très satisfait d'ailleurs, qu'une si noble pensée soit venue à son frère, à qui il a remis la moitié de son empire. Mar Apas Gadina ayant examiné tous les livres, en trouve un en caractères grecs, sur le quel, dit-il, était cette inscription :

Commencement du livre.

« Ce livre fut, par l'ordre d'Alexandre le Macédoine, traduit du chaldéen en grec; il contient l'histoire des anciens, des ancêtres ».

Le commencement de ce livre traite, dit Mar Apas, de Zerouan, Titan et Japhétos; chacun des individus célèbres des trois lignées de ces trois chefs princiers y est inscrit par ordre, chacun à sa place, pendant de longues années.

De ce livre, Mar Apas Gadina ayant extrait seulement l'histoire véridique de notre nation, la porte au roi Vagharchag à Medzpine, en caractères grecs et syriens. Le beau, l'habile tireur d'arc, Vagharchag, ce prince éloquent, spirituel, estimant cette histoire comme l'objet le plus précieux de son trésor, la met dans son palais pour y être conservée avec grand soin, et en fait graver une partie sur une colonne. Par

տի 'ի վերայ հասեալ կարգի զրուցացս, երկրորդեմք այժմ քոյ հարցասիրութեանդ, ձգելով զմեր ընիկ նախաբարութիւնս մինչև ցքաղդէացւոց Սարդանապաղայ, և ևս մօտագոյն. յորում է սկիզբն բանիցս այսպիսի ։

Ահեղք և երևելիք առաջինքն 'ի դիցն, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Եւ 'ի սոցանէ հատեալ գտան ազգ սկայիցն, անհեդեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք, որք յղացեալ ամբարտաւանութեամբ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեանն, և 'ի նոյն լինէին 'ի գործ անկեալք. յոր հողմ ահագին իմն և աստուածային շնչեցեալ 'ի դիցն ցասմանէ, ցրէ զամբարտակն. և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ, ամուկ շփոթի 'ի մէջ արկանէին։ Յորոց մի էր և յապետոսթեանն Հայկ, անուանի և քաջ նախարարն, կորովաձիգ և հաստաղեղն։

Եւ այս կարգ զրուցաբանութեան դադարումն առցէ. զի հանդէս է մեր, ոչ զպատմութեանն ողջաբանութիւն գրել, այլ ջանալ ցուցանել զառաջինսն մեր և զբուն հին նախնիս։ Արդ 'ի նոյն մատենէ սկսեալ ասացից. Յապետոսթէ, Մերոդ, Սիրաթ, Թաակլադ. որ է Յաբեթ, Գամեր, Թիրաս, Թորգոմ։ Յետ որոյ նոյն ժամանակագիր յառաջ մատուցեալ ասէ. Հայկ, Արմենակ, և զայլսն 'ի կարգի, զորս յառաջագոյն ասացաք ։

là, assuré de la réalité et de l'ordre des événemens, nous les reproduisons ici, pour satisfaire ta noble curiosité; l'histoire de nos satrapies indigènes y est prolongée jusqu'au Sardanapale des Chaldéens, et même plus avant; voici dans ce livre le commencement des récits :

« Terribles, extraordinaires étaient les premiers dieux, auteurs des plus grands biens dans le monde, principes de l'univers et de la multiplication des hommes. De ces dieux se sépara la race des géans, êtres monstrueux, d'une force invincible, d'une stature colossale, qui dans leur orgueil, conçurent et enfantèrent le projet impie de la construction de la tour; déjà ils étaient à l'œuvre: un vent terrible et divin, soufflé par la colère des dieux, disperse l'édifice. Les dieux distribuant à chacun de ces hommes, un langage inintelligible aux autres, jetaient entr'eux le trouble et la confusion; l'un de ces hommes était Haïg fils de Japhétos, prince renommé, brave, puissant, habile au tir de l'arc ».

Ce mode de narration doit s'arrêter ici; car notre but n'est pas d'écrire la totalité de l'histoire, mais de nous efforcer de montrer nos premiers ancêtres, nos anciens et véritables aïeux. Ainsi d'après ce livre, je dirai d'abord: Japhétos, Mérod, Sirat, Taglat; c'est à dire Japhet, Gomer, Thiras, Thorgom; puis, le même chroniqueur poursuivant, mentionne Haïg, Arménag, et les autres par ordre, comme nous avons dit précédemment.

## Ժ

Յաղագս տէրութեանն Հայկայ:

Այս, ասէ, Հայկ գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ. սա 'ի մէջ սկայիցն քաջ և երևելի լեալ, ընդդիմակաց ամենեցուն, որք ամբառնային զձեռն՝ միապետել 'ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց: Սա խրոխտացեալ ամբարձ զձեռն ընդդէմ բռնաւորութեանն Բէլայ, 'ի տարածանել ազգի մարդկան ընդ լայնութիւն ամենայն երկրի 'ի մէջ բազմակոյտ սկայիցն, անհուն խոլաց և ուժաւորաց: Վասնզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր սուր 'ի կող ընկերի իւրոյ ձգելով, ջանային տիրել 'ի վերայ միմեանց. ուր պատահմունք 'ի դէպ ելանէին Բէլայ՝ բռնանալ ունել զամենայն երկիր: Որում ոչ կամեցեալ Հայկայ՝ հնազանդ լինել Բէլայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրմենակ 'ի Բաբելոնի, չու արարեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է 'ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք, և եկօք յարեցելովք 'ի նա, և բոլոր աղխիւ: Նստեալ բնակէ 'ի լեռնոտին միում 'ի դաշտավայրի, յորում սակաւք 'ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ, շինէ անդ տուն բնակութեան կալուածոց, և տայ 'ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արմենեկայ: Այս արդարացուցանէ զանդիր հին ասացեալ զրոյցս:

Եւ ինքն խաղայ, ասէ, այլով աղխիւն ընդ արևմուտս հիւսիսոյ, գայ բնակէ 'ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտակին

## X.

### De la rébellion de Haïg.

« HAÏG, ce prince connu par sa beauté, sa force musculaire, ce prince aux cheveux frisés, à l'œil gris, au bras vigoureux, ce prince brave et renommé entre les géans, s'opposa à tous ceux qui levaient une main dominatrice sur les géans et les héros. Haïg, plein d'une noble audace, arma donc son bras contre la tyrannie de Bel, lorsque le genre humain se répandit sur toute la surface de la terre, au milieu d'un peuple de géans, êtres furieux, d'une force démesurée; car chaque homme, poussé par sa frénésie, enfonçait son glaive dans le flanc de son compagnon, tous s'efforçaient de dominer les uns sur les autres ; cependant la fortune aidait Bel à usurper toute la terre. Haïg ne voulant pas obéir à Bel, après avoir engendré son fils Arménag à Babylone, s'en va en la terre d'Ararat, aux contrées du nord, avec ses fils, ses fillles, les fils de ses fils, hommes vigoureux, au nombre de trois cents environ, avec les fils de ses serviteurs, les étrangers attachés à lui, et tout son train, s'établit au pied d'une montagne, où quelques uns des hommes précédemment dispersés, s'étaient arrêtés, établis : Haïg les soumet à ses lois; batit des établissemens sur cette terre, qu'il donne en héritage à Gatmos, fils d'Arménag ». Ceci justifie les anciennes traditions.

« Quant à lui, Haïg, il s'en va, est-il dit, avec le reste de sa suite au nord-ouest, s'établit sur une plaine élevée, nomme ce plateau Hark (pères), c'est à dire

Հարք. այս ինքն, աստէն բնակեալքս՝ ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն։ Յիշի և աստանօր պատմութիւնս. հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ առ երկայնանստիւ միով լերամբ բնակեալ յառաջագոյն արք սակաւք՝ ինքնակամ հնազանդեալ դիւցազնին։ Արդարացուցանէ և այս զասացեալ զրոյցս անդիրս։

## ԺԱ

Յաղագս պատերազմին և մահուանն Բելայ։

Եւ յառաջ մատուցեալ զբանս իւր ասէ, թէ 'ի հաստատել տիտանեանն Բելայ զթագաւորութիւն իւր առ ամենեսեան, առաքէ 'ի կողմն հիւսիսոյ զմի ոմն յորդւոց իւրոց առ Հայկ արամբք հաւատարմօք, զալ նմա 'ի հնազանդութիւն և կեալ խաղաղութեամբ։ Բնակեցեր, ասէ, 'ի մէջ ցրտութեան սառնամանեաց. այլ ջեռուցեալ մեղկեա զցրտութիւն սառուցեալ քո հպարտացեալ բարուցդ, և հնազանդեալ ինձ՝ կեաց 'ի հանդարտութեան, ուր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան։ Իսկ 'ի բաց դարձուցեալ Հայկայ զպատգամաւորսն Բելայ, խստութեամբ պատասխանեաց։ Դառնայ առաքեալն անդրէն 'ի Բաբելոն։

Ապա զօրաժողով լինի 'ի վերայ նորա տիտանեանն Բել ամբոխիւ հետևակ զօրաց, գայ հասանէ 'ի հիւսիսի յերկիրն Արարադայ մերձ 'ի տունն Կադմեայ։ Փախստական լինի Կադմոս առ Հայկ, քաջ ընթացիկս առաջի իւր առաքէ. Գիտեա, ասէ, ով մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ 'ի վերայ քո Բել յաւերժիւք քաջօք, և երկայնադիզօք հսակօք սկայիւք մրցողօք։ Իսկ իմացեալ իմ զմերձ լինելն նորա 'ի

d'ici sont sortis les habitans de la race de la maison de Torgom: il batit un village, qu'il nomme Haïgachène ». L'histoire rapporte encore: « Au sud de cette plaine, près d'une montagne à large base, s'étaient antérieurement établis quelques hommes; ils se soumirent d'eux-mêmes au héros »: ceci justifie les anciennes traditions.

## XI.

### De la guerre et de la mort de Bel.

Poursuivant ses récits, Mar Apas dit: « Le titanien Bel, ayant établi sa domination sur tous, envoie au nord un de ses fils, avec des hommes fidèles, vers Haïg, pour l'engager à se soumettre à lui, Bel, et à vivre en paix: Tu as habité, dit-il à Haïg, au milieu des glaces et des frimats; réchauffe, tempère le froid glacial de tes mœurs hautaines, et soumis à moi, vis en paix là où il te plait, sur la terre de mon habitation. Mais Haïg renvoyant les messagers de Bel, répondit avec dureté; l'envoyé retourna à Babylone ».

« Dès lors rassemblant ses forces, Bel le titanien avec une armée d'infanterie marche contre Haïg, arrive au nord de l'Ararat près de la maison de Gatmos. Celui-ci s'enfuit vers Haïg, et envoie en avant de bons coureurs. Apprends, dit Gatmos, ô le plus grand des héros, que Bel vient fondre sur toi avec ses braves immortels, ses guerriers colosses, ses géans. Dès que j'ai su qu'il approchait de ma maison, j'ai fui, me voici,

տուն իմ, փախեայ, և գամ աւասիկ տագնապաւ։ Արդ աճապարեա խորհել որ ինչ գործելոց ես։

Իսկ Բէլն, յանդուգն և անճոռնի զօրութեամբ ամբոխին՝ որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառ 'ի վայր հեղեալ, փութայր հասանել 'ի սահմանս բնակութեան Հայկին, 'ի սիրտ և 'ի մարմին վստահացեալ արանց զօրաւորաց։ Այս ուշիմ և խոհեմ սկայն, քաջագանգուրն և խայտակն, աճապարեալ հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, և զայլ ևս որ ընդ իւրով ձեռամբ. հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով ձկունս յինքեան։ Այլ կոչեցեալ զզօրս իւր, ասէ ցնոսա. Յելանելն մեր հանդէպ ամբոխին Բէլայ, դիպեալ ջանասցուք տեղւոյն՝ ուր անցեալ կայ 'ի մէջ խուռն քաջացն Բէլ։ Զի կամ մեռցուք, և աղխ մեր 'ի ծառայութիւն Բէլայ կացցէ. կամ զաջողութիւն մատանց մերոց 'ի նա ցուցեալ, ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք։

Այլ յառաջ կոյս անցեալ բովանդակ ասպարէզս, հասանեն 'ի միջոց ինչ դաշտաձև լերանց բարձրագունից. և յաջմէ ջուրցն հոսանաց 'ի բարձրաւանդակումն կուռ կալով 'ի տեղւոջ։ Ի վեր զերեսս ամբարձեալ, երևեցաւ նոցա բազմութիւն անկարգ հոսակի ամբոխոյն Բէլայ ցան և ցիր յանդուգն յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով. իսկ Բէլ հեզ և հանդարտ ամբոխիւ մեծաւ 'ի ձախմէ ջուրցն 'ի վերայ ոստոյ միոյ իբրև 'ի դիտանոցի։ Ծանեաւ Հայկ զխումբ վառելոյ ջոկատին, յորում Բէլ առաջի ամբոխին եկեալ հասեալ ընտրիւք և վառելովք ոմամբք. և երկար միջոց ճանապարհին ընդ նա և ընդ ամբոխն. և ինքն գլխանոց ագուցեալ երկաթի, նշանաւորօք վերջօք, և տախտակս պղնձիս թիկանց և լանջաց, և պահպանակս բարձից և բազկաց. գօտե-

j'arrive en toute diligence; hâte-toi de songer à ce que tu dois faire ».

« Or, Bel avec son armée audacieuse, gigantesque, comme un torrent impétueux qui se précipite du haut d'une montagne, se pressait d'arriver sur les terres de Haïg. Bel se confiait dans la valeur et la force de ses soldats; mais le géant sage et réfléchi, aux cheveux frisés, à l'œil vif, rassemble aussitôt ses fils, petits-fils, guerriers intrépides, armés d'arcs, très peu nombreux, et les autres hommes sous sa dépendance; il arrive au bord d'un lac dont les eaux salées contiennent de petits poissons: là, convoquant aussitôt ses troupes, il leur dit: En marchant au devant de l'armée de Bel, efforçons-nous d'arriver là où il se tient au milieu de la multitude de ses guerriers; ou nous mourrons, et notre train tombera au pouvoir de Bel, ou signalant contre lui l'adresse de nos mains, nous disperserons son armée et nous serons maîtres de la victoire ».

Van

« Aussitôt franchissant tout l'espace, les soldats de Haïg arrivent à une plaine située entre de hautes montagnes; puis à la droite des eaux du torrent se retranchent sur une hauteur: alors levant les yeux, ils virent la multitude confuse de l'armée de Bel poussée ça et là par une audace farouche, répandue comme une mer sur toute la surface du pays. Bel, tranquille, confiant, avec un fort détachement se tenait à la gauche des eaux, sur un tertre, comme en un lieu d'observation. Haïg reconnut le détachement où était Bel en avant de son armée, avec des soldats d'élite: un long espace de terrain était entre lui et son armée. Bel portait casque de fer à riche crinière, cuirasse d'airain, cuissards, brassards, épée à deux tranchants au côté gauche du ceinturon, bonne lance à la main droite, à la

ւորեալ զմէջսն, և յահեկէ զատինն երկսայրի. և նիզակն առի 'ի ձեռին իւրում աջոյ, և յահեկումն վահան, և ընտիրքն յաջմէ և 'ի ձախմէ։ Այս տեսեալ Հայկին զտիտանեանն կուռ վառեալ, և զարս ընտիրս ընդ նմա աջինս և ահեկինս, կարգէ զԱրմենակ երկու եղբարբքն ընդ աջմէ, և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց իւրոց 'ի ձախմէ, զի արք կորովիք էին յաղեղն և 'ի սուսեր. և ինքն առաջի, և զայլս հրոսակին զկնի իւր կարգեաց. երեքանդիւնի իմն կարգեաց ձևով, հանդարտ յառաջ մատուցանելով։

Այս հասեալ երկոցունց կողմանց սկայիցն 'ի միմեանըս, ահագին դղրդիւն 'ի վերայ երկրի առնէին շահատակելովն, և ահս պակուցանողս տարազուք յարձակմանցն զմիմեամբք արկանէին։ Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց սկայիցն արքյաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք, տապալ յերկիր կործանէին. և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքայն տիտանեան զարհուրեցաւ, և 'ի նոյն բլուր ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէ. քանզի խորհէր 'ի միջոցի ամրանալ ամբոխին, մինչև հասցէ բովանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ, յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ պինդ զլայնալիճն, դիպուցանէ զերեքթևեանն կրծից տախտակին, և շեշտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր անկանի սլաքն. և այսպէս ճոխացեալն տիտանեան կործանի՝ յերկիր զարկուցեալ, և փչէ զոգին։ Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի ահագին գործ քաջութեանն, փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց։ Այս վասն այսորիկ այսչափ բովանդակ լիցի ասել։

Բայց զտեղի ճակատուն շինէ դաստակերտ, և անուն կոչէ Հայք, վասն յաղթութեան պատերազմին.

gauche solide bouclier ; à sa droite et à sa gauche étaient des troupes d'élite. Haïg voyant le Titanien ainsi armé de toutes pièces, des troupes d'élite à sa droite et à sa gauche, place Arménag avec ses deux frères à la droite, Gatmos et deux autres de ses fils à la gauche ; car c'était des hommes habiles à manier l'arc, à manier le glaive ; pour lui, se portant en avant, il rangea derrière lui en triangle, le reste de ses troupes qu'il fit avancer tranquillement ».

« Arrivés des deux côtés les uns sur les autres, les géans par leur choc mutuel faisaient retentir la terre d'un bruit effroyable, jetaient entr'eux la crainte et l'épouvante par la fureur de leurs attaques ; grand nombre de robustes géans de part et d'autre, atteints par le glaive, roulaient à terre : cependant le combat des deux côtés restait indécis. A la vue d'un événement aussi inattendu, le Titanien tout effrayé, remonte sur la colline d'où il était descendu ; car il pensait à se fortifier au milieu de sa troupe, jusqu'à ce que toute l'armée étant arrivée, il pût reformer son front de bataille. Comprenant cette manœuvre, Haïg, l'arc en main, se porte en avant, arrive près du roi, tire son arc à la longue portée, envoie une flèche à trois ailes droit à la poitrine de Bel, et le trait traversant de part en part, sort par le dos, tombe à terre. C'est ainsi que le superbe Titanien abattu, renversé, expire. Ses troupes, à la vue de ce terrible exploit, s'enfuirent, chacun courait tout droit devant soi ». Assez parler sur ce sujet.

Haïg couvre de batimens le lieu du combat et l'appelle Haïk, à cause de la victoire remportée ; pour cela

այսորիկ աղագաւ և դաւառն այժմ անուանի Հայոց ձոր։ Իսկ բլուրն, ուր քաջամարտիկօքն անկաւ Բէլ, անուանեաց Հայկ Գերեզմանս. որ այժմ ասին Գերեզմանք։ Բայց զդիակն Բէլայ պաճուճեալ իմն դեղովք, ասէ, հրամայէ Հայկ տանել'ի Հարք, և թաղել'ի բարձրաւանդակ տեղւոջ, 'ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց։ Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք։

## ԺԲ

Ցաղագս որ 'ի Հայկայ ազգք և ծնունդք. և թէ զինչ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ գործեաց։

ԲԱԶՈՒՄ ինչ զկնի այսորիկ պատմի 'ի մատենին. այլ մեք, որ ինչ պիտոյն մերոյ հաւաքմանս է, շարեսցուք։

Զկնի այսորիկ դառնալ ասէ Հայկին 'ի նոյն տեղի բնակութեան, և Կադմեայ թոռին իւրում բազում ինչ յանկածէ պատերազմին պարգևեաց, և յիւրոց ընդոծնացն արս անուանիս։ Հրամայէ զնոյն տեղի բնակութեան ունել նմա զառաջնոյ իւրոյ տանն, և ինքն երթեալ դադարէ յանուանեալ տեղին Հարք։ Սա կեցեալ ամս, ծնաւ զԱրմենեակ 'ի Բաբելոնի, որպէս վերագոյն ասացաք։ Յետ որոյ կեցեալ և այլ ևս ամս ոչ սակաւս՝ մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազինն Արմենակայ որդւոյ իւրոյ։

Իսկ նորա թողեալ երկուս յեղբարց իւրոց զԽոռ և զՄանաւազ ամենայն աղխիւն իւրեանց 'ի կոչեցեալն Հարք, և զորդի Մանաւազայ զԲազ. յորոց Մանաւազ ժառանգէ զՀարք, իսկ որդի նորա Բազ՝ յարևմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբն։ Եւ 'ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւն մանաւազեան

le canton, même à présent, se nomme Haïotz tzor (vallée de Haïk). Quant à la colline où Bel succomba avec ses braves guerriers, Haïg la nomma Kérezmank (les tombeaux) et l'on dit encore à présent Kérezmank. Le corps de Bel étant embaumé, orné, dit Mar Apas, Haïg le fait porter à Hark, et enterrer sur une hauteur à la vue de ses femmes et de ses enfans. Or, notre pays est appelé Haïk, du nom de notre ancêtre Haïg.

## XII.

Races et lignées issues de Haïg. — Ce que chacun de ses descendans a fait.

Une foule de faits, après ces événemens, sont racontés dans ce livre, mais nous n'inscrirons ici que ce qui est nécessaire à notre compilation.

Après cette expédition, Haïg retourna, dit le livre, au même lieu d'habitation, et donna à Gatmos son petit-fils une grande partie du butin fait dans la guerre ainsi que plusieurs des plus valeureux de ses gens. Il lui enjoint de conserver sa première habitation. Quant à lui, Haïg, s'en étant allé, il s'arrête au lieu appelé Hark. Il engendra son fils Arménag à Babylone, comme nous l'avons dit plus haut; après quoi, ayant encore vécu grand nombre d'années, il meurt, remettant à son fils Arménag le soin de toute sa nation.

Arménag laisse deux de ses frères, Khor et Manavaz, avec tout leur train, dans le lieu appelé Hark, ainsi que Paz, le fils de Manavaz. Celui-ci reçoit en partage Hark; son fils, au nord-ouest, le littoral de la mer salée, qu'il appelle de son propre nom, ainsi que le canton. De Manavaz et de Paz sont issues, dit-on, les races satrapales Manavazien, Peznouni, Ouortouni,

և զբզնունեաց, և որդւոյն անուանեալ, որք աստ ուրեմն յետ սրբոյն Տրդատայ բարձեալ ասին ի միմեանց պատերազմաւ։ Իսկ Խոռն ի կողմանս հիւսիսոյ բազմանայ, կարգէ զշէնս իւր. և ի նմանէ ձգեալ ասի մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց, արք քաջք և անուանիք, որպէս և որք առ մեւք են այժմ երևելիք։

Իսկ Արմենակայ առեալ զամենայն բազմութիւնն, խաղայ յարևելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ ի խորին դաշտավայրի մի ի բարձրագագաթանց պարըսպեալ լերանց, գետս կարկաջասահ ի յարևմտից ընդ մէջ անցանելով, և զդաշտն արևելից իմն գոգցես իբր որսայսեալ, ձիգ յարեգակն կոյս զերկայնութիւն պարզեալ, և ստորոտովք լերանցն բազում ականակիտ բղխեալ աղբերք, որ գետոց հաւաքումն եղեալ հեզաբար առ սահմանօք նոցա, ծնիւք լերամբք և եզերօք դաշտին՝ պատանիք ոմանք իբր երիտասարդուհիք ձեմիցին։ Այլ հարաւայինն արեգակնաձեմ լեառն, սպիտակափառ ունելով գագաթն, ուղղորդ ի յերկրէ բուսեալ, երեքօրէիւ, որպէս ասաց ոմն ի մերոցն, քաջագօտւոյ առնն շրջապատեալ ճանապարհաւ, և առ փոքր փոքր ի շեշտումն անկեալ, ծեր ոմն արդարև լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանց։ Յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արամենակայ, շինէ զմասն ինչ ի հիւսիսոյ կողմանէ դաշտին, և զոտն լերինն ի նոյն կողմանէ, և զլեառն անուանէ յանգագոյն յիւր անուն Արագած, և զկալուածսն՝ ոտն Արագածու։

Բայց սքանչելի իմն ասէ պատմագիրն, թէ ի յոլով տեղիս գտան բնակեալ ի մարդկանէ յերկրիս մերում ցանն և ցիր սակաւք յառաջ քան զգալուստ բընկին մերոյ նախնւոյն Հայկայ։

Այս Արմենակ կեցեալ ամս, ծնաւ զԱրմայիս. և

qui après saint Dertad se sont détruites, dit-on, l'une l'autre dans les combats. Khor multiplie au septentrion, fonde des villages. De lui descend la grande satrapie de la race des Khorkhorouni, hommes braves et célèbres, comme le sont les Khorkhorouni de notre temps.

Arménag, prenant avec lui toute la multitude de ses gens, se dirige au nord-est, arrive, descend à une plaine profonde, entourée de hautes montagnes, traversée par des fleuves dont les eaux murmurantes viennent de l'occident: cette plaine située à l'est, s'étend au loin sous les rayons du soleil. Au pied des montagnes jaillissent quantité de sources limpides, qui réunies en fleuves à leurs confins, à la naissance des montagnes, au bord de la plaine, jeunes encore, se promènent comme de jeunes filles. Mais le côté sud de la montagne, qui regarde le soleil, avec son blanc sommet, s'élève à pic, ne peut être parvenu qu'en trois jours par un voyageur muni d'une bonne ceinture, et se termine doucement en pointe: c'est vraiment une vieille montagne au milieu de montagnes adolescentes. Dans cette plaine profonde s'établit Arménag, il couvre de batimens une partie du terrain au côté nord, et nomme conformément à son nom, le pied de la montagne du même côté, Arakadz, et ses possessions, le pied d'Arakadz.

Le même historien rapporte un fait merveilleux: « Sur beaucoup de points, dit-il, se trouvaient établis quelques individus du genre humain, dispersés çà et là en notre pays, avant l'arrivée de notre ancêtre national, Haïg ».

Cet Arménag engendra Armaïs; ayant encore vécu -

յետոյ կեցեալ ամս շատ, մեռանի։ Իսկ որդի նորա Արամայիս շինէ իւր տուն բնակութեան 'ի վերայ ուստոյ միոյ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր. և զանուն գետոյն յանուն թոռին իւրոյ Երասխայ՝ Երասխ։ Նա զորդին իւր զՇարայ, զյոլովածին և զշատակեր, առաքէ ամենայն աղխիւ իւրով 'ի դաշտ մի մօտաւոր, արգաւանդ և բարի, յորում գնան ջուրք ոչ սակաւք, 'ի թիկունս հիւսիսոյ լերինն, որ անուանեցաւ Արագած. յորոյ անուն և զգաւառն սահման անուանել Շիրակ։ Սասն որոյ արդարանալ թուի առասպելին, որ ասի 'ի մէջ գեղջկաց. Թէ քո Շարայի որկորն է, ասեն, մեր Շիրակայ ամբարքն չեն։ Այս Արամայիս կեցեալ ամս, ծնանի զորդի իւր զԱմասիայ. 'ի վերայ որոյ կեցեալ և այլ ևս ամս, մեռանի։

Ամասիայ բնակեալ յԱրմաւիր, յետ ամաց ծնանի զԳեղամ, և յետ Գեղամայ զՓառոխ արի և զՑոլակ։ Նա յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ 'ի լեառնն հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնատինն մեծապէս ծախիւք երկուս տունս. զմին յարևելից կոյս մօտ յակունս աղբերցն՝ որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծօր հասարակօրոյ միոյ հետևակագնացի առնն ճանապարհի։ Նա ետ զնոսա 'ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց, արւոյն Փառոխի և կայտառին Ցոլակայ. յորս բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին, 'ի Փառոխայ՝ Փառախոտ, և 'ի Ցոլակայ՝ Ցոլակերտ։ Բայց զլեառն՝ Ամասիայ անուանէ իւր անուամբ Մասիս. և ինքն դարձեալ յԱրմաւիր, եկաց ամս սակաւս, և մեռանի։

Իսկ Գեղամ յետ ամաց անցանելոյ ծնաւ զՀարմայ յԱրմաւիր. և թողեալ զՀարմայ յԱրմաւիր՝ հանդերձ որովք բնակէրն, և ինքն գնաց զմեւս լեռամբն արևելեան հիւսիսոյ, յեզր ծովակի միոյ։

un grand nombre d'années, il mourut. Or, son fils Armaïs batit son habitation sur une colline au bord du fleuve, la nomme de son nom, Armavir, et le fleuve du nom de son petit-fils Arasd, Eraskh. Quant à son fils Chara, qui multipliait beaucoup, mangeait beaucoup, il l'envoie avec toute sa suite dans une plaine voisine, très productive, que traversent quantité d'eaux derrière le nord de la montagne, appelée Arakadz. Du nom de Chara, dit-on, le canton est nommé Chirag: ainsi parait justifiée la fable, qui a cours parmi les villageois: « Si tu as le gosier de Chara, disent-ils, nous n'avons pas les greniers de Chirag ». Cet Armaïs engendra son fils Amassia; ayant encore vécu plusieurs années, il mourut.

Amassia établi à Armavir, engendre Kégham; après Kégham, le vaillant Parokh, et Tzolag; puis passant le fleuve, s'en va près de la montagne du sud, au pied de la quelle il batit dans des enfoncemens, deux maisons à grands frais; l'une à l'orient, près des sources qui jaillissent au pied de la montagne, l'autre maison à l'occident de la première, distante d'une demie journée de chemin à pied. Il donna ces maisons en propriété à ses deux fils, le vaillant Parokh et le joyeux Tzolag, qui s'y fixant, appellèrent ces lieux de leur propre nom, Parakhod, du nom de Parokh; Tzolaguerd, du nom de Tzolag. Quant à la montagne, Amassia l'appela du son propre nom, Massis; puis étant retourné à Armavir, il vécut peu d'années et mourut.

Or, Kégham engendra Harma à Armavir, et l'y laissant avec les siens, s'en alla à l'autre montagne au nord-est au bord d'un lac, en batit les rives, y laisse des habitans, de son nom appelle la montagne Kegh,

Շինէ զգեղը ծովակին, և թողու անդ բնակիչս. և յիւր անուն և սա զլեառնն անուանէ Գեղ, և զշէնսըն՝ Գեղաքունի, որով կոչի և ծովն։ Սա ծնանի զորդի իւր զՍիսակ, զայր սէգ և անձնեայ, բարեգեղ, կորովաբան և գեղեցկաղեղն։ Սմա զմեծ մասն յընչից իւրոց տուեալ, և ծառայս՝ անձինս բազումս, սահմանս հատանէ նմա ժառանգութեան 'ի ծովէն ընդ արևելս, մինչև ցդաշտ մի, որ գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմաձիգս և նեղս, ահագին դղրդընչմամբ իջանէ 'ի դաշտն։ Սա բնակեալ Սիսակ, ընու շինութեամբ զսահմանս բնակութեան իւրոյ. և զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք. այլ Պարսք յստակագոյն իսկ Սիսական կոչեն։ Ի սորա ծննդոց աստ ուրեմն Վաղարշակ, որ առաջին 'ի Պարթևաց արքայ Հայոց, գտեալ այր անուանիս, տեարս աշխարհին կարգէ, որ է սիսականդ ազգ. և զայս առնէ Վաղարշակ 'ի պատմութենէն ստուգեալ։ Այլ այս թէ որպէս է, յիւրում ժամու պատմեսցուք։

Բայց ինքն Գեղամ դառնայ անդրէն 'ի դաշտ անդր, և առ ոտամբ նորին լերինն 'ի ձորակի մի ամրոջ շինէ ձեռակերտ մի, և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ 'ի Գառնիկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի։ Ի սորա ծննդոց, աստ ուրեմն առ Արտաշիսիւ Թոռամբ Վաղարշակայ, ոմն Վարժ անուն պատանի լեալ, աջող յորս եղջերուաց և այծեմանց և վարազուց, դիպաձգութեամբ նետից կորովի, զսա 'ի վերայ որսոց արքունեաց կարգէ, և շէնս պարգևէ նմա առ եզերբ գետոյն, որ անուանեալ կոչի Հրազդան։ Եւ 'ի սմանէ ասեն լինել զտունն Վարաժնունի։ Այս Գեղամ, որպէս ասացաք, յետ ամաց կենաց իւրոց ծնանի զՀարմայ. յետ որոյ և այլ ևս, և մեռաւ։ Եւ հրամայեաց որդւոյ իւրում Հարմայ բնակել յԱրմաւիր։

et les villages Keghakouni, ainsi s'appelle aussi la mer. Ici, il engendra son fils Sissag, personnage connu par son noble orgueil, sa force, sa beauté, son éloquence, son adresse à tirer l'arc. Il lui donne une grande partie de ses biens, grand nombre d'esclaves, et pour territoire tout le pays depuis la mer à l'orient, jusqu'à une grande plaine, où le fleuve Éraskh, après avoir coupé les cavernes des montagnes, traversé les vallées boisées, les gorges resserrées, descend dans la plaine avec un bruit terrible. Là, s'arrêtant, Sissag remplit de batimens les terres de son habitation; il appelle le pays de son propre nom, Siounik, mais les Perses l'appellent bien plus proprement Sissagan. Vagharchag, premier roi parthe d'Arménie, ayant trouvé là des hommes célèbres, issus de la lignée de Sissag, les institue seigneurs du pays, c'est la race Sissagan; ce que fait Vargharchag d'après les renseignemens positifs de l'histoire; comment? nous le dirons en temps et lieu.

Kégham retourne à la plaine, au pied de la montagne, dans un vallon fortifié il batit un village qu'il appelle de son propre nom, Kéghami, et qui dans la suite fut appelé par son petit-fils Karnig, Karni. De sa lignée provenait, sous Ardachès, petit-fils de Vagharchag, un jeune homme nommé Varj, adroit à la chasse des cerfs, des chèvres, et des sangliers, habile à lancer le javelot: Ardachès le fait intendant des chasses royales, lui donne des villages sur les bords du fleuve appelé Hraztan; de Varaj, dit-on, descend la maison Varajnouni. Ce Kégham, comme nous l'avons dit, engendra Harma, d'autres enfans encore, et mourut, enjoignant à son fils Harma d'habiter à Armavir.

Այս Հայկ որդի Թորգոմայ, որդւոյ Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի, նախնի Հայաստանեայց. և այս ազգք նորա և ծնունդք և աշխարհ բնակութեան. և յայսմ հետէ սկսան, ասէ, բազմանալ և լնուլ զերկիր:

Իսկ Հարմայ կեցեալ ամս, ծնաւ զԱրամ: Արամայ բազում գործք քաջութեան պատմին մարտիւք նահատակութեան, և ընդարձակեալ զսահմանս Հայոց յամենայն կողմանց. յորոյ անուն և ամենայն ազգք զաշխարհս մեր անուանեն, որպէս Յոյնք՝ Արմէն, և պարսիկք և Ասորիք՝ Արմինիք: Բայց զընդարձակութիւն պատմութեան սորա և զգործս քաջութեան, թէ զիարդ կամ որով ժամանակաւ, թէ կամիցիս՝ արտաքոյ այսորիկ գրոցս կարգեսցուք, և կամ թողցուք. ապա թէ ոչ՝ 'ի սմին:

## ԺԳ

Յաղագս ընդ արևելեայս պատերազմին և յաղթութեանն, և մահուան Նիւքարն Մադեսայ:

Այլ վասն զի հաճոյ թուեցաւ մեզ զաշխատութիւնն, որ 'ի վերայ քո հրամանիդ, համարել հեշտութիւն, քան զառ 'ի յայլոցն՝ որ 'ի կերակրոց և յըմպելեաց լինին խրախճանութիւնք, հաւանեցաք անցանել սակաւուք և ընդ կարգ բանից պատերազմաց որ 'ի Հայկեանն Արամայ: Սա այր աշխատասէր և հայրենասէր եղեալ, որպէս ցուցանէ նոյն պատմագիր, լաւ համարէր զմեռանելն 'ի վերայ հայրենեացն, քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենիս, և հարազատից արեան նորա տիրել արանց օտարածնաց:

Սա Արամ, սակաւուք ամօք յառաջ քան զտիրելն Նինոսի ասորեստանեաց և Նինուէի, նեղեալ յազ-

Voici cet Haïg, fils de Torgom, fils de Tiras, fils de Gomer, fils de Japhet, ancêtre des Haïciens (Arméniens). Voici ses races, ses lignées, le pays de son habitation. Dès lors sa postérité commença, dit l'historien, à se multiplier, et à remplir le pays.

Or, Harma engendra Aram, Aram dont on raconte une foule d'actions d'éclat, de valeur dans les combats, Aram qui étendit le territoire d'Arménie de tous côtés. C'est de son nom que tous les peuples appellent notre pays, les Grecs l'appellent Armène, les Perses et les Syriens Armeni. Mais quant à rapporter son histoire tout entière, ses traits de courage, en disant comment, dans quel temps, si tu veux, nous le ferons hors de ce livre, ou nous laisserons de côté ces détails, ou bien, nous les consignerons ici.

## XIII.

Guerre d'Aram contre les Orientaux, sa victoire. — Mort de Nioukar Matès.

Puisqu'il nous a paru agréable de regarder le travail entrepris par ton ordre, comme une source de jouissances plus grandes, que ne le sont pour les autres, les somptueux festins, avec leurs mets et leurs boissons, nous avons consenti à rappeler en peu de mots les combats d'Aram le Haïcien. Ce guerrier ami des fatigues, ami de son pays, comme nous le montre le même historien, aimait mieux mourir pour sa patrie, que de voir les fils de l'étranger fouler le sol natal, commander à ses compatriotes, à ses frères.

Cet Aram, peu d'années avant l'empire de Ninus en Assyrie, à Ninive, inquiété par les nations circon-

գացն՝ որ շուրջ զիւրեաւ, և ժողովէ զբազմութիւն
ընդանի արանց քաջաց և աղեղնաւորաց, և որ 'ի տէգ
նիզակի կամակարողք, նորատիք և հարուստք յոյժ
և յաջողաձեռնութիւն իսկ և երեսաւորք, որ 'ի սիրտ
և 'ի պատրաստութիւն իբր թէ բեւրս հինգ: Պա-
տահէ մեդացւոցն երիտասարդաց, որոց առաջնոր-
դէր ՙՆիւքար ոմն ասացեալ Մադէս, այր հպարտ և
պատերազմասէր, որպէս ցուցանէ նոյն ինքն պատ-
մագիրն, յեզերս սահմանացն Հայոց: Որոց միան-
գամ քուշանաբար հինիւ սմբակակոխ արարեալ ըզ-
սահմանս Հայոց, ծառայեցոյց ամս երկուս: Որում
յանկարծօրէն 'ի վերայ հասեալ Արամ յառաջ քան
զծագել արեգականն սատակեաց զբազմութիւն ամ
բոխիցն. և զնոյն ինքն զՆիւքարն կոչեցեալ Մադէս
ձերբակալ արարեալ ածէ յԱրմաւիր, և անդ ուրեմն
'ի ծայրս աշտարակի պարսպին ցից վարեալ երկաթի
ընդ ճակատն, յորմն վարսել հրամայէ, 'ի տեսիլ ան-
ցաւորաց և ամենայն եկելոց անդր. և զաշխարհն
նորա մինչև ցլեառն անուանեալ Զարասպ 'ի ծա-
ռայութիւն հարկի կալեալ մինչև ցթագաւորութիւ-
նըն ՙՆինոսի 'ի վերայ ասորեստանի և ՙՆինուէի:

Իսկ ՙՆինոս թագաւորեալ 'ի ՙՆինուէ, յիշատակ
քինու զնախնւոյն իւրոյ զԲելայ ունէր 'ի մտի, 'ի
զրուցաց ուսեալ. և զայս խորհէր հատուցանել յամս
ձիգս նկատել որսալ զյաջողութիւն աւուրց, բառնալ
ջնջել զամենայն հետ սերմանեալ յարանց քաջին
Հայկայ: Այլ երկեւղ կասկածանաց խարդաւանակ
լինելոյ իւրոյ թագաւորութեանն՝ զայսպիսիս հա-
մարեալ իրագործութիւն, ծածկէ զչարութիւնն. և
հրամայէ նմա զայն իշխանութիւն անկասկածաբար
ունել. և համարձակութիւն տայ նմա վարսակալ ածել
մարգարտէ, և երկրորդ նորա կոչել: Այլ այս շա-
տացի ասել այսչափ, քանզի չթողացուցանէ զմեզ որ
առաջիկայս է իր՝ յեզերուեմ յամել այսր պատմութէ:

voisines, rassemble toute la multitude de ses gens, hommes braves, habiles à manier l'arc, à lancer le javelot, jeunes, très nobles, doués d'une grande dextérité, d'une beauté remarquable: troupe valant pour le courage et pour l'action cinquante mille hommes. Aram rencontre sur les frontières d'Arménie la jeunesse des Mèdes, sous la conduite de Nioukar, dit Matès, guerrier superbe, belliqueux, comme nous le montre l'historien lui-même. Déjà, à l'exemple des Kouchans, Matès foulant le sol de l'Arménie, l'a tenue deux ans esclave. Aram fondant sur lui à l'improviste avant le lever du soleil, extermina toute la multitude de ses gens. Quant à Nioukar, appelé Matès, Aram l'ayant fait prisonnier, l'amène à Armavir; là, au sommet de la tour des murailles, le front percé avec un long clou de fer, Nioukar est, par l'ordre d'Aram, cloué au mur, à la vue de tous les passans. Tout le pays de Matès jusqu'à la montagne appelée Zarasb, est soumis au tribut jusqu'au règne de Ninus en Assyrie, à Ninive.

Or, Ninus devenu roi à Ninive, avait en son cœur un souvenir de haine, à cause de son ancêtre Bel; car il était instruit du passé par la tradition. Il songeait depuis longues années à la vengeance, il songeait à épier le moment d'exterminer, d'anéantir toute la race, jusqu'au dernier rejeton, des enfans du brave Haïg. Mais la crainte de se voir lui-même dépouillé de son royaume, en se livrant à une telle entreprise, le retient; il cache ses perfides projets, il ordonne à Aram de conserver la puissance sans inquiétude, lui donne le droit de porter le bandeau de perles, le nomme son second. Mais, c'est assez; car notre affaire présente ne nous permet pas de nous arrêter au bord de cette histoire.

## ԺԴ

*Յաղագս ընդ ասորեստանեայս կուսոյն և յաղթութեանն, և Պայապայն Քաղեայն, և Կեսարու, և առաջին և այլոց անուանեալ Հայոց։*

ԿԱՐԳԵՍՑՈՒՔ դոյզն յիշատակօք բանից և որ ինչ զկնի այսորիկ սորա գործք քաջութեան պատմի յարեւմուտս 'ի նոյն մատենի, և որ ընդ ասորեստանեայս կուսին․ զպատճառս և զզօրութիւն իւրացն միայն յայտնելով, և զերկարութիւն գործոյն համառօտ բանիւ յանդիման կացուցանել։

Նոյն այս Արամ, յետ վճարելոյ ճակատոյն՝ որ ընդ արեւելեայս, խաղայ նոյն զօրութեամբ զկողմամբք ասորեստանի․ գտանէ և անդ զոմն ապականիչ երկրին իւրոյ՝ չորիւք բիւրովք վառելովք հետեւակօք, և հինգ հազար հեծելազօրու, Բարշամ անուն՝ յազգէ սկայիցն․ որոյ սաստկագոյն նեղեալ հարկաց խըստութեամբ անապատ զբովանդակ շրջակայն իւր առնէր։ Սմա ճակատու պատերազմի 'ի դիմի հարեալ Արամ, հալածական ընդ մէջ Կորդուաց 'ի դաշտն ասորեստանի արկանէ, զբազումս 'ի նոցանէ սատակելով․ իսկ Բարշամ առաջի զինակրացն նորա պատահեալ՝ մեռանի։ Եւ զայս Բարշամ վասն արութեան իւրոյ բազում գործոց՝ աստուածացուցեալ պաշտեցին Ասորիք ժամանակս յոլովս։ Իսկ զմեծ մասն դաշտացն ասորեստանի կալաւ 'ի ծառայութեան հարկի Արամ բազում ժամանակս։

Այլ որ ինչ յարեւմուտս կոյս ընդ տիտանեանցն է սորա գործ քաջութեան՝ ասել կայ մեզ առաջի։ Աստ յարեւմուտս շարժեալ 'ի վերայ առաջնոյն չորիւք բիւրու հետեւակաւ զօրու, և երկու հազար հեծելովք հասանէ 'ի կողմանս կապադովկացւոց, 'ի տեղի մի՝ որ այժմ ասի Կեսարիա։ Եւ քանզի զարեւ-

## XIV.

**Différends d'Aram avec les Assyriens, sa victoire.— Baïabis Kaghia.— Césarée. — Première Arménie, et autres contrées appelées Arménie.**

Nous rappellerons en peu de mots ce qu'Aram fit ensuite de glorieux en occident, actions rapportées dans le livre, et ses différends avec les Assyriens, signalant seulement les causes et l'importance des faits, montrant rapidement toute l'étendue de l'œuvre.

Ce même Aram, après avoir terminé sa guerre contre l'occident, marche avec son armée en Assyrie. Il y trouve un homme qui ruinait sa patrie, avec quarante mille fantassins et cinq mille cavaliers, un nommé Parcham, de la race des géans. Cet homme à force de pressurer le pays, de l'accabler d'impôts, faisait un désert de toute la contrée qui l'entourait. Aram lui livre combat, le jette fugitif au milieu du pays des Gortouk, dans la plaine d'Assyrie, extermine grand nombre d'ennemis; Parcham mourut sous les traits des soldats d'Aram. Déifié à cause de ses nombreuses actions de valeur, il fut adoré long-temps par les Syriens. Une grande partie des plaines de l'Assyrie fut soumise au tribut d'Aram pendant longues années.

Nous avons à parler maintenant de toutes les actes de valeur d'Aram en occident contre les Titans. Il marche ensuite vers l'occident avec quarante mille cavaliers, deux mille fantassins, arrive en Cappadoce, en un lieu dit à présent Césarée. Comme il avait soumis l'est et le sud, qu'il en avait confié la garde à deux

լեայնն և զՀարաւայինն նուաճեալ, 'ի ձեռն յանձնեալ էր երկուց ցեղից այսոցիկ, սխալեանցն զարնելս, և որք 'ի Կաղմեայ տանէն՝ զասորեստանին, ոչ ինչ այնուհետև կասկած շփոթից ուստեք ունէր ։

Արամ որոյ յերկարեալ ժամանակս լինել յարևմուտս՝ պատահէ նմա Պայապիս Քաղեայ տիտանեան՝ պատերազմաւ, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց, զՊոնտոսն և զՈվկիանոս ։ Որում 'ի դիմի հարեալ վանէ, փախստական արկանելով 'ի կղզի ինչ ասիական ծովուն ։ Եւ ինքն թողեալ զոմն Մշակ անուն յազգէ իւրմէ, և բեւր մի 'ի զօրաց իւրոց 'ի վերայ աշխարհին, և ինքն դառնայ 'ի Հայս ։

Բայց հրաման տայ բնակչաց աշխարհին՝ ուսանել զխօսս և զլեզուս հայկական. վասն որոյ մինչև ցայս օր ժամանակի անուանեն զկղիմայն զայն Պռոտին Արմենիան, որ թարգմանի առաջին Հայք ։ Եւ զդաստակերտն, զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ՝ փոքրագունիւք պարսպեալ որմովք, անուանէին հինք աշխարհին՝ Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել, մինչև յետոյ յոմանց ընդարձակագոյն շինեալ՝ անուանեցաւ Կեսարիա ։ Ըստ նմին օրինակի 'ի տեղեացն այնոցիկ մինչև ցծովն իւր սահմանսն, զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք երկրորդ և երրորդ անուանեցան Հայք, այլ և չորրորդ ։ Այս է առաջին և ճշմարիտ պատճառն վասն անուանելոյ զարևմտեան մեր կողմն առաջին և երկրորդ, այլ և երրորդ և չորրորդ Հայք ։ Իսկ որ այլ 'ի յոմանց ասի 'ի յունական կողմանն, մեզ ոչ է հաճոյ. այլոց որչափ կամք իցեն ։

Արդ այսպէս հզօր և անուանի եղեալ, յանուն սորա մինչև ցայսօր, որպէս ամենեցուն յայտնի է, որ շուրջ զմեւք ազգք զաշխարհս մեր անուանեն ։ Բա-

familles, savoir l'orient à celle des Sissagans, l'Assyrie à ceux de la maison de Gatmos, il n'avait dès lors aucune crainte de troubles.

Pour cela, Aram s'arrête long-temps en occident. Le titanien Baïabis Kaghia lui livre combat ; ce Baïabis tenait envahi tout le pays situé entre les deux grands mers, le Pont et l'océan : Aram fond sur lui, le défait, le jette fugitif dans une île de la mer asiatique. Puis, laissant un de ses proches, nommé Mechag, et dix mille hommes de ses troupes, pour garder le pays, il retourne en Arménie.

Aram ordonne aux habitans du pays d'apprendre à parler la langue arménienne ; c'est pourquoi jusqu'à ce jour, ils nomment cette contrée, Proti Arménia, qu'on traduit ainsi : première Arménie. Le village que le gouverneur établi par Aram, et nommé Mechag, batit, ceignit de petites murailles, et auquel il donna son nom, les anciens habitans du pays le nommaient Majac, ne pouvant bien prononcer ; jusqu'à ce qu'ensuite, agrandi par d'autres, ce village fut nommé Césarée. C'est ainsi que depuis ces lieux jusqu'à son propre empire, Aram remplit d'habitans beaucoup de terres inhabitées, et ce pays fut nommé la deuxième, la troisième, et même la quatrième Arménie. C'est là, la première, la véritable raison pour nommer notre pays occidental, première, seconde, troisième, quatrième Arménie. Mais ce que disent quelques personnes dans l'Arménie grecque, ne nous plait nullement : que les autres fassent ce qu'ils veulent !

Tellement puissant et célèbre est le nom d'Aram jusqu'à ce jour, comme à tous il est évident, que les nations qui nous entourent le donnent à notre

զում և այլ գործ քաջութեան 'ի սմանէ գտանին կատարեալ, այլ մեզ բաւական լիցի ասացեալս։

Բայց թէ ընդէ՞ր այսոքիկ 'ի բուն մատեանս թագաւորացն կամ մեհենիցն ոչ յիշատակեցան, մի՛ ոք ընդ այս երկբայացեալ տարակուսեսցի։ Նախ, զի յառաջ քան զՆինոսի ժամանակս թագաւորութեանն է, յորում ոչ ոք այսպիսի իրաց փոյթ յանձին ունէր․ երկրորդ, զի ոչ հարկ ինչ և ոչ պէտք կարևորք էին նոցա՝ զազգաց օտարաց և զաշխարհաց 'ի բացեայ, և զհամբաւս հինս և զզրոյցս նախնականս յիւրեանց թագաւորաց կամ մեհենից մատեանս գրել․ մանաւանդ զի և ոչ պարծանք ինչ նոցա և ոչ բարգաւաճանք՝ օտար ազգաց քաջութիւն և գործք արութեան։ Բայց թէպէտ և ոչ 'ի բուն մատեանսն, սակայն որպէս Մար Աբաս Կատինայ պատմէ, 'ի փոքունց ոմանց և յաննշանից արանց 'ի գուսանականէն այս գտանի ժողովեալ 'ի դիւանի արքունեաց։ Ասէ և այլ ինչ պատճառս նոյն այր, թէ որպէս ուսայ՝ հպարտ և անձնասէր գոլ զՆինոս, կամելով զինքն միայն աշխարհակալութեան և ամենայն քաջութեան և լաւութեան ցուցանել սկիզբն, հրամայէ զբազում մատեանս և զզրոյցս առաջնոցն՝ ըստ տեղեաց տեղեաց և ոյր ուրուք գործոց քաջութեան՝ այրել․ իսկ որ առ իւրովք ժամանակօք՝ դադարեցուցանել, և որ ինչ վասն իւր միայնոյ՝ գրել։ Այլ զայս աւելորդ եղև մեզ երկրորդել։

Բայց Արամ յետ ամի կենաց իւրոց ծնաւ զԱրայն․ զկնի որոց և այլս բազումս կեցեալ ամաց, մեռաւ։

pays. Aram fit encore bien d'autres actions d'éclat, nous en avons dit assez.

Mais pourquoi ces faits ne furent-ils pas mentionnés dans les livres des rois ou des temples? que personne ne conçoive à ce sujet ni doute ni inquiétude: 1.° c'est qu'Aram est avant les temps du règne de Ninus, époque où nul ne se chargeait de tels soins: 2.° c'est qu'il n'y avait pour les peuples, ni intérêt, ni besoin pressant de s'occuper des nations étrangères, des pays lointains, d'inscrire les anciennes traditions, les récits des premiers âges dans les livres de leurs rois ou de leurs temples; c'est surtout parce qu'il n'y avait pour eux aucun sujet de vanité, d'orgueil dans la valeur et les exploits des nations étrangères. Mais quoique non consignés dans les livres des peuples, les faits cependant, comme le rapporte Mar Apas Gadina, extraits des ballades et des chants populaires par quelques écrivains obscurs, se trouvent recueillis dans les archives royales. Il y a encore une autre raison, dit le même historien: « C'est que, comme je l'ai appris, le superbe, l'égoïste Ninus, voulant se donner lui seul comme le principe, le premier auteur de toute conquête, de toute qualité, de toute perfection, fait brûler quantité de livres, d'annales des premiers âges, annales qui existaient en différens lieux et relataient les actions d'éclat de tels ou tels personnages; il fait également supprimer les annales relatives à ses contemporains, voulant que l'histoire n'écrive que pour lui seul ». Mais il était superflu de répéter tout cela.

Aram engendra Ara; puis, ayant encore vécu grand nombre d'années, il mourut.

## ԺԵ

Յաղագս Արայի, և մահուան նորա պատերազմաւ ՚ի Շամիրամայ։

ԱՐԱՅ սակաւ ամօք յառաջ քան զվախճանեն Նինոսի խնամակալեալ իւրոց հայրենեացն, նոյնպիսում շնորհի արժանաւորեալ ՚ի Նինոսէ՝ որպէս և հայրն իւր Արամ։ Բայց վաւաշն այն և բոզբոզիկն Շամիրամ՝ ՚ի բազում ամաց լուեալ զգեղեցկութենէ նորա, ցանկայր հասանել. այլ ոչ ինչ յայտնապէս զայսպիսիս իշխէր գործել։ Իսկ յետ վախճանելոյն կամ փախստական լինելոյ Նինոսի ՚ի Կրետէ՝ որպէս հաւանեալ եմ, համարձակ պատուելով Շամիրամայ զախտն, առաքէ հրեշտակս առ Արայն գեղեցիկ ընծայիւք և պատարագօք, բազում աղաչանօք և խոստմամբ պարգևաց, գալ առ նա ՚ի Նինուէ, կամ առնուլ կնութեան և թագաւորել ՚ի վերայ ամենայնի՝ որոց տիրէր և Նինոս, և կամ կատարել զկամս ցանկութեան նորա և դառնալ մեծաւ պարգևօք և խաղաղութեամբ ՚ի տեղի իւր։

Եւ բազում անգամ երթևեկութիւն հրեշտակագնացութեանն լինելոյ՝ և ոչ հաւանել Արային, ՚ի սաստիկ ցասման լեալ Շամիրամայ, ՚ի վախճանի պատգամաւորութեանն առնու զբազմութիւն զօրաց իւրոց, և փութայ երթալ հասանել յերկիրն Հայոց ՚ի վերայ Արայի։ Բայց որչափ դիմաց էր նշանակել, ոչ այնչափ ինչ ՚ի սպանանել զնա և ՚ի հալածել փութայր, քան թէ ՚ի նուաճել կամ զբռնամբ ածել, զի լցցէ զկամս ցանկութեան իւրոյ. զի առ ՚ի յոյժ ցանկականի մոլեգնութեան, ՚ի բանսն՝ որ զնմանէ՝ որպէս ՚ի տեսութիւն շամշութեամբ վառեալ էր։ Գայ հասանէ տագնապաւ ՚ի դաշտն Արայի, որ և յանուն նորա անուանեալ Այրարատ։ Եւ ՚ի լինել ճակա-

## XV.

Ara. — Sa mort dans une guerre suscitée par Sémiramis.

Ara, peu d'années avant la mort de Ninus, obtint le gourvernement de sa patrie, jugé digne par Ninus de cette faveur, comme autrefois son père Aram. Mais l'impudique, la voluptueuse Sémiramis, ayant entendu parler depuis longues années de la beauté d'Ara, brûlait du désir de se satisfaire ; cependant elle ne pouvait agir ouvertement. Mais après la mort, ou plutôt après la fuite de Ninus en Crète, comme j'en suis persuadé, Sémiramis caressant librement sa passion, envoie des messagers au bel Ara avec de riches présens accompagnés d'instances multipliées, de promesses magnifiques, pour l'engager à venir la trouver à Ninive, à l'épouser et à régner sur tout l'empire de Ninus, ou bien à satisfaire ses désirs, et à retourner ensuite en paix dans ses propres états, chargé de présens.

Déjà il y avait eu députation sur députation, et toujours refus de la part d'Ara. Alors Sémiramis, furieuse en voyant l'issue de ses messages, prend toute la multitude de ses troupes, se hâte d'arriver en Arménie et de fondre sur Ara. Mais, comme tout l'indiquait, ce n'était pas tant pour tuer Ara ou le mettre en déroute, qu'elle se pressait ainsi, que pour le subjuguer, s'emparer de lui afin de satisfaire ses désirs ; car, tombée dans toute la délire de la passion, au simple récit qu'elle avait entendu faire d'Ara, comme si elle l'eût vu, elle brûlait de feux dévorans. Elle accourt se précipiter dans la plaine d'Ara, de son nom appelée Ararat. Au moment du combat, elle ordonne à ses ca-

տուն՝ պատուէր տայր զօրապետաց իւրոց, թէ դէպ լինիցի, հնարել ապրեցուցանել զԱրայն ։ Իսկ 'ի լինել մարտին՝ հարկանի զօրն Արայի, մեռանի Արայ 'ի պատերազմին 'ի մանկանցն Շամիրամայ ։ Դիտակապուտս առաքէ տիկինն յետ յաղթութեանն 'ի տեղի ճակատուն, խնդրել 'ի մէջ դիականցն անկելոց զըղձալին իւր և զտարփածուն ։ Գտանեն զԱրայն մեռեալ 'ի մէջ քաջամարտկացն . և հրամայէ դնել զնա 'ի վերնատանն ապարանից ։

Իսկ 'ի գրգռել միւսանգամ զօրացն Հայոց 'ի մարտ պատերազմի ընդ տիկնոջն Շամիրամայ՝ քինախնդիր լինել մահուանն Արայի, ասէ . Հրամայեցի աստուածոցն իմոց լեզուլ զվէրս նորա, և կենդանասցի ։ Միանգամայն և ակն ունէր դիւթութեամբ վհուկութեան իւրոյ կենդանացուցանել զԱրայ, ցնորեալ 'ի տռփական ցանկութենէն ։ Իսկ իբրև նեխեցաւ դի նորա, հրամայեաց ընկենուլ 'ի վիհ մեծ և ծածկել. զմի ոմն 'ի հոմանեաց իւրոց զարդարեալ ունելով 'ի ծածուկ, համբաւէ զնմանէ այսպէս . Լիզեալ աստուածոցն զԱրայ և կենդանացուցեալ լցին զփափագ մեր և զհեշտութիւն . վասն որոյ առաւել յայսմ հետէ պաշտելիք են 'ի մէնջ և փառաւորեալք, իբրև հեշտացուցիչք և կամակատարք ։ Կանգնէ և նոր իմն պատկեր յանուն դիւաց, և մեծապէս զոհիւք պատուէ . ցուցանելով ամենեցուն, իբր թէ այս զօրութիւն աստուածոցն կենդանացուցին զԱրայ . և այսպէս համբաւեալ զնմանէ 'ի վերայ երկրիս Հայոց, և հաւանեցուցեալ զամենեսեան, դադարեցուցանէ զխազմն ։

Այս որ ինչ յաղագս Արայի՝ կարճառօտիւ և այսչափ շատ լիցի յիշատակել ։ Սա կեցեալ ամս, ծնաւ զԿարդոս ։

pitaines de faire en sorte, s'il est possible, d'épargner les jours d'Ara. Mais, au fort de la mêlée, la troupe d'Ara est mise en pièces, Ara meurt dans l'action, sous les coups des soldats de Sémiramis; la reine envoie après la victoire au lieu du combat, ceux qui dépouillent les cadavres, chercher entre les morts, l'objet de ses désirs, de sa passion. On trouve Ara sans vie au milieu de ses braves compagnons d'armes: Sémiramis le fait déposer à l'étage supérieur de son palais.

Comme les troupes arméniennes se ranimaient au combat contre la reine Sémiramis, pour venger la mort d'Ara, elle dit: « J'ai ordonné à mes dieux de sucer les plaies d'Ara, et Ara sera sauvé ». Elle espérait par la vertu de ses enchantemens magiques ressusciter Ara, tant elle était aveuglée par la fureur de sa passion; mais quand le cadavre fut en putréfaction, elle le fit jeter dans une fosse profonde et dérober ainsi à tous les regards. Puis, ayant déguisé en secret un de ses amans, elle publie cette nouvelle sur le compte d'Ara: « Les dieux en suçant les plaies d'Ara, l'ont rendu à la vie, et ont ainsi comblé nos vœux les plus chers: aussi, désormais ils doivent être par nous encore plus adorés et glorifiés, comme auteurs de notre félicité ». Sémiramis érige une nouvelle statue aux dieux, et lui prodigue des sacrifices, comme si la puissance de ces dieux avaient sauvé Ara. A l'aide de ces bruits propagés en Arménie sur le compte d'Ara, Sémiramis persuadant tous les esprits, fait cesser la guerre.

Pour tout ce qui regarde Ara, il doit suffire de le rappeler en ce peu de mots. Ara engendra Gartos.

## ԺԶ

*Թէ որպէս յետ մահուանն Արայի Շամիրամ շինէ զքաղաքն և զամբարտակ գետոյն և զիւր տունն։*

Իսկ զկնի այսպիսի իրաց աջողութեանց դադարեալ Շամիրամայ աւուրս ինչ սակաւս ՚ի դաշտին, որ անուանեալ կոչի յանուն Արայի Այրարատ, ելանէ ՚ի լեռնակողմանս երկրի հարաւակողմանն, քանզի ժամանակ ամառնային էր, զբօսնուլ կամելով ՚ի հովիտս և ՚ի դաշտս ծաղկաւէտս։ Եւ տեսեալ զգեղեցկութիւն երկրին և զօդոցն մաքրութիւն և զաղբերացն յստակագոյն բղխմունս և զկարկաջասահանութիւն գետոց բարեգնացից, Պարտ է մեզ, ասէ, յայսպիսում բարեխառնութեան օդոց և մաքրութեան ջուրց և երկրի, քաղաք և արքունիս շինել բնակութեան, որպէս զի զչորրորդ մասն ՚ի բոլորմանէ տարւոյն, որ է ամառնայինն եղանակ, ըստ ամենայն բարեվայելչութեան անցուցանեմք ՚ի Հայս. և զայլն ևս երիս որոշմունս օդոցն զովութեան տածիցեմք ՚ի Նինուէ։

Եւ անցեալ ընդ բազումս ՚ի տեղեաց, գայ հասանէ յարևելից կողմանէ յեզր ծովակին աղւոյ. և տեսեալ առ եզերբ ծովուն երկայնաձև բլուր մի, որոյ նիստ երկայնութեանն ՚ի մուտս կոյս արեգականդ՝ սակաւ ինչ առ ՚ի կողեալ ՚ի հիւսիսոյ, իսկ ՚ի միջօրէ կողմանէ՝ դէպ ուղիղ առ երկին հայելով, քարանձաւ կանգուն անշեղ. և ՚ի սմանէ զհարաւով բացագոյն հովիտ իմն դաշտաձև երկայնաձիգ յարևելից կողմանէ լերինն, իջանելով յեզր ծովուն՝ ընդարձակ և գեղեցիկ ձորաձև. որոց ընդ մէջն հոսանք ջուրց բարեհամաց՝ ՚ի լեռնէն իջանելով, ՚ի ձորձորոց և ՚ի հովտաց ծորեալք, և ՚ի հիմանց փեղկից լերանց միաւորեալք՝ ՚ի ծաւալումն գետոց պերճանային. և

## XVI.

**Comment après la mort d'Ara, Sémiramis batit-elle sa ville, la chaussée du fleuve, et son palais?**

Après ces succès, Sémiramis s'étant arrêtée peu de jours dans la plaine, appelée du nom d'Ara, Ararat, passe au midi de la montagne, car c'était alors l'été, voulant se promener dans les vallons et les plaines fleuries. En voyant la beauté du pays, la pureté de l'air, les sources limpides qui jaillissent de toutes parts, le cours majestueux des fleuves au doux murmure, « Il nous faut, dit-elle, dans un pays où l'air est si sain, les eaux si pures, batir une ville, une résidence royale, pour passer en Arménie, au milieu de tous les agrémens, la quatrième partie de l'année, la saison de l'été; quant aux trois autres saisons plus froides, nous les passerons à Ninive ».

Sémiramis, après avoir parcouru beaucoup de sites, arrive du côté de l'est, au bord du lac salé, elle voit sur ces bords une colline de forme oblongue, exposée dans sa longueur au couchant, quelque peu oblique vers le nord; au midi, un antre s'élevant droit et perpendiculairement vers le ciel; à quelque distance vers le sud, une vallée plate, allongée à l'est de la montagne; vallée qui en descendant au bord du lac, devient large, superbe et profonde. A travers ces lieux, des eaux savoureuses, tombant de la montagne dans les creux et les vallées, réunies à la large base des montagnes, formaient de véritables fleuves. De nombreux villages dans cette profonde vallée s'élevaient

շինք ոչ սակաւք 'ի հովտաձև ձորակին՝ յաջմէ և յահեկէ ջուրցն յօրինեալք . 'ի յարևելից կողմանէ հաճեցեալ բլրոյն՝ լեառն մի փոքրագոյն ։

Ըստ իմն ակնակառոյց լեալ այրասիրտն այն և կաթոտն Շամիրամ, հրամանս տայ բիւրուց և երկու հազար արանց անարուեստից գործաւորաց յասորեստանեաց և յայլոց իշխեցելոց, և վեց հազար իւրոց ընտրելոց յամենայն արուեստաւոր գործաւորաց փայտի և քարի, պղնձոյ և երկաթոյ, որք ամենեքին կատարեալք իցեն 'ի յարուեստագիտութեան, ածել անխափան 'ի փափագեալ տեղին . և գործն հաւասար հրամանին առնոյր զկատարումն ։ Եւ վաղվաղակի ածեալ լինէին բազմութիւն խառնիճաղանճ գործաւորացն և բազմարուեստից հանճարեղաց իմաստնոցն ։ Եւ հրամայէ նախ զամբարտակ գետոյն ապառաժիւք և մեծամեծ վիմօք շինել, կրով և աւազով մածուցեալս, անբաւ լայնութեամբ և բարձրութեամբ . որ կայ հաստատուն, որպէս ասեն, մինչև ցայսօր ժամանակի ։ Եւ 'ի պատառուածս նոյն ամբարտակի գետոյն՝ այժմ, որպէս լսեմք, մարդիկ աշխարհին 'ի հէն և 'ի գաղթականս փախստեամբ ամրանան, իբր 'ի ծայրս քարանձաւաց լերանց ամրացեալք ։ Եւ թէ զփորձ առնուլ դէպ ումեք լինիցի, և ոչ իբր պարսատակաց քար մի արժանաւոր 'ի շինուածոյ ամբարտակին խլել ոք զօրեսցէ, թէ և մեծաւ աշխատութեամբ ջանայցէ ։ Եւ 'ի հեղուածս արուեստին՝ որ զքարամբք՝ հայեցեալ ուրուք, որպէս ճարպոյ ինչ հեղման հայեցողացն երևեցուցանէ կարծիս ։ Եւ այսպէս ընդ բազում ասպարէզս անցուցեալ զամբարտակն, հասուցանէ 'ի նկատեալ տեղի քաղաքին ։

Ընդ հրամայէ զամբոխն 'ի բազում դասս որոշել . և 'ի վերայ իւրաքանչիւրոց դասուց զընտիրս 'ի ճարտարացն վարդապետս կարգել . և այնպէս 'ի սաստիկ

à droite et à gauche des eaux. A l'orient de cette riante colline, était une petite montagne.

Ici, l'active, l'impudique Sémiramis, après avoir tout bien examiné, fait aussitôt venir de l'Assyrie, des autres parties de son empire, et rassembler sur ce point douze mille manouvriers et six mille ouvriers maîtres de tout état, pour travailler le bois, la pierre, le cuivre, le fer, consommés, chacun dans leur art. Tout s'exécutait suivant les ordres de la reine. On voyait arriver, accourir des nuées d'ouvriers et de maîtres-ouvriers, de tout état. Sémiramis fait d'abord construire la chaussée du fleuve en quartiers de roche, en grosses pierres liées entr'elles avec du ciment, ouvrage d'une largeur et d'une hauteur considérable, qui subsiste, comme l'on dit, jusqu'aujourd'hui. Dans les fentes de cette chaussée, nous le savons par ouï-dire, fuient, se retranchent à présent les voleurs et les vagabonds du pays comme aussi en sureté que dans les antres retirés des montagnes. S'il plait à quelqu'un d'en faire l'essai, il ne pourra pas même arracher de cette construction une pierre propre à la fronde, quelques efforts qu'il fasse ; en examinant la parfaite liaison des pierres entr'elles, on croirait que cette liaison est formée avec de la cire coulée. Cette chaussée, longue de plusieurs stades, arrive jusqu'à la ville.

Sémiramis fait partager ce peuple d'ouvriers en plusieurs classes; à la tête de chaque classe elle établit maîtres, l'élite des artisans. Ainsi à force d'efforts

ճգնութեան պահեալ, յետ սակաւ ամաց կատարէ զհրաշալին ամրագունիւք պարսպօք, հանդերձ դըրամբք պղնձակերտիւք ։ Շինէ և ընտիր ընտիրս և բազումս 'ի մէջ քաղաքին ապարանս 'ի պէս պէս քարանց և 'ի գունից զարդարեալս, կրկնայարկս և եռայարկս. և ըստ պատեհի իւրաքանչիւր' արեգակնակս. և գեղեցիկ գունիւք և ընդարձակ փողոցիւք զկողմանս քաղաքին որոշելով ։ Շինէ զչքնաղս ոմանս և զզարմանալոյ արժանաւորս ըստ պիտոյից 'ի միջոցաց քաղաքին լուալիս ։ Նա և զմասն ինչ գետոյն ընդ մէջ քաղաքին բաշխեալ գնացուցանէ 'ի պէտս ամենայն պիտոյից, և յարբուցմունս բուրաստանաց և ծաղկոցաց. և զայլն զեզերբ ծովակին յաջմէ և յահեկէ, քաղաքին և բովանդակ շրջակային յարբուցումն ։ Նա և զամենայն արևելեան և զհիւսիսային և զհարաւային կողմունս քաղաքին զարդարէ դաստակերտօք, և սաղարթիւք ծառոց վարսաւորաց' զանազանեալք 'ի պտուղս և 'ի տերևս. և բազումս բազմաբերս և գինեբերս 'ի նմա տնկեաց ովիտս ։ Նա ամենայնիւ հոյակապ և հռչակաւոր զպարսպեալն յօրինէր. և անթիւ բազմութիւն մարդկան 'ի ներքս բնակեցուցանէ ։

Իսկ զծայր քաղաքին և որ ինչ 'ի նմանէ գործոյ հրաշակերտութիւնք, բազմաց 'ի մարդկանէ ոչ հասու լեալ, և ոչ պատմել է կարողութիւն ։ Զորոյ զպարսպեալ զգագաթն' դժուարամուտս ոմանս և դժուարելանելիս 'ի նմա' յօրինէ շինուածս արքայանիստս, և ծածուկ իմն ահագին ։ Որոյ որպիսութիւն զրութեանն յօրինուածոյ ոչ 'ի լսելիս մեր հասեալ ճշմարտութեամբ յումեքէ, և ոչ մեք 'ի պատմութիւնս հիւսել հաւանիմք. այլ ասեմք միայն, թէ ամենայն թագաւորականաց գործոց, որպէս լուաք, առաջին և վեհագոյն համարեալ ։

continus, elle achève en peu d'années ces merveilleuses constructions, qu'elle ceint de fortes murailles avec des portes d'airain. Elle batit aussi dans la ville de nombreux et magnifiques palais, ornés de différentes pierres, de diverses couleurs, à deux à trois étages, chacun, comme il convient, exposé au soleil ; elle distingue par de belles couleurs les quartiers de la ville, les divise en larges rues; elle construit avec un art admirable des égouts selon les besoins, sur les places de la ville. Distribuant dans la cité une partie des eaux du fleuve, elle les amène partout où il en faut, et pour l'arrosement des jardins, des parterres ; quant à l'autre portion des eaux près les bords du lac, elle la destine aux besoins de la ville et de tous ses environs. Toutes les parties de la ville, à l'est, au nord, au sud, elle les orne de beaux édifices, d'arbres touffus, portant des fruits, un feuillage différens; elle plante quantité de vignes productives et fertiles en vin. De tous côtés elle entoure la ville de magnifiques, de célèbres murailles, et met dedans une immense population.

Quant à l'extrémité de la ville et aux merveilleuses constructions qui s'y trouvent, bien des gens ignorent l'état des choses: les rapporter est donc impossible. Sémiramis garnit le sommet de murailles, pratique des entrées difficiles, d'un accès pénible, élève un palais royal avec de terribles secrets. La description du plan, de l'économie de ces constructions, ne nous a été faite par personne avec vérité: nous ne pouvons donc la présenter dans cette histoire. Nous dirons seulement, que de tous les ouvrages royaux, comme nous l'avons entendu dire, c'est le premier, le plus grandiose.

6

Իսկ զընդդէմ արեգական կողմն անձաւին, որ և ոչ գիծ մի երկաթոյ այժմ վերագրել ոք կարէ, զայսպիսի կարծրութիւն նիւթոյ՝ պէս պէս տաճարս և սենեակս օթից և տունս գանձուց և վիհս երկարս, ոչ գիտէ ոք՝ թէ որպիսեաց իրաց պատրաստութիւն հրաշակերտեաց ։ Իսկ զամենայն երեսս քարին իբր գրչաւ զմոմ հարթել, բազում գիրս 'ի նմա գրեաց. որոյ հայեցուածն միայն զամենայն ոք 'ի զարմանս ածէ ։ Եւ ոչ միայն այս, այլ և 'ի բազում տեղիս յաշխարհին Հայոց արձանս հաստատեալ, նովին գրով յիշատակ ինչ հրամայէ գրել. և 'ի բազում տեղիս սահմանս նովին գրով հաստատէր ։

Արդ, որ ինչ յաղագս Շամիրամայ գործոց՝ որ 'ի Հայս, ասացեալ է։

## ԺԵ

Յաղագս Շամիրամայ, թէ էր աղագաւ կոտորեաց զորդիս իւր. և թէ որպէս փախստական լինի 'ի Զրադաշտէ մոգէ 'ի Հայս, և մեռանի 'ի Նինուասայ որդւոյ իւրոյ։

Սա հանապազ յամառնայինսն 'ի խաղալն իւր 'ի կողմանս հիւսիսոյ 'ի քաղաքն ամարաստանի, զոր շինեաց 'ի Հայս, կողմնապետ ասորեստանի և Նինուէի թողու զԶրադաշտ մոգ և նահապետ Մարաց ։ Եւ 'ի բազում ժամանակս զայս այսպէս կարգեալ Շամիրամայ, ամենևին հաւատայ նմա արդարև զիւր իշխանութիւնն ։

Եւ բազում անգամ յանդիմանեալ յորդւոց իւրոց վասն սաստիկ և վաւաշ պոռնկական բարուց իւրոց, կոտորէ զամենեսեան, և ապրի կրսերագոյնն միայն, որ է Նինուաս ։ Բարեկամացաւ հոմանեաց իւրոց՝ պարգևելով զամենայն իշխանութիւնս և զգանձս, ոչ ինչ վասն որդւոց իւրոց ունելով փոյթ յանձին ։

Au côté oriental de la caverne, sur lequel on ne peut à présent tracer une seule ligne avec le fer, tant est dur le silex, sont pratiquées des chapelles, des chambres, des trésoreries, de longues cavités. Personne ne sait comment ont pu s'élever des constructions si merveilleuses. Sur toute la surface de la pierre, comme sur de la cire avec une plume, sont tracées quantité de pages : la vue de ce prodige seul, jette tout le monde dans l'étonnement, mais ce n'est pas tout. En bien d'autres endroits de l'Arménie, Sémiramis fait élever des colonnes, et graver aussi sur ces colonnes le souvenir de quelque fait : sur plusieurs points, elle établit des bornes-termes avec des inscriptions tracées de même.

Quant à ce qui est des ouvrages de Sémiramis en Arménie, c'est assez.

## XVII.

De Sémiramis, pour quelle raison fait-elle périr ses enfans? — Comment s'enfuit-elle du mage Zoroastre, en Arménie? — Elle meurt de la main de son fils Ninyas.

Sémiramis, voulant toujours aller passer l'été au nord, dans la ville qu'elle a batie en Arménie, laisse pour gouverneur de l'Assyrie et de Ninive Zoroastre, mage et prince des Mèdes : pendant long-temps les choses étant ainsi réglées, Sémiramis remet vraiment toute sa puissance à Zoroastre.

Souvent reprise par ses enfans, au sujet de sa conduite déréglée, voluptueuse, libertine, Sémiramis les fait tous périr, excepté le plus jeune, Ninyas. Dans son amour pour ses favoris, elle leur donne toute sa puissance, ses trésors, et ne prend aucun soin de ses enfans. Son époux Ninus n'était pas mort, comme on

Քանզի և այրն նորա ՙՆինոս՚ ոչ որպէս ասի մեռեալ թաղեցաւ 'ի նմանէ 'ի ՙՆինուէ յարքունիս, այլ ի-մացեալ զախտասէր բարս նորա և զչարասէր, թո-ղեալ զթագաւորութիւնն՝ փախստական անկանէր 'ի Կրետէ: Իսկ 'ի հասակ և 'ի տիս հասեալ որդւոց նորա, յիշեցուցանեն նմա զայս ամենայն, կարծելով ցածուցանել զնա 'ի դիւական մրցական տռփանա-ցըն, և աւանդել զիշխանութիւն և զգանձս որդւոց իւրոց: Ընդ որ առաւել զայրագնեալ, սատակէ զա-մենեսեան. և մնաց ՙՆինուաս միայն, որպէս վերա-գոյն ասացաք:

Իսկ 'ի լինել ինչ սխալմանց Զրադաշտի առ տի-կինն, և հակառակութեան 'ի ներքս անկանելոյ, պա-տերազմի 'ի վերայ նորա Շամիրամ. քանզի բռնա-նալ 'ի վերայ ամենայնի խորհէր այրն: Եւ 'ի սաստ-կանալ պատերազմին փախստական լինի Շամիրամ յերեսաց Զրադաշտի 'ի Հայս: Աստ ժամանակ վրէժխնդրութեան պատեհի գտեալ ՙՆինուաս, սպա-նանէ զմայրն. և ինքն թագաւորէ 'ի վերայ ասորես-տանի և ՙՆինուէի: Ահա ասացաք յաղագս մահուա-նըն Շամիրամայ՝ թէ ուստի և որպէս:

## ԺԲ.

Յաղագս թէ հաւաստի նախ լեալ պատերազմն Շամիրամայ 'ի հնդիկս, և զկնի մահուանն նորա որ 'ի Հայս:

ՈՒՆԻՄ 'ի մտի և զԿեփաղիոնին, վասն ոչ տալ զմեզ բազմաց ծաղրել. զի ասէ 'ի բանից այլոց նախ յաղագս ծննդեանն Շամիրամայ, և ապա ուրեմն զպատերազմն հնդկաց: Այլ հաւաստի մեզ թուե-ցաւ որ 'ի Մար Աբայն Կատինայէ քննութիւն քաղ-դէական մատենից քան զայսոսիկ. քանզի ոճով իմն ասէ, և զպատճառս պատերազմին յայտնէ: Իսկ առ

le dit, et enterré à Ninive, au palais, par les soins de Sémiramis; mais Ninus voyant la corruption et la perfidie de sa femme, avait laissé l'empire et s'était enfui en Crète. Les enfans de Sémiramis, parvenus en âge, lui rappellent toute sa conduite, croyant la faire rougir de ses habitudes vicieuses, criminelles, infâmes, et la déterminer à leur résigner son autorité et ses trésors : Sémiramis ne devient que plus furieuse, et fait périr tous ses enfans ; Ninyas fut seul épargné, comme nous l'avons dit ci-dessus.

Par suite des torts de Zoroastre envers la reine, et de leur différend, Sémiramis prend les armes contre lui; car Zoroastre songeait à établir partout sa tyrannie. Au fort du combat, Sémiramis fuit devant Zoroastre, en Arménie. Ninyas trouve le moment favorable pour la vengeance, tue sa mère, et règne sur l'Assyrie et Ninive. Nous avons dit au sujet de la mort de Sémiramis, la cause, et les circonstances.

## XVIII.

D'abord, guerre de Sémiramis dans les Indes, puis, sa mort arrivée en Arménie.

J'ai en vue Céphalion pour ne pas donner à rire sur nous ; il parle d'après d'autres histoires, d'abord de la naissance de Sémiramis, ensuite de sa guerre dans les Indes. Mais les documens qui résultent de l'examen fait par Mar Apas Gadina des livres chaldéens, nous ont paru plus certains que toutes ces données; car il parle convenablement, il expose les causes de la guer-

այսորքիւք՝ և աշխարհիս մերոյ առասպելք զբազմահըմուտ Ասորին արդարացուցանեն. սուտ ուրեմն զմահն ասել Շամիրամայ, և զհետևակ փախուստն, և զպապաքումն և զհեղձս ջրոյն և զարբումն, այլ և 'ի մօտ հասանել սուսերաւորաց, և զյղութիւն 'ի ծով, և բան 'ի Նմանէ՝ Ուլունք Շամիրամայ 'ի ծով: Այլ թէ ախորժես առասպել, և Շամիրամ քար առաջին քան զՆիոբէ: Արդ այս շատ է. բայց մեք որ ինչ զկնի այսորիկ:

## ԺԹ

Որ ինչ զկնի մահուանն Շամիրամայ:

ՅԱՐՄԱՐԵԱԼ զամենայն կարգեցից քեզ 'ի գիրս յայսոսիկ զազգիս մերոյ զաւագագոյն զարս և զնախնիս, և որ ինչ վասն սոցա զրոյցք և իրակութիւնք իւրաքանչիւր, ոչ ինչ կամամտածական և ոչ ինչ անպատշաճ 'ի սմա յարմարելով բան, այլ որ ինչ 'ի գրոց. իսկ ըստ նմանեաց ապա և որ ինչ 'ի բանից արանց իմաստնոց և յայսոսիկ քաջախոհակաց, յորոց մեք արդարապէս ջանացաք հաւաքել զհնագրութիւնս: Եւ ասեմք լինել արդարաբան 'ի պատմութեանս յայսմիկ ըստ մերոյ յօժարութեան և ուղղամտութեան. իսկ ըստ որոց հաւաքումն, Աստուծոյ լինել յայտնիս, և մարդկան գովելիս կամ բասրելիս, և մեք այնոցիկ օտար և բացակացեալ: Բայց զուգութիւն բարբառոյ և հաւասարութիւն թուոյ կարգի պատանեաց՝ զճշմարտութիւն աշխատասիրութեանս մերոյ ակնարկէ: Եւ այսոցիկ այսպէս կարգելոց, կամ հաւաստի կամ դոյզն ինչ կասեալ յարդարոյն, սկսայց քեզ և որ ինչ զկնի այսոցիկ 'ի հիւսման պատմութենէ պիտոյից:

Արդ յետ մահուանն Շամիրամայ 'ի Զամասեայ

re; ajoutons à cela que même les fables de notre pays justifient le savant Syrien, en disant qu'ici eurent lieu la mort de Sémiramis, sa fuite à pied, sa soif dévorante, son désir de trouver de l'eau, son empressement à se désaltérer; lors de l'arrivée des soldats, le jet du talisman dans la mer, d'où vient ce dicton: Les perles de Sémiramis jetées dans la mer. Si tu aimes les fables, écoute celle-ci: Sémiramis est changée en pierre avant Niobée. Assez sur ce sujet; occupons-nous des faits postérieurs.

## XIX.

### Événemens arrivés après la mort de Sémiramis.

Je vais tout te montrer avec ordre dans cet ouvrage; les auteurs, les ancêtres de notre nation, toutes les traditions qui les concernent, chacun de leurs faits et gestes, sans mettre rien d'imaginaire ou d'inconvenant dans nos récits, rien autre chose que ce qui est dans les livres, ce qui se trouve, par exemple, dans les discours des hommes sages et profonds d'où nous avons justement tâché de rassembler, tirer nos documens archéologiques; nous dirons que nous sommes demeuré juste, véridique dans cette histoire, par goût, par conscience. C'est avec ces dispositions qu'est faite notre compilation, Dieu le sait; louable ou blâmable aux yeux des hommes, nous sommes indifférent à leurs jugemens. Mais l'égalité de notre diction, l'ordre régulier de la chronologie, indiquent assez la véracité de notre travail. Les choses ainsi établies, assuré ou à peu près de la vérité, je commencerai à t'exposer les faits postérieurs, d'après la suite de l'histoire.

Après la mort de Sémiramis, tuée par son fils Za-

որդւոյ խուռմէ, որ է Նինուաս, որ եղև յետ սպանանելոյն զԱրային, այսպէս հաւաստեաւ գիտասցուք զկարգ բանից: Թագաւորէ Նինուաս սպանեալ զմայրն հեշտասէր, և խաղաղական կեցեալ. և առ սովաւ Աբրահամու աւուրք բաւեալք:

Համեմատութիւն ծննդաբանութեան ազգիս մերոյ ընդ եբրայեցւոց և ընդ քաղդէացւոց մինչև ցՍարդանապալոս, որ կոչէր Թօնոս Կոնկողեռոս:

| ԵԲՐԱՅԵՑԻՈՑ | ՔԱՂԴԷԱՑԻՈՑ | ՀԱՅՈՑ |
|---|---|---|
| Իսահակ. | Արիոս. | Արայ. |
| Յակոբ. | Արալիոս. | * |

* Իսկ մերոյն Արայի որդի՝ Արայ ՚ի Շամիրամայ կոչեցեալ, և զգործ վերակացութեան աշխարհիս նմա հաւատացեալ:

| | | |
|---|---|---|
| Ղեւի. | Սուսառիս. | Անուշաւան. |
| Կահաթ. | Քսէսքսեր. | Պարէտ. |
| Ամրամ. | Պաղէոս. | Արբակ. |
| Մովսէս. | Առմամիթռէոս. | Զաւան. |
| Յեսու*. | Բելոքոս. | Փառնաս. |

* Ի սմանէ յառաջ՝ ոչ ըստ ազգի, այլ ըստ յառաջադիմութեան արանց. զի և ամենեքեան յԱբրահամէ: Ի սատակել սորա զքանանացիս՝ անցին ՚ի սմանէ փախստականք յԱգռաս, նաւելով ՚ի Թարսիս. և յայտնի դրոշմամբն, որ յարձանսն ափրիկեցւոց աշխարհին, գրեալ կան մինչև ցայսօր ժամանակի արդարապէս այսպէս.

Ի ՅԵՍՈՒԱՅ ԳՈՂՈՅ
ՓԱԽՈՒՑԵԱԼ ՄԵՔ ՆԱԽԱՐԱՐՔ ՔԱՆԱՆԱՑԻՈՑ
ԵԿԱՔ ԲՆԱԿԵԼ ԱՍՏ:

massis, le même que Ninyas, né postérieurement au meurtre d'Ara, nous savons avec certitude l'ordre des faits: Ninyas règne, après avoir fait périr sa mère voluptueuse, et vit paisible. Sous Ninyas fin des jours d'Abraham.

Comparaison de la généalogie de notre nation avec celle des Hébreux et des Chaldéens jusqu'à Sardanapale, appelé Tonos-Concholéros.

| HÉBREUX. | CHALDÉENS. | ARMÉNIENS. |
|---|---|---|
| Isaac. | Arius | Ara. |
| Jacob. | Aralius. | * |

*Fils de notre Ara, appelé Ara par Sémiramis, qui lui confie l'administration de notre pays.

| | | |
|---|---|---|
| Lévi. | Sosares. | Anouchavan. |
| Cahat. | Xerxes. | Bared. |
| Amram. | Galeus. | Arpag. |
| Moïse. | Armamitres. | Zavan. |
| Josué *. | Bélochus. | Parnas. |

* Depuis Josué, ce n'est plus par ordre de filiation, mais de prééminence de personnages; car tous descendent d'Abraham. Lors de leur défaite par Josué, les Chananéens, fuyant leur exterminateur, passèrent en Afrique, naviguant sur Tharsis; fait constaté par une inscription gravée sur des colonnes en Afrique, inscription conservée jusqu'aujourd'hui, vraiment ainsi conçue:

MIS EN FUITE PAR LE BRIGAND JOSUÉ,
NOUS, PRINCES DES CHANANÉENS,
NOUS SOMMES VENUS HABITER ICI.

Յորոց մի և Բանանիդաս պատուականագոյն մեր՝ 'ի Հայս։ Եւ ստուգեալ հաւաստի գտաք զսերունդս ազգին գնթունեաց 'ի սմանէ առանց հակառակութեան լեալ. զայս և բարք արանց ազգի յայտնեն՝ քանանացի գոլ։

| ԵԲՐԱՅԵՑԻՈՑ | ՔԱՂԴԷԱՑԻՈՑ | ՀԱՅՈՑ |
|---|---|---|
| Գոթոնիէլ. | Ալտադոս. | Սուր. |
| Աւովդ. | Մամիթոս. | Հաւանակ. |
| Բարակ. | Մաքաղէոս. | Վաշտակ. |
| Գեդէոն. | Զփառոս. | Հայկակ *. |
| | Մամիղոս. | |
| | Սպառեթոս. | |
| | Սկատադէս. | |
| | Ամինտէս. | |
| | Բելոքոս. | |

* Զհայկակ ասեն լինել առ Բելոքոսիւ, և ամբոխս իմն արարեալ անխորհուրդս, և մեռանել 'ի նմին։

| | | |
|---|---|---|
| Աբիմելէք. | Բաղատորէս. | Ամպակ. |
| Թովղայ. | Լամպառիտէս. | Առնակ. |
| Յայիր. | Սոսառիս. | Շաւարշ. |
| Եփթայի. | Լամքառիս. | Նորայր. |
| Եսեբոն. | Պանիաս. | Վստաշկար. |
| Եղոմ. | Սոսառմոս. | Գոռակ. |
| Լաբդոն. | Միթռէոս. | Հրանտ. |

Un des princes chananéens était notre illustre Chananitas en Arménie; vérification bien faite, nous avons trouvé que la lignée de la race des Kentouni descend de lui, sans aucune contradiction: le caractère des hommes de cette race montre bien qu'ils sont chananéens.

| HÉBREUX. | CHALDÉENS. | ARMÉNIENS. |
|---|---|---|
| Godoniel. | Altadas. | Sour. |
| Avod. | Mamithus. | Havanag. |
| Barac. | Machaleus. | Vachdag. |
| Gédéon. | Sphærus. | Haïgag *. |
| | Mamylus. | |
| | Sparethus. | |
| | Ascatades. | |
| | Amynthas. | |
| | Bélochus. | |

*Haïgag, qui, dit-on, vivait sous Bélochus, périt dans émeute inconsidérément soulevée par lui.

| | | |
|---|---|---|
| Abimélech. | Balatores. | Ambag. |
| Thola. | Lamprides. | Arnag. |
| Jaïr. | Sosares. | Chavarch. |
| Jèphtée. | Lampares. | Noraïr. |
| Éséphon. | Panyas. | Vesdasgar. |
| Aglon. | Sosarmus. | Korag. |
| Labdon. | Mithreus. | Hrand. |

| ԵԲՐԱՅԵՑԻՈՑ | ՔԱՂԴԷԱՑԻՈՑ | ՀԱՅՈՑ |
|---|---|---|
| Սամփսոն. | Տեւտամոս. | Բնձաք. |
| Հեղի. | | Գղակ. |
| Սամուէլ. | | Հորոյ. |
| Սաւուղ. | | Զարմայր*. |
| Դաւիթ, և որ 'ի կարգին։ | | |

*Սա օգնական Պրիամու 'ի Տեւտամայ առաքեալ ընդ եթովպացի զօրուն, մեռանի 'ի քաջացն ելլենացւոց։

| ՔԱՂԴԷԱՑԻՈՑ | ՀԱՅՈՑ |
|---|---|
| Տեւտէոս. | Պերճ. |
| Թինեւս. | Արբուն. |
| Դերկիւղոս. | Բազուկ. |
| Եւպաղմոս. | Հոյ. |
| Լաոսթենիս. | Յուսակ. |
| Պերիդիածիս. | Կայպակ. |
| Ափրատէս. | Սկայորդի։ |
| Փրատինիս. | |
| Ակրազանիս. | |
| Սարդանապաղոս. | |

## Ի

Վասն արքայեան Արայի, և թէ սորա որդի Անուշաւանն, որ Սօս անուանիւր։

ԲԱՅՑ անդրէն իսկ 'ի կենդանութեան իւրում Շամիրամ զծնեալն 'ի Նուարդայ սիրելւոյ կնոջէն Արայի,

| HÉBREUX. | CHALDÉENS. | ARMÉNIENS. |
|---|---|---|
| Samson. | Teutamus. | Entzak. |
| Héli. | | Keghag. |
| Samuël. | | Horo. |
| Saül. | | Zarmaïr *. |
| David, ainsi de suite. | | |

* Zarmaïr envoyé au secours de Priamus par Teutamus avec une armée d'Éthiopiens, meurt de la main des braves Hellènes.

| CHALDÉENS. | ARMÉNIENS. |
|---|---|
| Teuteus. | Berdj. |
| Tineus. | Arpoun. |
| Dercylus. | Pazoug. |
| Eupalmeus. | Ho. |
| Laosthenes. | Houssag. |
| Prietiades. | Gaïbag. |
| Ophrateus. | Sgaïorti. |
| Ophratanes. | |
| Acrazanes. | |
| Sardanapale. | |

## XX.

Ara fils d'Ara. — Son fils Anouchavan, surnommé Sos.

Sémiramis, à cause de sa première passion pour le bel Ara, nomme Ara, le fils né de lui et de sa bien ai-

որ էր երկոտասան ամաց մնացեալ 'ի մահուանն Արայի, վասն առաջին իւրոց խանդաղատանացն՝ որ առ Արայն գեղեցիկ, կոչէ զանուն նորա Արայ. և կարգէ զնա 'ի վերակացութիւն աշխարհիս, մտերմութեամբ հաւատացեալ 'ի նա. զորմէ և մեռեալ ասեն զնա ընդ Շամիրամայ 'ի պատերազմին։

Նայցյարէ զկարգ բանիցս զկնի այսորիկ օրինակ զայս։ Արայեանն Արայ մեռանի ընդ Շամիրամայ 'ի պատերազմի, թողլով արու զաւակ ամենահարուստ և շատահանճար յիր և 'ի բան զԱնուշաւանն, որ Սօս անուանիւր. քանզի ձօնեալ էր ըստ պաշտամանց 'ի սօսիսն Արամանեկայ, որ յԱրմաւիր. զորոց զսաղարթուցն սօսաւիւն, ըստ հանդարտ և կամ սաստիկ շնչելոյ օդոյն և եթուստ շարժմանն, սովորեցան 'ի հմայս աշխարհիս հայկազանց. և այս բազում ժամանակս։

Այս Անուշաւան բաւական ժամանակս արհամարհութիւն կրեալ 'ի Զամեսայ, տուայտի 'ի դրան արքունի. իսկ օգնեալ 'ի բարեկամաց, շահի զմասն ինչ աշխարհիս՝ հարկահանութեամբ խնամել. զկնի ապա և զբոլորս։ Այլ կարի շատ լինի, թէ զամենայն՝ որ ինչ արժան է՝ ասիցեմք 'ի ճառիս զնախակարգելոց արանց զբանս և զգործս։

## ԻԱ

Որ 'ի Սկայորդւոյն Պարոյր՝ առաջին 'ի Հայս թագաւորէ. օգնական լինի Վարբակայ Մարի՝ բառնալով զթագաւորութիւնն 'ի Սարդանապալլայ։

ԹՈՂԼՈՎ զոչ կարևորագոյնսն 'ի բանից, ասասցուք որ ինչ հարկաւորն է։ Վերջին սոցա՝ որք առ Ասորեստանեաց թագաւորութեամբքն, և որք 'ի Շամիրամայ կամ թէ 'ի Նինոսէ, զմերն ասեմ Պարոյր առ Սարդանապալլու։ Սա ոչ փոքր ինչ օգնականութիւն

mée femme, Nouart, enfant âgé de douze ans à la mort d'Ara ; Sémiramis, pleine de confiance en ce jeune prince, le met à la tête de notre pays: Ara meurt, dit-on, dans la guerre contre Sémiramis.

Voici l'ordre des faits postérieurs: Ara, fils d'Ara, meurt dans la guerre contre Sémiramis, laissant un enfant mâle, d'un rang auguste, d'une grande capacité pour l'action comme pour le conseil. Cet enfant était appelé Sos (platane), car il était voué aux fonctions sacrées, dans les forêts de platanes d'Aramaniag, à Armavir. Le tremblement des feuilles de platane, selon le souffle léger ou violent de l'air, était objet de science magique en Arménie, et le fut longtemps.

Cet Anouchavan, pendant de longues années ayant à souffrir le mépris de la part de Zamassis, languissait à la cour. Aidé par ses amis, il parvient à obtenir le gouvernement d'une partie de notre pays, puis du pays tout entier, moyennant tribut ; mais c'est trop de rapporter dans cette histoire tout ce qui est digne de mention, les paroles, les faits et gestes des personnages précités.

## XXI.

**Barouïr, fils de Sgaïorti, est le premier roi couronné en Arménie. — Il aide Varbace le Mède à s'emparer du royaume de Sardanapale.**

Laissant les faits les moins considérables, nous dirons ce qui est important. Le dernier de ceux qui vécurent sous l'empire des Assyriens, depuis Sémiramis ou Ninus, est, je le dis, notre Barouïr sous Sardana-

գփեալ ՚ի Վարբակայ Մարէ, բառնալով զթագաւորութիւնն ՚ի Սարդանապալլայ :

Եւ այժմ ահա զուարճացայց՝ ոչ փոքր ինչ կրելով խնդութիւն, հասանելով ՚ի տեղիս մերում իսկ բնիկ նախնւոյն, յորում սերունդք թագաւորութեան հասանեն յաստիճան : Վասն որոյ արժան է մեզ աստանօր մեծ գործ կատարել, և բազում ասել առաւելութիւնս ճառից. զորոց մեզէն իսկ հիմունս այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցաք ՚ի չորս հագներգութիւնս զարգասաւորին ՚ի բանս և զիմաստնոյն իսկ և զմէջ իմաստնոցն իմաստագունի :

Քանզի Վարբակէս գաւառաւ Մեդացի, ՚ի փոքուէ կողմանց ծագաց գաւառին ամրագունի, խորամանկագոյն ՚ի կենցաղավարութեան և ՚ի մարտն երեւաւոր, ծանուցեալ զանմարդի բարս և զհեշտասէր թուլամտութիւն յուլութեան թուլոյն Կոնկողիոյ, խոտացուցանէ բարուցն և ձեռացն առատութեամբ ՚ի քաջացն և ՚ի պիտանեաց արանց բարեկամս. որով և աշխարհակալութիւնն ասորեստանի առ այնու ժամանակաւ վարիւր յայտնապէս մեծաւ հաստատութեամբ : Յինքն և զքաջն մեր նախարար յանգուցանէ զՊարոյր, թագաւորութեան ձև և շուք խոստանալով նմա. և բազմամբոխս յարի արանց, և որ ՚ի տեգ նիզակի և յաղեղն և ՚ի սուսեր աջողաձեռք : Եւ այսպէս զթագաւորութիւնն ՚ի Սարդանապալլայ յինքն առեալ, տիրէ ասորեստանի և Նինուէի : Բայց այլ վերակացուս կարգեալ ասորեստանի, փոխէ զթագաւորութիւնն ՚ի Մարս :

Բայց այս եթէ առ այլս այլազգաբար պատմի, մի ինչ սքանչանար : Զի որպէս վերագոյն ուրեմն յառաջին ճառուն ամբաստանեցաք զառաջին նախնեացն մերոց անիմաստասէր բարուց ախորժակս, այս համդիպի և աստանօր : Քանզի և որք ՚ի հօրէն Նաբուգոդոնոսորայ գործք, գրեցան յիւրեանցն յիշ՟ս

pale. Barouïr aidé puissamment par Varbace le Mède, ravit le royaume de Sardanapale.

A présent j'éprouve une grande, très grande joie, en arrivant à notre ancêtre national, dont les descendans furent élevés au rang de rois; pour cela nous avons une grande tâche à remplir, bien des sujets à traiter. Nous avons cru devoir lire par nous-mêmes les preuves de ces faits dans quatre rapsodies composées par cet homme sage et fécond en paroles, le plus sage d'entre les sages.

Varbace d'un canton de Médie, à la petite extrémité du canton le plus fortifié, personnage très fin et rusé, célèbre dans les combats, voyant la vie efféminée, la mollesse voluptueuse du faible, du lâche Concholéros, s'attire par sa conduite, ses libéralités, beaucoup d'amis parmi les hommes braves et puissans qui, en ces temps là, tenaient évidemment et avec grande fermeté l'empire de l'Assyrie: il se concilie l'amitié de notre brave ancêtre Barouïr, en lui promettant la couronne et tout l'éclat de la royauté, il s'attache aussi grand nombre de braves guerriers habiles à manier le javelot, l'arc, le glaive. Ainsi Varbace s'emparant des états de Sardanapale, commande à l'Assyrie, à Ninive; mais il y établit des gouverneurs, et transporte aux Mèdes l'empire des Assyriens.

Si ces faits chez les autres historiens sont rapportés différemment, n'en sois point étonné; car comme plus haut dans les premiers chapitres, nous avons blâmé les goûts nullement philosophiques de nos premiers ancêtres, il arrive encore ici la même chose. En effet, les actes et gestes du père de Nabuchodonosor ont

ղութեանցն վերակացուաց. իսկ մերոցն ոչ այսպիսի ինչ խորհեցելոցն, մնացին նշանակեալ 'ի վերջինսն: Ապա եթէ ասիցեն, ուստի՞ մեզ և զնախնեացն մերոց բազմաց այսպէս գտանել զանուանս և զգործս, ասեմ. 'ի հնոցն դիւանաց քաղդէացւոց, ասորեստանեաց և Պարսից, վասն մտելոց անուանց և գործոց նոցա 'ի քարտէս արքունի, իբր գործակալաց և վերակացուաց աշխարհիս 'ի նոցանէ կացելոց, և մեծաց կողմնակալաց:

## ԻԲ

Կարգ թագաւորաց մերոց և համար նոցունց որդւի 'ի հօրէ առնլով:

Արդ այժմ անցից 'ի թիւ մերոց արանց, մանաւանդ թագաւորաց, մինչև ցտէրութիւնն Պարթևաց: Քանզի ինձ այսոքիկ արք 'ի մերոյ թագաւորէն սիրելիք, որպէս բնիկք և իմոյ արեան առուք, և հաւաստի հարազատք: Եւ սիրելի էր ինձ յայնժամ գալ Փրկչին և զիս գնել, և առնորօք յաշխարհ զմուտն իմ լինել, և նոցա տեսութեամբն խրախճանալ, և յարդեացս վտանգից ապրիլ: Այլ վաղուրեմն փախեաւ 'ի մէնջ պատահումն այն, թէ արդեւք և վիճակ: Բայց արդէն առ Մարաց թագաւորութեամբն կեցեալ բնիկք պսակաւոր արք այնոքիկ, զորոց և զանուանսն 'ի ներքոյ դրոշմեմք:

Եւ զի արդարեւ զայնու ժամանակաւ էր ազգիս մերոյ թագաւորութիւն, վկայէ և Երեմիա մարգարէ 'ի բանս իւր, հրաւիրելով ընդդէմ Բաբելոնի 'ի պատերազմ. Հրամանն տուր, ասէ, այրարատեան թագաւորութեանն և աքանազեան գնդին: Եւ այս հաւաստի գոլոյ մերոյ թագաւորութեանն առ

été consignés dans les annales et registres de ses historiographes. Or, nos princes n'ayant pas pensé à de telles mesures, il n'est resté de consigné que les faits arrivés dans les derniers temps. Si l'on dit: où avons-nous trouvé ainsi les noms, les faits et gestes de beaucoup de nos ancêtres? je dirai: dans les anciennes archives des Chaldéens, des Assyriens, des Perses, à cause de la mention faite dans les papiers des rois, des noms et des faits de nos ancêtres considérés comme officiers administrateurs de notre pays, institués par les rois comme gouverneurs généraux des provinces.

## XXII.

### Suite de nos rois. — Leur nombre de père en fils.

Je vais compter nos grands hommes, surtout nos rois, jusqu'à l'empire des Parthes; car ils me sont chers, ces descendans de notre roi, comme mes compatriotes, mes proches parens, mes frères. Qu'il m'eût été doux, si le Sauveur fût alors venu me racheter, d'entrer dans le monde sous ces rois, de jouir du bonheur de les voir, et d'échapper aux dangers du temps présent! mais cette fortune, ce doux sort a fui loin de nous. Sous le règne des Mèdes, vivaient ces hommes, rois indigènes, dont nous inscrivons ci-dessous les noms.

En ce temps-là existait vraiment le royaume de notre nation, comme le témoigne le prophète Jérémie, en appelant aux armes contre Babylone: « Donne ordre, dit-il, au royaume d'Ararat et à la troupe d'Ascanaz ». Il est donc certain que notre royaume existait en ce

այնու ժամանակաւ : Այլ մեք զկարգն կանոնագծելով , առընթեր և զՄարաց թագաւորսն :

| Մարաց առաջին | Իսկ մեր առաջին՝ ի Վարբակայ պսակեալ |
|---|---|
| Վարբակես . | Պարոյր , որդի Սկայորդւոյ . |
| Մօդակես . | Հրաչեայ . |
| Արտիկես . | Փառնաւաս . |
| Դէովկես . | Պաճոյճ . |
| Փռաւորտիս . | Կոռնակ . |
| Կուաքս . | Փաւոս . |
| Աժդահակ : | Միւս Հայկակ . |
| | Երուանդ սակաւակեաց . |
| | Տիգրան : |

Բայց զի և վերջին Երուանդս և Տիգրան 'ի սոցանէ ըստ յուսոյ կոչեցեալ ասեմ արդեւք . ոչ կարի հեռագոյն գոլով ժամանակին , յիշեցուք զանուանս զայսոսիկ :

Հրաչեայս սա կոչի վասն առաւել պայծառերես և բոցակնագոյն իմն լինելոյ : Որ սովաւ ասեն կեցեալ զՆաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց , որ գերեաց զՀրէայս : Եւ սորա ասեն զմի 'ի գլխաւորաց երբայեցւոցն գերելոց խնդրեալ 'ի Նաբուգոդոնոսորայ՝ Շամբաթ անուն , ածեալ բնակեցոյց մեծաւ պատուով . և 'ի նմանէ ասէ պատմագիրն լինել զազգն Բագրատունի , և հաւաստի է : Բայց թէ որպիսի՞ ջան եղեալ թագաւորացն մերոց՝ զնոսա 'ի պաշտօն կռոցն խոնարհեցուցանել , և կամ թէ քանիք և ոյք ոմանք 'ի սոցանէ՝ որք աստուածպաշտութեամբ վճարեցին զկեանս , յետոյ պատմեսցուք ոճով : Բայց զի ասեն . ոմանց անհաւաստի մարդոց , ըստ յօժարութեան և ոչ ըստ ճշմարտութեան , 'ի Հայկայ զթագաւոր ազգդ լինել Բագրատունեաց : Վասն որոյ ա

temps-là; mais en réglant la succession de nos rois, nous mettrons à côté celle des rois des Mèdes.

| | |
|---|---|
| Premier roi des Mèdes, | Notre premier prince couronné par Varbace fut |
| Varbace, | Barouïr fils de Sgaïorti, |
| Maudaces, | Hratchia, |
| Artysias, | Parnouas, |
| Déjoces, | Badjouïdj, |
| Phraortes, | Gornag, |
| Ciaxares, | Pavos, |
| Astyages. | Un autre Haïgag, |
| | Érouant, qui vécut peu, |
| | Dicran. |

Du nom des deux derniers personnages furent appelés les derniers Érouant et Dicran, sans doute à cause des espérances qu'ils donnaient. Le temps n'est pas fort éloigné, où nous rappellerons leurs noms.

Hratchia (yeux de feu) est ainsi appelé à cause de la vivacité de ses traits, et de l'éclat de ses yeux. Sous lui, dit-on, vivait Nabuchodonosor, roi de Babylone, qui fit les Juifs captifs. On rapporte que Hratchia, lui ayant demandé un de ces principaux captifs hébreux du nom de Champat, le conduisit dans ses états et l'y établit magnifiquement : de Champat, dit l'historien, descend la race Pacradouni; cela est certain. Mais quels durent être les efforts de nos rois pour amener cette famille au culte de leurs dieux, combien et quels furent ceux des Pacradouni qui ont terminé leur vie dans le sein de la religion? c'est ce que nous rapporterons après, avec détail. Quelques hommes indignes de croyance, par pur caprice et non selon la vérité, disent que, de Haïg provient la race des Pacradouni, race qui a

սեմ. մի այսպիսեաց յիմար բանից հաւանիր. զի և ոչ մի շաւիղ կամ ցուցումն գոյ նմանութեան յասացեալդ՝ որ զարդարութիւն ակնարկէ. զի 'ի բայ բանից և անոճ իմն յաղագս Հայկայ և նմանեացն կակազէ: Բայց ծանիր զԱմբատդ անուն, զոր յաճախ բագրատունիք 'ի վերայ պատանեաց կոչէին, ճշմարիտ Շամբաթ է՝ ըստ նախնի իւրեանց խօսիցն, որ է եբրայեցի:

## ԻԳ

Յաղագս որդւոցն Սենեքարիմայ, եթէ արծրունիք և գնունիք և բդեշխն անուանեալ Աղձնեաց՝ 'ի նոցանէ սերեալք. և 'ի նոյն ճառի՝ եթէ Անգեղ տունն 'ի Պաղքամայ:

ԱՐԴ յառաջ քան զձեռնարկելն մեր 'ի բանս՝ որ յաղագս մեծին Տիգրանայ, որ իններորդ 'ի նախնեաց մերոց պսակաւորաց էր, հուժկու, անուանի և յաղթող ընդ այլ աշխարհակալս, ճառեսցուք որ ինչ կարևորագոյնն է ոճոյ բանիս: Նաև 'ի մոռացումն եկն արդեւք յաղագս Սենեքերիմայ. քանզի ութսուն ամօք, աւելի կամ պակաս, յառաջ քան զթագաւորութիւնն Նաբուգոդոնոսորայ էր և Սենեքերիմ կոչեալ արքայ Ասորեստանի, որ զԵրուսաղէմ պաշարեաց առ Եզեկիայիւ Հրէից առաջնորդաւ. զոր սպանեալ որդւոց նորա Ադրամելայ և Սանասարայ, եկին փախստական առ մեզ:

Յորոց զմինն յարևմտից հարաւոյ աշխարհիս մերոյ, մերձ 'ի սահմանս նորին Ասորեստանի, բնակեցուցանէ Սկայորդին մեր քաջ նախնին, այս ինքն զՍանասարն. և 'ի սմանէ սերեալ լցին զՍիմն ասացեալ լեառն: Իսկ պերճքն և գլխաւորքն 'ի նոցանէ յետոյ ուրեմն մտերմութիւն վաստակոց առ թագաւորսն մեր ցուցեալ, բդեշխութիւն կողմանցն արժա-

le privilège de mettre la couronne sur la tête des rois; à cela je dis: ne crois pas de pareils contes, car il n'y a aucune trace de vérité, aucun signe de ressemblance avec elle, dans ce qui t'a été dit, rien qui dénote la vérité; ce sont discours absurdes, incohérens, balbutiés touchant Haïg et ses pareils. Apprends que le nom Sempad, que les Pacradouni donnent souvent à leurs fils, est vraiment Champat, d'après leur langue primitive, qui est l'hébreu.

## XXIII.

Des fils de Sennéchérim. — Les Ardzrouni, les Kenouni, et le prince d'Aghtznik en sont issus. — Montrer dans le même chapitre que la maison Ankegh vient de Baskam.

Avant d'entreprendre l'histoire du grand Dicran, le neuvième de nos ancêtres couronnés, prince vaillant, renommé et victorieux entre tous les conquérans, nous rapporterons ce qu'il y a de plus important à dire. Ce qui concerne Sennéchérim a été mis en oubli. En effet, quatre-vingt ans, plus ou moins, avant le règne de Nabuchodonosor, vivait Sennéchérim, roi d'Assyrie, Sennéchérim qui assiégea Jérusalem sous Ézéchias, prince des Juifs. Ayant tué leur père, les fils de Sennéchérim, Atramèle et Sannassar vinrent se réfugier chez nous.

Quant à l'un d'eux, c'est à dire à Sannassar, notre brave ancêtre Sgaïorti l'établit au sud-ouest de notre pays, près des confins de l'Assyrie. Les descendans de Sannassar ont rempli la montagne appelée Sim. Les premiers, les principaux d'entre eux par la suite ayant signalé leur dévoûment envers nos rois, furent jugés dignes d'obtenir la principauté de ces contrées. Ar-

նաւորեցան առնուլ։ Իսկ Արգամոզանն յարևելից հարաւոյ նորին կողմանն բնակեալ, 'ի սմանէ ասէ պատմագիրն լինել զարծրունիս և զգնունիս։ Արդ յիշելոյն մեր զՍենեքերիմ այս էր պատճառն։

Բայց զՍնգեղտուանն ասէ նոյն պատմագիր 'ի Վասքամայ ումեմնէ 'ի Հայկակայ թոռնէ լինել։

## ԻԳ

### Յաղագս Տիգրանայ, թէ որպիսի ամենայնիւ։

ԲԱՅՑ անցցուք այսուհետև և որ ինչ յաղագս Տիգրանայ, և որ 'ի նմանէ գործք։ Քանզի սա ամենեցունց թագաւորացն մերոց հզօրագոյն և խոհեմագոյն, և արանցն այնոցիկ և ամենեցուն քաջ։ Որ և Կիւրոսի աջակցեալ, զՄարացն 'ի բաց բառնալով զիշխանութիւնն. և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրև նուաճեալ հնազանդէր։ Սա զսահմանս մերոյ բնակութեանս ընդարձակեալ 'ի հինն մեր հաստուցանէ յեզերս ծայրից բնակութեանց։ Եւ ամենեցունց՝ որ առ իւրովքն էին ժամանակօք՝ նախանձելի, և յետնոցս ըղձալի ինքն և ժամանակ իւր։

Զի՞ ոք 'ի ճշմարիտ արանց, և որոց 'ի բարս արութեան և խոհականութեան սիրելութիւն կայցէ, սորա յիշատակօքն ոչ զուարճասցի, և յորդորեսցի այսպիսի այր լինել։ Արանց կացեալ գլուխ, և արութիւն ցուցեալ, զազգս մեր բարձրացոյց. և զընդ լծով կացեալսն՝ լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց. մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէս պէս գունոց և անգուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց. որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազնացեալք։ Հետևակամարտքն

kamozan se fixa au sud-est du pays; de lui, dit l'historien, descendent les Ardzrouni et les Kenouni. C'était pour nous une raison de rappeler Sennéchérim.

La maison Ankegh, dit le même historien, est issue d'un certain Baskam, petit-fils de Haïgag.

## XXIV.

### De Dicran, tel qu'il fut en tout.

Passons à présent à ce qui regarde Dicran, à ses faits et gestes. C'est de tous nos rois le plus puissant, le plus sage, le plus brave de ces princes, et même de tous les guerriers. Il aida Cyrus à renverser l'empire des Mèdes, retint longtemps les Grecs sous son obéissance, étendit notre territoire jusqu'à nos anciennes limites. Objet d'envie pour tous ses contemporains, il fut aussi, lui et son siècle, enviés de la postérité.

Quel est celui des vrais guerriers, des hommes chez lesquels se trouve l'amour de la valeur et de la sagesse, qui ne tressaille au souvenir de Dicran, qui ne s'excite à devenir un si grand homme? Chef et modèle des guerriers, signalant partout son courage, il éleva bien haut notre nation. Elle était courbée sous le joug, et il la mit en état d'imposer son joug, tribut à plusieurs nations. Partout des monceaux d'or, d'argent, de pierres précieuses, d'habillemens de toute couleur, de toute façon, pour hommes, pour femmes; la laideur comme la beauté paraissait merveilleuse, et la beauté, selon l'esprit du temps, était déifiée. On

'ի վերայ ուսոց ձիոց բերեալք, և պարսաւորքն առ հասարակ դիպաղեղունք, և շերտաւորքն 'ի սուսեր և 'ի տէգ նիզակի վառեալք. մերկքն վահանօք և զգեստիւք երկաթոյ պարածածկեալք: Որոց 'ի մի վայր հասելոց բաւական էր տեսիլն միայն, և որ 'ի նոցայցն պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք, զթշնամիսն արտահալածել: Խաղաղութեան և շինութեան բերող, խաղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ:

Զայս, և որ այլ այսպիսիք բազումք, եբեր մերոյ աշխարհիս խարտեաշս այս և աղեբեկ ծայրիւ հերաց երուանդեանս Տիգրան, երեսօք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոյգաբարձն և գեղեցկոտն, պարկեշտն 'ի կերակուրս և յըմպելիս, և 'ի խրախճանութիւնս օրինաւոր. զորմէ ասէին 'ի հինսն մեր, որք բամբռամբն երգէին, լինել սմա և 'ի ցանկութիւնս մարմնոյն չափաւոր. մեծիմաստն և պերճաբան, և յամենայն որ ինչ մարդկութեան պիտանի: Եւ զի՞նչ ինձ 'ի գիրս յայս արդեւք իցէ բան սիրելի, քան թէ որ յաղագս սորա էին գովեստք և պատմութիւնք յերկարել: Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի, զամենայն ուրուք կենցաղ մտացն լծակաւ կշռէր: Ոչ ընդ լաւագոյնսն նախանձայր, և ոչ զնուաստսն արհամարհէր, այլ ամենեցուն հասարակաց հնարէր զխնամոցն իւրոց 'ի վերայ տարածել զգեստս:

Սա նախ յառաջագոյն դաշնաւոր եղեալ Աժդահակայ, որ 'ի Մարաց էր, տայ նմա զքոյր իւր Տիգրանուհի կնութեան, ըղձիւք խնդրելով զնա Աժդահակայ: Քանզի ասէր, կամ 'ի ձեռն այսպիսւոյ մերձաւորութեան սէր հաստատուն առ Տիգրան ունել, կամ դիւրաւ այսպէս դաւաճանել զնա 'ի սպանումն:

voyait les fantassins portés sur des chevaux, les frondeurs devenus archers, les hommes auparavant armés de pieux manier le glaive et la lance, les gens autrefois sans armes couverts de boucliers, d'armures de fer. La vue seule des soldats rassemblés, le feu, l'éclat qui jaillissait de leurs armures et de leurs armes, suffisait pour mettre l'ennemi en fuite. Dicran apporte la paix, multiplie les constructions, féconde tout le pays par des flots d'huile et de miel.

Tels sont les bienfaits et beaucoup d'autres encore qu'apporta Dicran à notre pays, Dicran fils d'Érouant, prince aux cheveux blonds et argentés par le bout, au teint coloré, aux yeux gris, aux membres robustes, aux larges épaules, aux jambes alertes, au pied bien fait, toujours sobre dans le boire et dans le manger, réglé dans les plaisirs. On disait de lui chez nos anciens qui chantaient au son des cymbales, qu'il était prudent, mesuré dans les désirs de la chair, plein de sagesse, éloquent, utile en tout ce qui est de l'humanité. Quoi de plus agréable pour moi, que de prolonger des récits qui à son égard sont des éloges et des vérités historiques? Toujours juste en ses jugemens, dans des balances égales pour tous, il pesait avec impartialité la conduite de chacun. Il ne portait point envie aux grands, ne méprisait pas les petits, mais il ne cherchait qu'à étendre sur tous le manteau de ses soins paternels.

Dicran déjà antérieurement lié par les traités avec Astyage, roi des Mèdes, lui donne en mariage sa sœur Dicranouhi, qu'Astyage recherchait avec empressement. Car, se disait le prince mède, au moyen de cette alliance, j'aurai pour Dicran un véritable attachement, ou je lui tendrai avec toute facilité des embûches pour le faire périr. Pour lui il était un nouveau sujet de

Զի էր նմա խէթ կամաց իւրոց, մարգարէութիւն իմն յոչ կամաց լեալ նմա առաջիկայ դիպուածն իւր։

## ԻԵ

Վասն երկիւղի կասկածանացն Աժդահակայ 'ի միաբանութենէ սիրոյ Կիւրոսի և Տիգրանայ։

ԲԱՑՑ էր նիւթ այսպիսւոյ խռովականութեան դաշնաւորութիւն միաբանութեանն՝ որ 'ի Կիւրոսէ առ Տիգրան. յորմէ բազում անգամ և ախտ քնոյ 'ի բաց փախուցեալ լինէր յԱժդահակայ յիշատակաւս այսուիկ. և խորհրդակցաց իւրոց անդուլ առնէր զհարցուածս, վասն այսպիսւոյ պատճառի. Որպիսի հնարիւք լուծանել կարասցուք, ասէ, զկապ սիրոյ պարսկայնոյն և հայկազինն բազմաբիւրաւորի։ Իսկ յայսպիսի շփոթման խորհրդոց հասանէ նմա առաջիկայիցն յայտնութիւն 'ի ձեռն անրջականաց իմն նախատեսութեանց, օրինակաւս այսուիկ որ պատմին։

## ԻԶ

Թէ որպէս 'ի խիթի լինելով Աժդահակայ, զառաջակայ իւր դիպուածն տեսանէ սքանչելի երազով։

ԻՍԿ, ասէ, յաւուրսն յայնս ոչ սակաւ ինչ վտանգ՝ որ 'ի Մարացն Աժդահակայ, 'ի միաբանութենէ Կիւրոսի և Տիգրանայ։ Վասն որոյ և 'ի սաստկութենէ ծփանաց խորհրդոցն լինել նմա 'ի տեսլենէ երազոյն երևութանալ 'ի քուն գիշերոյ, զոր ոչ երբէք յարթնութեան ետես աչօք, և ոչ 'ի լուր ականջաց լուաւ։ Աստի և ընդոստ 'ի քնոյն լինելով, ոչ յամէ ըստ սովորութեան կարգին 'ի ժամ խորհրդականութեանն. այլ այն ինչ գիշերոյն ժամս ունելով ոչ սակաւս, ձայ-

haine ; c'était prophétie indépendante de sa volonté, l'événement présent qui lui était arrivé.

## XXV.

**Crainte et soupçons d'Astyage, nés à la vue de l'étroite amitié de Cyrus et de Dicran.**

La première cause de ces pensées était l'alliance, l'amitié de Cyrus pour Dicran. Aussi souvent le sommeil fuyait loin d'Astyage, il y avait pour lui insomnie produite par l'effet de ces souvenirs. Astyage faisait sans cesse là-dessus des questions à ses conseillers : Par quels moyens pourrons-nous, disait-il, rompre les liens d'amitié entre le Perse et le fils de Haïg, dont les gens sont si nombreux ? Au milieu du trouble de ces pensées se présente à lui le tableau explicatif de sa position, dans les prévisions d'un songe qu'il raconte ainsi.

## XXVI.

**Comment déjà la haine dans le cœur, Astyage voit-il sa destinée présente au moyen d'un songe merveilleux ?**

Il y avait alors, dit l'historien, un grand danger pour le mède Astyage, résultant de l'union de Cyrus et de Dicran. C'est pourquoi, de l'agitation, de l'effervescence de ses pensées lui vint dans le sommeil de la nuit, une apparition, un songe, où il vit ce qu'en état de veille il n'avais jamais vu, ni entendu. Il se réveille en sursaut : sans attendre, selon la coutume établie, l'heure du conseil, car il y avait encore bien des heures de nuit, il appelle ses conseillers ; le visage triste,

նէ զխորհրդակիցսն . և տրտում երեսօք յերկիր հայելով 'ի խորոց սրտին մինչէ յոգւոց հանութեամբ : Եւ 'ի զվաման էրն 'ի խորհրդակցացն հարցանիլ՝ յերկարէ ժամս ինչ զպատասխանիսն . և ուր ուրեմն հեծութեամբ սկիզբն արարեալ յայտնէ զամենայն , որ 'ի ծածուկ սրտին խորհուրդ և կասկած , ընդ նմին և զիրս աչագին տեսլեանն :

Որ ինձ , ասէ , ով սիրելիք , լինել այսօր յերկրի անծանօթում, մերձ 'ի լեառն մի երկար յերկրէ բարձրութեամբ , որոյ գագաթն սաստկութեամբ սառնամանեաց թուէր պատեալ . և ասէին գոգցես յերկրին հայկազանց զայս լինել : Եւ 'ի նայել ինձ յերկարագոյն 'ի լեառնն , կին ոմն ծիրանազգեստ՝ երկնագոյն ունելով զիւրեաւ տեռ , նստեալ երևեցաւ 'ի ծայրի այսպիսւոյ բարձրութեան , աչեղ , բարձրահասակ և կարմրայտ , երկանց ըմբռնեալ ցաւով : Եւ յերկարագոյն նայելն իմ յայսպիսի երևումն և 'ի հիացման լինել , ծնաւ կինն յանկարծ երիս կատարեալս 'ի դիւցազանց հասակաւ և բնութեամբ : Առաջինն զերանան ածեալ 'ի վերայ առիւծու՝ սլանայր յարևմուտս , և երկրորդն 'ի վերայ ընծու՝ 'ի հիւսիսի հայելով . իսկ երրորդն զվիշապն անարի սանձեալ , 'ի մերոյս վերայ շահատակեալ յարձակէր տէրութեանս :

Եւ 'ի մէջ այսպիսեաց խառն երազոց , թուէր ինձ կալ 'ի վերայ տանեաց իմոց արքունեացս , և զնոյն ինքն վերին երեսս յարկացս տեսանել գեղեցիկ և բազմագոյն շատրուանօք զարդարեալ , և զպսակողսն զմեզ զդիսն մեր հրաշատեսիկ տեսլեամբ 'ի վերայ կացեալ . և զիս ձեւք հանդերձ զնոսա պատուեալ զոհիւք և խնկովք : Եւ յանկարծ 'ի վեր նայեցեալ , զայն որ 'ի վերայ վիշապին հեծեալ կայր , արծուանմանս սլացեալ թևօք տեսի յարձակեալ . որ մօտ հասեալ՝ խորհէր կործանել զդիսն : Իսկ ես Աժդահակ խտրոց ընդմէջ անկեալ , և յիս զայնպիսի եղեալ յարձակմանն

les yeux fixés vers la terre, il gémit du fond de son cœur, il soupire. Pourquoi cette douleur? demandent ses conseillers. Astyage reste plusieurs heures, sans répondre; enfin, commençant avec grande peine, il découvre toutes les pensées secrètes, les soupçons de son cœur, et de plus les détails de cette horrible vision.

Il arriva, dit-il, ô mes amis, que j'étais aujourd'hui sur une terre inconnue, près d'une haute montagne dont le sommet paraissait enveloppé de glaces et de frimats; on disait que c'était le pays des fils de Haïg: je regarde au loin vers la montagne. Une femme vêtue de pourpre, enveloppée d'un voile bleu de ciel, m'apparut, assise au plus haut de la montagne. Elle avait de beaux yeux, une taille élevée, un teint vermeil, elle était dans les douleurs de l'enfantement. Comme je continuais à regarder cet étonnant spectacle, cette femme accoucha tout à coup de trois héros accomplis pour la taille, pour la force. Le premier, porté sur un lion, prit son essor en occident; le second sur un léopard, s'élança vers le nord; le troisième sur un énorme dragon, vint fondre, se ruer sur notre empire.

Au milieu de ces songes confus, il me semblait être debout sur le toit de mon palais, en voir le comble orné d'une foule de superbes tentes; nos dieux, à qui nous devons notre couronne, là présens dans toute leur majesté, et moi avec vous, leur offrant des sacrifices et de l'encens. Tout à coup levant les yeux, je vis le héros qui était monté sur le dragon, prendre son essor avec des ailes d'aigle; il croyait venir exterminer nos dieux; mais, moi Astyage, me jetant en travers, je soutins le redoutable choc, et je combattis avec le héros merveilleux. D'abord nous nous perçâmes l'un l'autre à coups de lance

ընկալեալ, մարտ ընդ սքանչելեացն առնելով դիւցազանն ։ Եւ նախ 'ի տեղ նիզակաց զմարմինս երկաքանչիւրոցս յօշելով, վտակս արեան 'ի վայր հոսեցուցաք, և զարեգականատես երեսս ապարանիցս՝ արեան հոսեալ ցուցաք ծով ։ Նոյնպէս և զկնի այլովք զինուք ժամս ոչ սակաւս ։

Բայց զի՞նչ օգուտ ինձ և խօսից երկարութիւն․ զի վախճան գործոյն՝ իմն էր կործանումն․ ուստի և 'ի քրտանց սաստիկ վտանգի եղեալ, փախեաւ յինէն քունն․ և այսուհետև ոչ թուիմ կենդանի ։ Զի ոչ այլ ինչ նշանակէ երևութիցս շարժումն, եթէ ոչ որ 'ի հայկազնեանն Տիգրանայ հասանելոց է մեզ բռնութեան յարձակումն ։ Բայց ո՞վ արդեւք, յետ աստուածոցն օգնականութեան, բանիւ և գործով մեզ յօգուտ խորհելով, ոչ զինքն կարծիցէ թագաւորակից մեր լինել ։

Եւ բազում ինչ 'ի խորհրդակցացն լուեալ օգտութեան մտածութիւն, շնորհակալութեամբ պատուէ զնոսա ։

## ԻԵ

Ցաղագս որ 'ի խորհրդակցացն բանն․ զկնի ապա և խոր որ ինչ մտածութիւն, և 'ի նոյն հետայն գործն ։

ԲԱԶՈՒՄ ինչ հանճարով և իմաստութեամբ 'ի ձէնջ լուեալ, ասէ, ով սիրելիք, ասացից և որ ինչ իմ յետ աստուածոցն օգնականութեան յայտնի օգտակար բան և մտածութիւն ։ Քանզի ոչ ինչ առ թշնամեացն զգուշութիւն՝ վեհագոյն բերէ օգնականութիւն, և ծանօթութիւն նոցայցն առաջի արկելոցն գործոց, քան թէ որ 'ի ձեռն սիրոյն զգացելն ոք խորհիցի ։ Եւ զայս դարձեալ ոչ 'ի ձեռն զանձուց, և ոչ 'ի ձեռն բանից պատրողաց այժմ առ մեզ հնարա

nous répandîmes des ruisseaux de sang. De la surface du palais, tout éclairée des rayons du soleil, nous fîmes une mer de sang. Ainsi continuant avec d'autres armes, nous combattîmes des heures entières ».

« Mais à quoi bon prolonger ce récit, puisque la fin de tout, était ma ruine? Une sueur violente produite par l'impression du danger me saisit, le sommeil s'enfuit loin de moi, et depuis ce jour, je ne suis presque plus au nombre des vivans. Car que signifie le tableau mouvant de ces visions, si ce n'est que de la part de Dicran, le fils de Haïg, il doit nous arriver violence et invasion? Mais quel homme, après le secours de nos dieux, nous venant en aide, par ses conseils et ses actions, ne croirait pas partager le trône avec nous? »

Astyage après avoir écouté de la bouche de ses conseillers plusieurs sages et utiles avis, les honore de remercîmens.

## XXVII.

**Des opinions émises par les conseillers d'Astyage, puis ses propres réflexions, et projets : leur exécution immédiate.**

« Après avoir entendu de vous bien des avis sages et ingénieux, ô mes amis, je dirai, moi ce qui, en fait de conseils, de réflexions, après le secours des dieux, me parait utile ici: il n'est pas contre un ennemi, rien de plus utile, voire même la connaisance de ses projets, que la présence d'une personne qui, au moyen de l'amitié, lui dresse des embûches. Ce n'est ni avec des trésors ni avec des paroles trompeuses que nous pouvons exécuter nos ruses; ce n'est qu'en agissant

ւորութիւն է կատարել, եթէ ոչ որպէս կամք են ինձ այժմ գործել ։ Այս այն է նիւթ կատարման խորհրդոյս և հնարք որոգայթից, գեղեցիկն 'ի կանայս և խոհեմ, քոյր նորա Տիգրանուհի ։ Զի այսպիսի իսկ արտաքուստ և եկամուտ հարազատութիւնք համարձակ զգաւեն 'ի ձեռն երթևեկութեան անյայտաբար ընդարձակ մարթացուցանեն վարժել . կամ յանկարծօրէն իւրոց մտերմաց, ընչիւք և խոստմամբ պատուոց, տալ հրաման սրով խողխողել և կամ դեղոց հնարիւք, և կամ զմտերիմն նորա և զկուսակալս գանձիւք 'ի նմանէ 'ի բաց մերկանալ . և այսպէս իբրև զանզօր տղայ 'ի բուռն առցուք ։

Այս ազդօղ համարեալ բարեկամացն զայսպիսի խորհուրդ, նիւթեն և զգործն . 'ի ձեռն միոյ որումն 'ի խորհրդակցացն տուեալ բազմութիւն գանձուց, և 'ի ձեռն թղթոյ օրինակաւս այսուիկ յուղարկէ ։

ԻԲ

Թուղթ Աշդահակայ . յետ որոյ և յօժարութիւն Տիգրանայ, և յուղարկումն Տիգրանուհեայ 'ի Մարս ։

ՊԻՏԷ սիրելի եղբայրութիւնդ քո, ոչ ինչ օգտակարագոյն 'ի կեանս աշխարհիս 'ի դիցն մեզ պարգևեալ քան զսիրելեաց բազմութիւն, և այս՝ իմաստնոց արդեւք և հզօրագունից . զի այսպէս և արտաքուստ ոչ 'ի վերայ համարձակին խռովութիւնք, և եկեալքն վաղվաղակի հերքին . իսկ 'ի ներքս ոչ զմուտս յումեքէ գտեալ այսպիսւոյ չարութեան, հալածեալ լինին ։ Արդ զայսպիսի շահ օգտութեան, որ 'ի բարեկամութենէ լինի, տեսանելով, խորհեցայ ես հաստատուն և խորագոյն զսէրն՝ որ է 'ի մէջ մեր՝ հաստատել . զի երկոքեանս յամենայն կողմանց ամրացեալք ողջ և անշարժ զտէրութիւն մեր կալցուք ։

comme je veux. Quels sont ces moyens d'exécution? des piéges; qui doit les tendre, ces piéges? la sœur de Dicran, la belle et prudente Dicranouhi; car de tels rapports de parenté, à l'étranger comme ici, lui donnent toute facilité pour pratiquer, sans être découverte, des ménées insidieuses au moyen d'allées et venues, ou bien à l'improviste et à force de trésors, de promesses, pour engager quelqu'un des amis de Dicran à le poignarder, à l'empoisonner; ou pour séduire au moyen de l'or, détacher de lui ses partisans, les gouverneurs de provinces. Ainsi comme d'un faible enfant, nous nous saisirons de Dicran ».

Les amis d'Astyage regardant ce projet comme efficace, en machinent l'exécution. Astyage envoie un de ses conseillers près de Dicran avec de nombreux présens et une lettre ainsi conçue.

## XXVIII.

Lettre d'Astyage. — Puis, dispositions favorables de Dicran. — Envoi de Dicranouhi en Médie.

« Mon bien aimé frère le sait : Rien ne nous a été donné par les dieux, de plus utile dans cette vie, qu'un grand nombre d'amis, j'entends, d'amis sages et puissans : car ainsi du dehors il ne vient point de troubles fondre sur nous, en dedans aucune perfidie ne peut trouver entrée : toute perturbation est chassée, prévenue. Or, en voyant tout l'avantage qui résulte de l'amitié, j'ai songé à rendre stable et profonde celle qui est entre nous. Ainsi fortifiés de tous côtés, nous maintiendrons notre empire ferme et inébranlable. Tout cela, tu peux le faire, en me donnant la fille de la noble Arménie, ta sœur Dicranouhi, en mariage. Plaise

Եւ այս լինի 'ի տալն քում զօրիորդն Հայոց մեծաց՝ զքոյր քո Տիգրանուհի՝ ինձ կնութեան. թէ արդեւք և բարի համարեսցիս դմա, զի թագուհեաց թա-գուհի լիցի: Ողջ լեր թագակից մեր և սիրելի եղբայր:

Եւ առանց յերկարելոյ զբանս ասացից: Դեսպան ա-ռաքեալն և կատարէ յաղագս օրիորդին գեղեցկի. զի յանձն առեալ Տիգրանայ, տայ զքոյր իւր Տիգ-րանուհի Աժդահակայ կնութեան: Եւ ես գիտելով զառ 'ի նմանէ դաւաճանութիւն, յուղարկէ զքոյր իւր որպէս օրէն է թագաւորաց: Զոր առեալ Աժ-դահակայ, ոչ միայն վասն նենգին՝ որ 'ի սրտին իւ-րում, այլ վասն գեղեցկութեանն, առաջին կարգէ կանանց իւրոց, և զչարութիւնն 'ի ներքոյ ոստայն հինու:

ԻԹ

Եթէ որպէս յայտնեցաւ նենգութիւնն, և գրգռեցաւ մարտն. յորում և մահն Աժդահակայ:

Զկնի այսորիկ ասէ, թէ 'ի հաստատել Աժդա-հակայ զՏիգրանուհի 'ի տիկնութիւն, ոչ ինչ ա-ռանց կամաց նորա 'ի թագաւորութեանն իւրում գործէր. այլ բերանով նորա կարգէր զամենայն, և հրամանի նորա ամենեցուն հնազանդ լինել հրա-մայէր: Եւ յօրինեալ զայս այսպէս, սկսանի մեղմով մատուցանել նմա պատրանս. Եւ գիտես, ասէ, եթէ եղբայր քո Տիգրան խանդացաւ զտիկնութիւնդ քո 'ի վերայ Մարաց, 'ի կնոջէ իւրմէ 'ի Զարուհեայ գրգռեալ: Եւ զի՞նչ լինիցի այն, եթէ ոչ նախ ինձ մեռանել, և ապա լինել զԶարուհի 'ի վերայ Մա-րաց, և զաստուածուհեաց ունել զտեղի: Բայց արդ ընտրելի է քեզ այժմ զմի յայսցանէ. կամ լինել եղբայ-

aux dieux que tu regardes ce parti avantageux pour ta sœur; afin que Dicranouhi devienne la reine des reines! Porte-toi bien, notre bien aimé frère ».

Sans prolonger ce récit, je dirai: l'envoyé arrive et mène à bien la négociation au sujet de la belle et jeune princesse; car Dicran consent à donner sa sœur Dicranouhi en mariage à Astyage: ne sachant rien des ruses tramées par le prince mède, Dicran envoie sa sœur, comme c'est la coutume des rois. Astyage ayant reçu la princesse, non seulement pour le succès des ruses qu'il médite en son cœur, mais aussi à cause de la beauté de Dicranouhi, la fait la première de ses femmes, mais en dedans de lui il trame ses perfides projets.

## XXIX.

### Comment fut découverte la perfidie d'Astyage, et s'engagea le combat dans lequel périt ce prince ?

Après ces faits, dit l'historien, Astyage, établissant Dicranouhi en possession de sa qualité de reine, ne faisait rien dans le royaume sans sa volonté; il réglait tout par elle, et donnait ordre à tous de lui être soumis. Les choses ainsi disposées, il commence doucement à lui insinuer ses paroles trompeuses: « Tu ne sais pas, dit-il, que ton frère Dicran, excité par sa femme Zarouhi, est jaloux de te voir commander aux Arik. Qu'arrivera-t-il? Il arrivera d'abord que je mourrai, et qu'ensuite Zarouhi règnera sur les Arik, et occupera la place des déesses. Ainsi donc, il te faut choisir à présent l'une de ces deux alternatives: ou, par amour pour ton frère, d'accepter aux yeux des Arik,

րասէր և կործանումն խայտառակելի յանդիման Ա-րեացյանձն առնուլ, և կամ զանձին իմանալով զբարի՝ խորհուրդ օգտակար ՚ի մէջ բերել և յաղագս առաջիկայից հոգալ։

Բայց էր ՚ի մէջ այսպիսւոյ խորամանկութեան թագուցեալ և զմեռանելն Տիգրանուհեայ, եթէ ոչ ինչ ըստ կամաց խորհեսցի մարապարսացւոյն։ Այլ իմացեալ խորագիտոյ գեղեցկին զայսպիսի դաւաճանութիւն, պատասխանի առնէ սիրոյ բանս Աժդահակայ. և արագագոյն ՚ի ձեռն մտերմաց պատմէ եղբօրն զնենգութիւնն։

Եւ ձեռնարկէ այնուհետև ՚ի գործն ՚ի ձեռն պատգամաւորութեան, դառնոցա ՚ի միաբանութիւն տեսութեան, ՚ի տեղի միջոց սահմանաց երկոցունց թագաւորութեանց. իբր բան ինչ և գործ հարկաւոր հասեալ, որ ՚ի ձեռն գրոյ և հրեշտակութեան կատարել ոչ է կարողութիւն, եթէ ոչ և դէմք երկոցունցն հանդէպ լինիցին։ Այլ գիտելով Տիգրանայ զառաքելոյ իրին կատարումն, ոչ ինչ յորոց խորհէրն Աժդահակ՝ ծածկէր. այլ ՚ի ձեռն գրոյ յայտնէ որ ինչ ՚ի նորայն խորութեան սրտին։ Եւ ՚ի յայտնել այսպիսւոյ չարութեանն՝ ոչ ինչ այնուհետև էր բան և խորամանկութիւն, որ զայսպիսիս առագաստէր զչարութիւն. այլ յայտնի այնուհետև գրգռէր խազմն։

Եւ ժողովէ արքայն Հայոց ՚ի սահմանացն կապադովկացւոց, և որչափ ընտիրք Վրաց և Աղուանից աշխարհին, և զամենայն ընտիրս Հայոց մեծաց և փոքունց։ Եւ խաղայ ամենայն զօրութեամբ իւրով ընդ կողմամբք Մեդացւոց։ Վտանգ հասանէ այնուհետև Աժդահակայ պատահել պատերազմաւ հայկազնին՝ ոչ փոքր ինչ ամբոխիւ։ Եւ երկայնէր հակառակութիւնն մինչև ցամիսս հինգ. քանզի հիւանդանայր գործն արագ և առողջ, յորժամ զմտաւ ածէր Տիգրան յաղագս քեռն իւրոյ սիրելւոյ։ Եւ այսպէս զեր

la ruine et l'infamie, ou bien consultant ton propre intérêt, de proposer quelqu'utile projet, et pourvoir ainsi aux conjonctures présentes ».

Mais au milieu de ces détours perfides, se cachait le projet de faire périr Dicranouhi, si elle ne pensait pas selon la volonté du Médo-perse. La prudente et belle princesse, devinant l'artifice, fait une réponse pleine de tendresse à Astyage : mais aussitôt, par l'entremise de ses confidens, elle fait connaître à son frère, les perfides ruses d'Astyage.

Le fourbe, dès ce moment, se met à l'œuvre : il tâche par la voie des messages, de déterminer une entrevue entre Dicran et lui, aux frontières des deux royaumes, sous prétexte d'une affaire importante qu'il est impossible de traiter, de conclure par écrit ou par la voie des ambassades, si les deux souverains ne sont en présence l'un de l'autre. Dicran, qui savait par l'envoyé le but proposé, ne cacha rien de ce que pensait Astyage, mais il lui déclara par lettre, connaître toute la perfidie de son cœur; cette perfidie une fois découverte, dès lors il n'y avait plus ni paroles, ni fourberies qui pussent pallier tant de noirceur, dès lors une collision se préparait évidemment.

Le roi d'Arménie rassemble des frontières de la Cappadoce, de l'Ibérie et de l'Aghouank, des troupes d'élite ainsi que toutes celles de la grande et de la petite Arménie. Il marche avec toutes ses forces contre le pays des Mèdes. Le danger arrive dès ce moment pour Astyage, d'avoir à se mesurer avec le fils de Haïg, ce qu'il ne peut faire sans une immense armée. Mais la lutte traina en longueur cinq mois entiers ; car la vivacité, l'ardeur de l'action se ralentissait lorsque Dicran réfléchissait sur le sort de sa sœur bien aimée;

իրացն հնարէր յարդարել, զի ապրելոյ ճար լիցի Տիգրանուհեայ։ Ի պատահման այսորիկ և ժամ մարտին մերձենայ։

Բայց զովեմ զքաջահասակն զիմ և զնիզակաւորն և զամենեւին բոլոր անդամովք համեմատն և 'ի գեղեցկութիւն աւարտեալ հասակի. քանզի առոյգ ամենայնիւ ըստ իրերարս պատշաճեալ, և ուժով ոչ զոք իւր ունելով զոյգ։ Այլ զի՞ երկայնեմ զբանս. քանզի 'ի լինել պատերազմին, նիզակաւ որպէս զջուր հերձեալ զերկաթի ամուր հանդերձն, շամփրէ զԱժդահակ յընդարձակ տէգ նիզակին, և յամփոփել միւսանգամ զձեռն՝ արտաքս զկէս մասն թոքիցն հանդերձ զինուն 'ի դուրս բերէ։ Բայց մարտն էր սքանչելի. զի քաջք դիպեալ քաջաց, ոչ վաղվաղակի թիկունս 'ի միմեանց դարձուցանէին. վասն որոյ յերկարեալ քարշէր գործ պատերազմին ժամս ձիգս։ Իսկ փախճան գործոյն առնէր մահն Աժդահակայ. և այսպիսի դիպուածս 'ի բարեբախտութիւն յաւելեալ, յաճախէր փառս Տիգրանայ։

## Լ

Ցաղագս թէ էր աղագաւ յղարկեաց զքոյր իւր Տիգրանուհի 'ի Տիգրանակերտ. և վասն Անուշայ, առաջին կնոջն Աժդահակայ, և բնակութեան գերւոյն։

ՊԱՏՄԻ և այս, թէ զկնի այսպիսի իրաց կատարման՝ յուղարկէ թագաւորապէս զքոյր իւր Տիգրանուհի մեծ ամբոխիւ 'ի Հայս, յաւանն՝ զոր շինեաց իւրով անուամբ Տիգրան, որ է Տիգրանակերտ, և զգաւառսն զայնոսիկ 'ի ծառայութիւն նմա հրամայէ։ Այլ զոստանն անուանեալ կողմանցն այնոցիկ ազատութիւն՝ 'ի զարմից սորա ասէ լեալս իբր թագաւորական զարմն։

Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աժդահակայ, և զբա

ainsi, il cherchait à combiner l'issue des choses de manière à sauver les jours de Dicranouhi : cependant l'heure du combat approche.

Je ne puis trop louer mon cher Dicran, sa taille majestueuse, son adresse à manier la lance, la belle proportion de ses membres, la beauté parfaite de sa personne ; car agile, en tout bien conformé, il n'avait point d'égal en force, en courage. Pourquoi prolonger ce récit? Le combat engagé, le héros d'un coup de lance, fendant l'épaisse armure de fer d'Astyage, comme une lame d'eau, le perce avec le fer de sa longue lance ; puis retirant la main en arrière, il amène avec l'arme meurtrière la moitié des poumons d'Astyage. Le combat était merveilleux ; car c'était des braves contre des braves, qui ne se tournaient pas promptement le dos les uns aux autres ; aussi l'action se prolongea-t-elle plusieurs heures ; mais ce qui mit fin au combat, fut la mort d'Astyage. Cet exploit ajouté à tous les succès de Dicran, augmenta sa gloire.

## XXX.

**Pour quelle raison Dicran envoya-t-il sa sœur Dicranouhi à Dicranaguerd.—Anouïch, première femme d'Astyage.—De l'habitation assignée aux captifs.**

On rapporte aussi qu'après l'issue glorieuse de cet événement, Dicran, d'une manière toute royale, envoie sa sœur Dicranouhi avec une puissante escorte en Arménie, au bourg qu'il appelle de son nom, Dicranaguerd ; il ordonne à tout le canton d'obéir à la princesse. Dans ces contrées, la noble famille, nommée Osdan, dit l'historien, descend de la race de Dicranouhi, comme race royale.

Quant à Anouïch, la première des femmes d'Astyage,

զումս 'ի սերմանէ Աշդահակայ աղջկունս՝ հանդերձ պատանեկօք և այլ բազում գերեօք, որչափ Թէ աւելի քան զբեւր մի, բնակեցուցանէ յարևելեայ ուսոց Մեծի լերինն՝ մինչև 'ի սահմանս Գողթանն, որ են Տամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնք, և որ այլք առեզերբ գետոյն դաստակերտք, յորոց միննն է Վրանջունիք, մինչև հանդէպ ամրոցին Նախջաւանու. և զերիս աւանսն զԽրամ և զՋուղայ և զԽոշակունիս։ Իսկ 'ի միւս կողմանէ գետոյն զբոլոր դաշտն, որոյ գլուխն Աժդանական, մինչև ցնոյն ինքն ամուրն Նախճաւանոյ։ Բայց զնախասացեալ կինն Անոյշ բնակեցուցանէ որդւովքն իւրովք յանդորրութեան սպառուածի փլածի Մեծի լերինն, զորմէ լեալ ասեն յահագին իմն շարժմանէ. զոր պատմեն՝ ոչք բազմաշրջութեամբ հրամանաւ Պտղոմեայ ասպարիսօք զննակութիւն մարդկան չափեցին, այլ մասն ինչ և զծով և զանբնակ 'ի յայրեցածէն մինչև ցԲիմուռն։ Իսկ պաշտօնեայս տայ Անուշայ 'ի նոյն Մարաց, որ առստամբ լերինն բնակեցան։

Յայտնեն զայս ճշմարտապէս և Թուելեացն երգք, զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինաւէտ գաւառին Գողթան. յորս շարին բանք երգոցն զԱրտաշիսէ և զորդւոց նորա, յիշելով այլաբանաբար և զզարմիցն Աշդահակայ՝ վիշապազունս զնոսա կոչելով. զի Աժդահակն 'ի մեր լեզուս է վիշապ։ Այլ և ճաշ ասեն գործել Արգաւանայ 'ի պատիւ Արտաշիսի, և խարդաւանակ լեալ նմին 'ի տաճարին վիշապաց։ Այլ և Արտաւազդայ ոչ գտեալ ասեն, քաջի որդւոյն Արտաշիսի, տեղի ապարանից՝ 'ի հիմնանալն Արտաշատու. նա անց, ասէ, գնաց և շինեաց 'ի մէջ Մարաց զՄարակերտ, որ է 'ի դաշտին՝ որ անուանեալ կոչի Շարուրայ։ Այլ և տենչայ,

ainsi que grand nombre de jeunes princesses ses filles, avec des jeunes garçons et beaucoup d'autres captifs, au nombre de plus de dix mille, il les établit dans le pays situé depuis l'est de la grande montagne jusqu'aux contrées de Koghten, pays qui comprend Dampad, Osguiogh, Tajkouïnk; leur concède aussi sur les bords du fleuve, les autres villages, dont l'un est Vrandchounik, jusqu'en face du fort de Nakhdjavan, les trois bourgs Khram, Dchougha, et Khochagounik; de l'autre côté du fleuve, toute la plaine qui commence à Ajtanagan jusqu'à ce même fort de Nakhdjavan. Mais quant à la princesse susdite elle-même, Anouïch, Dicran l'installe avec ses fils sur un terrain étendu au pied des ruines de la grande montagne, ruines formées, dit-on, par l'effet d'un horrible tremblement de terre, que racontent les voyageurs qui, par l'ordre de Ptolémée, allèrent mesurer non seulment l'habitation des hommes, mais aussi en partie la mer et les pays inhabités, depuis la zône torride jusqu'à Cimmérium. Dicran donne à Anouïch des serviteurs pris parmi ces mêmes Mèdes établis au pied de la montagne.

C'est ce que prouvent bien les chants chroniques, que se sont plu à conserver, comme je le sais, les hommes de la partie vignoble du canton Koghten; il est fait mention dans ces chants d'Ardachès et de ses fils, et d'une manière allégorique, des descendans d'Astyage, sous le nom de descendans du dragon, car Astyage dans notre langue est dragon. On dit aussi qu'Arkavan donna un repas en l'honneur d'Ardachès, et lui dressa des embûches dans le temple des dragons. Ardavazt, le vaillant fils d'Ardachès, n'ayant pas trouvé un emplacement convenable pour son palais, lors de la fondation d'Ardachad, s'en alla batir au milieu des Mares (Mêdes), Maraguerd, situé dans la plaine

*ասեն, Սաթենիկ տիկին տենչանս՝ զարտախուր խաւարտ և զտից խաւարծի 'ի բարձիցն Արգաւանայ:*

*Այս արդ ո՛չ առաւել աստանօր զարմասցիս 'ի վերայ մերոյ ճշմարտապատմութեանս, թէ որպէս յայտնեցաք զանյայտ իրս վիշապաց, որք են յազատն 'ի վեր 'ի Մասիս:*

## ԼԱ

*Թէ ո՛յք ոմանք սորա զաւակք, և ո՛յք 'ի սմանէ որոշեալ ցեղք:*

ՀԱՒԱՍՏԻ *պատմել զբուն և զառաջին Տիգրանն, և որ ինչ 'ի նմանէ գործք, սիրելի՛ որպէս ինձ պատմողիս 'ի մէջ իմոց բանիցս, որ ինչ յաղագս Երուանդեանս Տիգրանայ բանք, եղիցի և քեզ ընթերցողիդ. որպէս այրն և գործք, այսպէս և զնմանէ բանք: Վասն որոյ սիրեմ կոչել այսպէս ըստ քաջութեան, Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ իմ՝ քաջաց ազգք քաջք. իսկ միջոցքն՝ որպէս դէպ ումեք թուիցի կոչել: Բայց ըստ դիւցազնութեանն կարծեաց՝ ճշմարիտ է և ասելս մեր. ոչ Արամազդ ոք, այլ 'ի կամեցողն լինել Արամազդ, չորից ևս այլոց անուանեցելոց Արամազդ. յորոց մի է և Կունդ ոմն Արամազդ: Այսպէս և բազումք անուանեալ Տիգրանք, մի է և միայնակ 'ի հայկազանցս, որ զԱժդահակ սպան, և զտուն նորա 'ի գերութիւն վարեաց, և զԱնոյշ մայրն վիշապաց. օժանդակ կամօք և յօժարութեամբ զԿիւրոս ունելով, զիշխանութիւնն Մարաց և Պարսից յինքն յափշտակեաց:*

*Սորա որդի Բաբ, Տիրան, Վահագն, զորմէ ասեն առասպելքս. Երկնէր երկին և երկիր, երկնէր և*

appelée Charoura. La princesse Sartinig convoite, dit-on, avec ardeur des herbes... d'Arkavan.

N'admires-tu pas encore plus ici notre véracité historique ? n'admires-tu pas comment nous avons pu découvrir les secrets des dragons qui habitent sur le noble Massis ?

## XXXI.

Quelles sont les races issues de Dicran ? quelles sont les branches de ces races ?

PEINDRE exactement un héros national, Dicran Ier, rapporter tous ses faits et gestes, est pour moi historien, une tâche bien chère, au milieu de mes récits ; tous ces discours sur Dicran, fils d'Érouant, seront aussi pleins de charmes pour toi, lecteur studieux. Comme le héros et ses actions nous sont chers, son histoire nous l'est pareillement. C'est pourquoi j'aime à nommer, appeler de suite, pour la valeur : Haïg, Aram, Dicran ; car selon moi, les fils des braves sont les braves. Quant aux individus intermédiaires, qu'on les appelle comme on voudra. D'après l'opinion reçue en fait de héros, notre assertion est vraie ; il n'y a pas d'Aramazt, mais il y a des gens qui veulent qu'il y en ait plusieurs, même quatre individus nommés Aramazt, dont l'un est un certain Gount Aramazt. Ainsi beaucoup de princes se nomment Dicran : un seul est descendant de Haïg, c'est celui qui, tua Astyage, traina sa maison en captivité, ainsi qu'Anouïch la mère des dragons ; et avec le consentement, l'appui de Cyrus, s'empara de l'empire des Mèdes et des Perses.

Ses fils furent Pap, Diran, Vahakn, touchant lequel la fable dit : « Le ciel et la terre enfantaient ; la mer

ծիրանի ծով. երկն 'ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն. ընդ եղեգան փող ծուխ ելանէր, ընդ եղեգան փող բոց ելանէր. և 'ի բոցոյն պատանեկիկ վազէր, նա հուր հեր ունէր. ապա թէ բոց ունէր մօրուս, և աչկունքն էին արեգակունք: Զայս երգելով ոմանց բամբռամբ, լուաք իսկ ականջօք մերովք: Յետ որոյ և ընդ վիշապաց ասէին յերգսն կռուել նմա և յաղթել, և կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին: Այլ ասէին զսա և աստուածացեալ. և անդ յաշխարհին Վրաց զսորա չափ հասակի կանգնեալ պատուէին զոհիւք: Եւ սորա են զարմք Վահնունիք 'ի սորա կրտսեր որդւոյն Առաւանայ առաւենեանք: Սորա Առաւան, սորա Ներսեհ, սորա Զարեհ. 'ի սորա զարմից և զարեհնաւանիցն որ կարդան ազգք: Իսկ առաջին սորա Արմոգ, սորա Բագամ, սորա Վան, սորա Վահէ. սա ընդվզեալ, մեռանի յԱղեքսանդրեայ Մակեդոնացւոյ:

Յայսմ հետէ մինչև ցթագաւորութիւնն Վաղարշակայ 'ի Հայս՝ ոչ ինչ ճշմարտագոյն ունիմ պատմել քեզ. քանզի շփոթ իմն ամբոխից լեալ, այր զայրամբ ելանէին տիրել աշխարհիս. և վասն այսորիկ դիւրամուտ 'ի Հայս լեալ Արշակ մեծ, թագաւորեցուցանէ զեղբայր իւր Վաղարշակ 'ի վերայ աշխարհիս Հայոց:

purpurine enfantait; dans la mer naquit un roseau rouge, de son tuyau sortait de la fumée, sortait de la flamme, et de cette flamme s'élançait un jeune homme: ce jeune homme avait une chevelure de feu, une barbe de flamme, ses petits yeux étaient des soleils ». On chantait ses louanges au son des cymbales, nous les entendîmes de nos propres oreilles; puis on redisait dans les chants ses combats, ses victoires contre les dragons, ses exploits égalant, surpassant ceux d'Hercule; on le disait même au rang des dieux. Dans le pays des Ibériens, on lui éleva une statue, à la quelle on offrit des sacrifices. De lui descendent les Vahnouni: de son fils puiné Aravan, viennent les Aravénian. De Vahakn est né Aravan, d'Aravan Nerseh, de Nerseh Zareh: des lignées de Zareh proviennent les races dites des Zarehnavan: Armok premier fils de Zareh, Pakam fils d'Armok, Van fils de Pakam, Vahé fils de Van; Vahé périt en combattant contre Alexandre de Macédoine.

Depuis cette époque jusqu'au règne de Vagharchag en Arménie, je n'ai rien de plus certain à te rapporter; car au milieu du conflit des bandes révoltées, on voyait guerriers contre guerriers vouloir commander à notre pays. C'est pourquoi le grand Archag étant entré facilement en Arménie, fait son frère Vagharchag roi du pays des Arméniens.

## ԼԲ

*Թէ եղիական պատերազմն առ Տեւտամեաւ. եւ մեր Զարմայր ընդ եԹով-պացի զօրուն լինել սակաւուք, եւ 'ի նոյն մահ։*

Երկուք այսոքիկ են, որք աշխատութիւն տագնապաւ մեզ 'ի վերայ 'ի քումմէդ հասանեն հարցասիրութենէ. համառօտասիրութիւն, արագաբանութիւն։ Այլ այսոքիկ՝ պերճ եւ պայծառ, պղատոնականք իբր եղանիլ բանք. հեռի 'ի ստութենէ, եւ լի որ ինչ ընդդէմ ստութեան։ Այլ զայսոսիկ յառաջին մարդոյն մինչեւ ցքեզ առ ժամայն պատմել. եւ այսոցիկ 'ի միասին պատահել անհնարին է։ Վասնզի որ զամենայն ստեղծ, կարող գոլով ակնարկութեամբ 'ի քթթելական զամենայն կացուցանել, ոչ այսպէս հաստատէ, այլ աւուրս որոշէ եւ կարգս 'ի ստեղծուածս. քանզի են ոմանք առաջնոյ եւ ոմանք երկրորդի եւ երրորդի եւ այլոց աւուրց ստեղծուածք։ Այսու մեզ այսպիսի իմն ակնարկէ վարդապետութիւն Հոգւոյն կարգս։ Իսկ զքո փափաք արտաքոյ այսպիսի իմն տեսանեմք սահմանի. զի արդար եւ բնաւն եւ առ ժամայն ամենայնքն քեզ եղիցին ասացեալքն։ Այլ առ 'ի մէնջ այսոքիկ կամ յերկար, եւ քեզ ըստ կամաց. կամ փոյթ, եւ քեզ ոչ հաճելիք։ Զի այսպէս 'ի քո հապճեպելոյ. ահա ոչ ինչ յաղագս մակեդոնացւոյն, եւ ոչ վասն իղիականին 'ի կարգին նշանակեցաք, այլ զօդեմք աւասիկ։ Ոչ ունիմք ասել, իմաստուն կամ անհանճար աստանօր լինել մեզ հեւան պատկանաւոր, կամ ոչ զայնոսիկ այժմ ուրեմն զկնի հեղուսելով բանս, զկարեւորսն եւ մերոյս արժանի շարագրութեանս։

Այլ ո՞յք արդեւք այսպիսեաց ճառից առաջինք, եթէ ոչ որք 'ի Հոմերոնէ պատմին. թէ այն արդեւք, որ

## XXXII.

**Guerre d'Ilion sous Teutamus. — Notre roi Zarmaïr avec une faible troupe se joint aux Éthiopiens. — Sa mort.**

Il est deux conditions imposées par ta studieuse ardeur, qui font peser sur nous une tâche bien difficile: exposition abrégée, rapide, mais aussi éloquente, lumineuse, style platonique, éloigné du mensonge, plein de vérité; tu veux à l'instant même, une histoire suivie depuis le premier homme jusqu'à toi. Il est impossible de réunir toutes ces conditions; car, celui qui a tout créé, quoique pouvant d'un seul regard, d'un clin d'œil, tout former, ne fait point ainsi; il assigne des jours différens, des classes distinctes à l'ordre de ses créations: les unes sont pour le premier jour, d'autres pour le second, pour le troisième, et autres jours encore: ici la même marche nous est indiquée par la doctrine de l'esprit saint. Tes désirs, nous le voyons bien, ne reconnaissent pas de telles règles. Il faut te dire tout avec exactitude, intégralement, sur l'heure; mais il y aura de notre part ou longueur, si l'histoire est développée selon tes désirs, ou précipitation, et alors aucune satisfaction pour toi. Ainsi pour te plaire, voici que nous n'avons rien dit en temps et lieu au sujet du Macédonien, ni au sujet de la guerre d'Ilion; nous rappelons ici ces faits. Nous ne saurions dire, s'il eut été d'un habile ou d'un mauvais menuisier, de travailler alors, ou plus tard, ces pièces importantes et dignes d'être rassemblées.

Quel doit être le premier sujet de ces discours, si ce n'est ce qui est rapporté par Homère, ce qui

վասն եղիականի պատերազմին պատմի առ Տևտամաւ ասորեստանեաց, և մեր Զարմայր 'ի ծառայութեան ասորեստանեայց սակաւուք ընդ եթովպիացի զօրուն օգնական Պրիամու ։ Նա անդ 'ի քաջացն հելլենացւոց վիրաւորեալ մեռանի. այլ կամիմ յԱքիլլեայ, և մի յայլ ումեքէ 'ի քաջացն ։

## ԿԱՏԱՐԵՑԱՆ ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ ԾՆՆԴԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ

est raconté touchant la guerre d'Ilion sous Teutamus, roi des Assyriens, ce qui est dit de notre Zarmaïr qui, soumis à la puissance des Assyriens, marche, suivi d'une faible troupe, avec l'armée des Éthiopiens au secours de Priam: Zarmaïr meurt blessé par les braves Hellènes, par Achille même, je le veux, et non par quelqu'autre guerrier.

ICI FINIT LE PREMIER LIVRE DE LA GÉNÉALOGIE DE LA NOBLE ARMÉNIE.

## Ի ՊԱՐՍԻՑ ԱՌԱՍՊԵԼԵԱՑ

### Յաղագս Բիւրասպի Աժդահակայ :

ԲԱՅՑ զի՞նչ արդեւք տարփանք քեզ՝ և Բիւրասպի Աժդահակայ փծուն և անձոռնի առասպելքն իցեն. և կամ էր սակս զմեզ Պարսից անյարմար և անոճ բանից, մանաւանդ թէ առաւել վասն անբանութեան, առնես աշխատ, և անբարի առաջնոյ նորա բարերարութե̃, և դիւաց նմա սպասաւորութեան, և ոչ վրիպեցուցանել կարելոյ զվրիպեալսն և զատուտն. և ուսոցն համբուրանն, և անդուստ զվիշապացն ծնունդս. և յայնմ հետէ չարութեան յաճախութիւն, ծախել զմարդիկ ՚ի պէտս որովայնի: Իսկ ապա և Հրուդենայ ումեմն կապեալ զնա սարեաք պղնձիւք, և ՚ի լեառն տանել՝ որ կոչի Դըմբաւընդ: Այլ և ՚ի ճանապարհի զննջելն Հրուդենայ, և Բիւրասպեայ քարշելն ՚ի բլուրն, և զարթչելն Հրուդենայ, և տանել զնա յայրս ինչ լերինն և կապել, և զինքն անդրի ընդդէմ նորա հաստատել. յորմէ պակուցեալ, հնազանդեալ կայ շղթայիցն, և ոչ զօրէ ելանել և ապականել զերկիր:

Զի՞նչ քեզ առ այսոքիկ կարօտութիւն առասպելք սուտք, կամ զի՞նչ պէտք անմիտ և անհանճար բանից յարմարանք: Մի՞ արդեւք յունական պերճ և ողորկ առասպելքն իցեն հանդերձ պատճառաւ, որք զճշմարտութիւն իրացն այլաբանաբար յինքեանս ունին թաքուցեալ: Այլ ասես, մեզ պատճառս տալ անբանութեան նոցա, և զարդարել զանզարդսն: Այլ տացուք զայսոսիկ մանկականի քոյոց տիոց և անհասութեան խակութեանդ լեալ տարփանք: Վասն որոյ եղիցի և աստանօր լնուլ մեզ զփափագ կամացն քոց:

## DES FABLES DES PERSES

### Au sujet de Piourasb Astyage.

Quel est donc chez toi ce goût, cet amour pour les fables grossières et insensées de Piourasb Astyage? pourquoi nous occuper aux contes ridicules, incohérens, insensés et surtout absurdes des Perses touchant sa première et perfide bonté, l'assistance que lui prêtent les démons, le pouvoir qu'il possède de ne pas faire manquer l'erreur et le mensonge, l'embrassement des épaules, de là la naissance des dragons; puis, dès ce moment, l'excès toujours croissant de sa méchanceté, qui lui fait sacrifier les hommes aux appétits de son ventre? Un certain Hroutène, l'ayant chargé de chaines d'airain, le mène sur la montagne qui s'appelle Dembavend: mais dans le chemin, Hroutène s'endort, et Piourasb l'entraine vers la colline; Hroutène se réveille, conduit Piourasb dans une caverne de la montagne, l'enchaine, se pose devant lui comme un terme; ainsi terrifié, Piourasb reste soumis à ses fers, et n'a pas la force d'aller corrompre la terre.

Quel besoin as-tu de ces fables mensongères, de ces ramassis de contes absurdes et insensés? Est-ce là ces fables grecques si nobles, si pleines de sens et de raisons, qui cachent en elles la vérité des choses, sous la forme de l'allégorie? Mais tu nous dis de donner des causes, un sens à ces contes, d'orner ce qui est sans ornement: nous ferons ces concessions à ta jeunesse; c'est bien là la fantaisie d'un enfant encore loin de la maturité. Pour cela il nous faut ici satisfaire tes désirs, tes caprices.

Ստորագրութիւն, որ ինչ սակս Բիւրասպեայ հաւատոյն:

Օ՛ ՊՂԱՏՈՆԱԿԱՆՆ համարձակագոյն այժմ բարբառիմ. իսկ արդ արդեւք իցէ՞ սիրելւոյ այլ ոք ես. քանզի և չէ իսկ ոք: Օ՛ի ՚ի վերայ այլոց անհնարից՝ հնարաւոր վասն քո աքաբելոց մեր, կատարեմք և զայս. զի զորոց ատեմք զբանս և զգործս, և այնոցիկ մանաւանդ թէ լուրն զլսելիս մեր տաղտկացուցանէր, այսօր ձեռամբ իմով շարագրեմ զայնոսիկ, մտաս անմտութեան նոցա տալով, և զկարի վաղուց նոցա իրս և նոցա անհասանելիս աւասիկ յայտնեմ. միայն թէ և քեզ յայսոսիկ ուրախութիւն և կամ շահ օգտութեան: Այլ ծանիր զատելութիւն մեր առ այսպիսի բան, զի ոչ յառաջինսն մեր ասացեալ գիրս, և ոչ ՚ի վերջինն բանս արժանաւորեցաք շարել, այլ զատ և որիշ: Եւ սկսայց այսպէս:

Ասացեալն ՚ի նոցանէ Բիւրասպի Աժդահակայ՝ առ Նեբրութաւ նախնի նոցա: Քանզի ՚ի բաժանել լեզուացն ընդ ամենայն երկիր, ոչ խառն ՚ի խուռն և ոչ անառաջնորդ կամ անգլխաւոր այս լինէր. այլ աստուածային իմն ակնարկութեամբ գլխաւորք և ցեղապետք որոշեալք զիւրաքանչիւր սահմանս ժառանգեցին կարգաւ և զօրութեամբ: Եւ զայս Բիւրասպեայ հաւատոյ անուն Ճանաչեմ ես, Նենտորոս Պիւռիդայ ՚ի քաղդեականի գտեալ մատենի: Սա ոչ քաջութեամբ քան թէ հարստութեամբ և ճարտարութեամբ զցեղապետութիւն ազգին իւրոյ ունէր հնազանդեալ Նեբրութայ. և հասարակաց զկենցաղս կամէր ցուցանել ամենեցուն, և ասէր՝ ոչ ինչ իւր առանձին ուրուք պարտ լինել, այլ հասարակաց. և ամենայն ինչ յայտնի և բան և գործ. և ՚ի ծածուկ ինչ ոչ խորհէր, այլ զամենայն յանդիման արտաքս բերէր լեզուով զծածուկս սրտին: Եւ զեւլ և

Description de tout ce qu'il y a de vrai touchant Piourasb.

Je dirai hardiment cette parole de Platon : « Est-il pour un ami un autre soi-même ? non assurément. » Comme, pour l'amour de toi, nous avons déjà rendu possible ce qui était impossible, nous faisons encore ici de même ; car nous abhorrons ces récits, ces faits ; en entendre parler fatiguait nos oreilles, et voici qu'aujourd'hui de ma propre main, je les retrace, donnant un sens à ces contes qui n'en ont pas ; j'expose ici des choses anciennes, incompréhensibles aux Perses eux-mêmes, pourvu qu'il y ait là pour toi plaisir ou avantage. Mais n'oublie pas notre aversion pour de telles folies, nous n'avons pas cru convenable de les insérer dans notre premier livre, pas même dans les dernières lignes: leur place est tout à fait séparée. Je commencerai ainsi.

Le personnage appelé par les Perses Piourasb Astyage, leur auteur, vivait sous Nemrod. Lors de la division des langues sur toute la terre, il n'y avait pas confusion, absence de directeurs, de chefs ; mais désignés par un clin d'œil de la volonté divine, des princes, des chefs de races, eurent chacun des états réglés, puissans. Je connais bien ce nom de Piourasb, c'est le Centaure Pyrète, trouvé dans un livre chaldéen. Piourasb, non par l'effet de sa bravoure, mais plutôt par son rang, son habileté, possédait le gouvernement de sa nation, sous l'autorité de Nemrod. Il voulait montrer à tous qu'il menait la vie de tous ; il disait que rien ne doit être particulier à un individu ; que tout doit être commun à tous, toute parole, toute action connue. Il ne pensait rien en secret, mais sa langue révélait tous les secrets de son cœur : il

զմտաւ բարեկամացն որպէս 'ի տուընջեան նոյնպէս և գիշերի սահմանէր ։ Եւ այս է առաջին նորա ասացեալն և անբարի բարերարութիւնն ։

Այլ քանզի ատեղաբանութեամբ հզօր եղեալ, յօժարեցաւ ուսանել զկատարեալ չարութիւնն , և այդք անկարելիք նմա . որպէս վերագոյնն ասացաք, սովորութիւն ունէր պատրանաց աղագաւ առ բազումս ոչ ինչ 'ի ծածուկ գործել . և այնպիսի վերջին և կատարեալ չարութիւն յայտնի ուսանել կարողութիւն ոչ էր , հնարի այսպիսաւ ուսման դառնութեան , և հնարս և ցաւս ինչ յորովայնի ունել , և բաղբաղել չարաչարս , որ ոչ այլով իւիք , քան թէ բանիւ իմն և անուամբ սոսկալեաւ բժշկիցի , զոր ումեք վայրապար լսել ոչ է կարողութիւն ։ Եւ այս , որ զավորեալ չարութիւն նիւթէր , ուսուցանէր նմա 'ի տան և 'ի հրապարակս , անկասկած զգլուխ 'ի վերայ ուսոց Տիւրասպեայ դնելով , և խօսելով յականջսն՝ ուսուցանէր զանբարի արուեստն . զոր յառասպելին՝ մանուկ սատանայի , ասեն , սպասաւորելով լինէր կամակատար . և ապա վասն որոյ պարգև 'ի նմանէ խնդրեալ , համբաւրէր զուսան ։

Իսկ վիշապացն բուսումն , կամ կատարելապէս վիշապանալն Տիւրասպեայ , որ ասի , է այս ։ Քանզի անբաւ մարդիկ սկսաւ զոհել դիւաց . մինչև տաղտկանալ 'ի նմանէ բազմութեանն և հալածել , և փախչել նմա 'ի նախասացեալ վերին կողմանսն . և 'ի սաստիկ վարելոյն զնա՝ թօթափեցաւ ամբոխ նորա 'ի նմանէ ։ Զայս վստահացեալ վարողացն զնա , հանգեան աւուրս ինչ զտեղեօքն ։ Իսկ Տիւրասպեայ ժողովեալ զցրուեալսն , յանկարծօրէն հասանէ 'ի վերայ՝ վնաս սաստիկ առնելով . այլ յաղթէ բազմութիւնն , և փախստական լինի Տիւրասպ . և հասեալ սպանանեն զնա մերձ 'ի լեառնն , և ընկենուն 'ի վիհ մեծ ծծմբոյ ։

donnait à ses amis le droit d'entrer, de sortir, la nuit comme le jour. Cette conduite est ce qu'on appelle sa première, sa perfide bonté.

Comme il était fort en astrologie, il voulut aussi apprendre l'art des maléfices, mais cela lui était impossible; car, comme nous l'avons dit ci-dessus, il avait coutume, même par esprit d'artifice, de ne rien faire en secret. Or, apprendre publiquement toute la science infernale, était chose impossible; il feint, pour pouvoir se livrer à cette étude d'abomination, d'avoir des douleurs de ventre; il prétexte des souffrances qui ne peuvent se guérir que par la vertu de quelque parole, de quelque nom horrible, que personne ne peut ouïr facilement. Le malin esprit, qui pratiquait la science infâme, la lui apprenait dans la maison et même dans les lieux publics, et mettant la tête sur les épaules de Piourasb, sans lui faire aucun mal, lui parlant à l'oreille, lui enseignait l'art sacrilège. Celui que dans leurs fables, les Perses appellent l'enfant de satan, servait Piourasb dans toutes ses volontés. Pour cela il lui demandait un présent, et il lui baisait les épaules.

Quant à la naissance des dragons, ou à Piourasb devenu un véritable dragon, voici ce qui est dit: Piourasb se mit à sacrifier aux démons des hommes à l'infini, jusqu'à ce qu'enfin, fatiguée de lui, la multitude le chassa; alors il s'enfuit dans les hautes contrées précités; comme on le poursuivait vivement, sa troupe se détacha de lui. Alors pleinement rassurés, ses ennemis se reposèrent quelques jours en ces mêmes lieux. Piourasb ayant rassemblé ses gens dispersés, fond à l'improviste sur ses ennemis, et leur fait beaucoup de mal. Mais le grand nombre l'emporte, et Piourasb est mis en fuite. Arrivé près de la montagne, il est tué, jeté dans une grande fosse de souffre.

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

ԲԱՆ

## ՄԻՋԱԿ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ՄԵՐՈՑՆ ՆԱԽՆԵԱՑ

### Ա

ԳՐԵՄ քեզ այժմ և որ ինչ առանձին մերոյ աշխարհիս գործք, երկրորդ առնելով գիրս, սկսեալ 'ի թագաւորութենէն Աղեքսանդրի, մինչև ցթագաւորութիւնն սրբոյ և քաջի առնն մեծին Տրդատայ, կարգաւ, որ ինչ եղեալ աստ գործ քաջութեան և արութեան, իմաստից և կարգաց միոյ միոյ ուրուք 'ի նոցանէ, որք յարքայէն Պարսից Արշակայ և Վաղարշակայ եղբօրէ նորա, զոր մերոյ ազգիս թագաւորեցոյց. և ինչ որ յետ նորա եղեն թագաւորք աշխարհիս մերոյ 'ի նորին սերմանէ, որդի 'ի հօրէ առնլով զտէրութիւնն՝ անուանեցան արշակունիք յԱրշակայ. աւելորդքն յազգ և 'ի բազմութիւն աճեցեալք, և միակն ըստ կարգի հետևանայ 'ի թագաւորութիւն: Բայց գրեմ կարճ 'ի կարճոյ որ ինչ մեզ անկ է, և զաւելորդն թողում: Քանզի բաւական է յաղագս այլոց ազգաց որ ինչ 'ի բազմաց ասացեալ եղև:

# LIVRE SECOND.

## HISTOIRE

## DES TEMPS INTERMÉDIAIRES

## DE NOS ANCÊTRES.

### I.

Je vais maintenant te décrire, dans un second livre, l'histoire particulière de notre pays, depuis le règne d'Alexandre jusqu'au règne du saint, du vaillant, du grand Dertad; je vais te décrire successivement les actions de valeur et d'éclat, les actes, règlemens, institutions de chacun des princes, depuis Archag, roi des Perses, et Vagharchag, son frère, établi par lui roi de notre pays. Je vais te décrire tous les faits et gestes des rois de sa race, qui lui ont et se sont succédé sur le trône de père en fils, rois nommés Archagouni, du nom d'Archag. Ses descendans se multiplient à l'infini; mais selon l'ordre établi, un seul prince est appelé au trône. D'ailleurs, j'écris rapidement ce qui nous est nécessaire, et je laisse le reste ; car il suffit au sujet des autres nations, de ce qui a été dit par une foule d'historiens.

Յետ տիրելոյն ամենայն տիեզերաց Աղեքսանդրի մակեդոնացւոյ, որդւոյ Փիլիպպեայ և Ոլոմպիադայ, որ էր քսան և չորրորդ յԱքիղլայ, բազմաց տալով զտէրութիւնն կտակաւ, զի ամենեցուն իշխանութիւն՝ մակեդոնացւոցն անուանեսցի, ինքն մեռանի ։ Զկնի որոյ թագաւորեալ Բաբելովնի Սելևկոս, զյոլովից կորզելով զիշխանութիւն . ուստի և զՊարթևս հնազանդեաց մեծաւ պատերազմաւ, և կոչեցաւ Նիկանովր այսորիկ աղագաւ ։ Սորա տիրեալ ամս երեսուն և մի, թողու զթագաւորութիւնն որդւոյ իւրում Անտիոքայ անուանեցելոյն Սաւտէր ամս իննևտասն ։ Զսա յաջորդէ Անտիոքոս, ասացեալն Թէոս, ամս տասն . և 'ի մետասաներորդին ապստամբեն Պարթևք 'ի ծառայութենէ մակեդոնացւոցն ։ Ուստի և թագաւորեաց Արշակ քաջ, որ էր 'ի զաւակէ Աբրահամու, 'ի քետուրական ծննդոց, առ 'ի հաստատել բանին Տեառն առ Աբրահամ, թէ թագաւորք ազգաց 'ի քէն ելցեն ։

Բ

Թագաւորեալ Արշակայ և որդւոցն, պատերազմ ընդ մակեդոնացիս, և սէր ընդ հռովմայեցիս ։

ՈՐՊԷՍ ասացաք, յետ վաթսուն ամի մահուանն Աղեքսանդրի՝ թագաւորէ 'ի վերայ Պարթևաց Արշակ քաջ 'ի քաղաքին, որ կոչի Բահղ Առաւաստին, յերկրին Քուշանաց ։ Նա տայ պատերազմ սաստիկ յոյժ, թափելով յինքն զամենայն արևելեայս ։ Հալածէ և 'ի Բաբելովնէ զմակեդոնացւոց իշխանութիւնն ։ Լսէ զզօրանալն հռովմայեցւոց 'ի վերայ արևմտից և ծովու, և թէ 'ի սպանիացւոցն թափեցին զբովսն, ուստի ոսկի և արծաթն հատանի . և զգաղատացիս հարեալ ընդ հարկիւ կացոյց, և զթա

Alexandre de Macédoine, fils de Philippe et d'Olympias, vingt-quatrième descendant d'Achille, après avoir commandé à tout l'univers, léguant son empire à plusieurs, de manière que l'empire de tous s'appelle encore l'empire des Macédoniens, Alexandre meurt. Après quoi, Séleucus, régnant à Babylone, ravit les états de ses copartageans. Il soumit les Parthes par la force des armes, et fut appelé pour cela Nicator. Séleucus, ayant régné trente et un ans, laisse la couronne à son fils Antiochus, surnommé Soter, qui règne dix-neuf ans. Antiochus, dit Théus, lui succède l'espace de dix ans; mais la onzième année de son règne, les Parthes secouent le joug des Macédoniens, et par suite, la couronne advint au brave Archag, de la race d'Abraham, de la lignée céturienne, en accomplissement de la parole du Seigneur à Abraham: « De toi sortiront les rois des nations. »

## II.

Règne d'Archag et de ses enfans. — Guerre contre les Macédoniens. — Amitié avec les Romains.

Comme nous l'avons dit, soixante ans après la mort d'Alexandre, on voit régner sur les Parthes le brave Archag, dans la ville appelée Pahl Aravadine, au pays des Kouchans. Il fait une guerre terrible, s'empare de tout l'Orient; il chasse de Babylone la puissance des Macédoniens ; il apprend que les Romains sont maîtres de l'occident et de la mer, qu'ils ont enlevé aux Hispani les mines d'où l'on tire l'or et l'argent, qu'ils ont fait tributaires les Galates et l'Asie; il envoie des ambassadeurs, et demande un traité d'alliance qui re-

գաւառութիւնն ասիացւոց։ Հրեշտակս առաքեալ, խնդրէր զգաշնաւորութիւն, զի մի օգնեսցէ Մակեդոնացւոցն. ոչ տալով հարկս, այլ պատարագս միայն ամի ամի հարիւր քանքարոյ։

Այսպէս տիրեալ ամս երեսուն և մի, և յետ նորա Արտաշէս որդի նորա ամս քսան և վեց, զսա պայազատէ նորին որդի Արշակ, որ կոչեցաւ մեծ. պատերազմի ընդ Պոնտոս և որդւոյն Պոնտոսեայ Անտիգոնեայ. քանզի 'ի վերայ նորա եկն 'ի Բաբելոնէ մակեդոնական զօրու, և պատերազմեալ՝ 'ի գերութիւն ըմբռնեցաւ. զոր կալեալ Արշակայ՝ տարաւ 'ի Պարթևս երկաթեղէն կապանօք, ուստի և Սիդերիտէսն կոչեցաւ։ Այլ իմացեալ եղբօր նորին սիդեսացւոյ Անտիոքայ զգնալն Արշակայ, գայ ունի զԱսորիս։ Իսկ Արշակ երկոտասան բիւրեաւ անդրէն դարձեալ, և Անտիոքոս 'ի սաստիկ ձմերայնոյ հերքեալ, պատահի նմա պատերազմաւ յանձուկ տեղիս, և կորնչի համօրէն զօրօքն. և Արշակ տիրէ երրորդ մասին աշխարհիս, որպէս յիրականացն պատմութեանց Հերոդոտեայ է ուսանել 'ի չորրորդէ, որ յաղագս բաժանելոյ զբոլոր երկիրս յերիս մասունս, և կոչեալ զմին Եւրոպիէ, և զմին Լիբիէ, և զմին Ասիայ, որում և տիրեաց Արշակ։

Գ.

Թագաւորեցուցանել զՎաղարշակ Հայոց աշխարհիս։

Ի ԺԱՄԱՆԱԿԻՆ յայնմիկ Թագաւորեցուցանէ զեղբայր իւր Վաղարշակ մերոյ աշխարհիս, զՀիւսիսի և զարևմուտս տալով նմա սահմանս։ Սա, որպէս յառաջնումն մերումն մատենին գրեցաք, այր քաջ և խոհեմ՝ ընդարձակեաց 'ի վերայ սահմանաց իւրոց. և կարգս կենցաղականս, որչափ մարթէր, սահմա-

fuse tout secours aux Macédoniens. Il ne paie pas tribut aux Romains, il leur donne chaque année un présent de cent talens.

Archag règne ainsi trente et un ans; son fils Ardachès vingt-six; puis vient le fils d'Ardachès, Archag, qui est appelé le Grand. Ce dernier fait la guerre à Démétrius et à Antigone, fils de Démétrius. Antigone vint fondre sur Archag à Babylone, à la tête d'une armée macédonienne; fait captif par Archag, il fut conduit chez les Parthes, chargé de fers, d'où lui vint le surnom de Sidéritès. Mais son frère Antiochus Sidètès, averti de la marche d'Archag, prend la Syrie. Archag revient contre lui avec cent vingt mille soldats. Antiochus, pressé par les rigueurs de l'hiver, dans les défilés, obligé d'accepter le combat, périt avec toutes ses troupes. Alors Archag commande en maître dans la troisième partie du monde, comme nous l'apprend le quatrième livre des histoires positives d'Hérodote, qui traitent de la division de l'univers en trois parties, savoir : l'une appelée Europe, l'autre Lybie, la troisième Asie, sur la quelle règne Archag.

## III.

### Archag établit Vagharchag roi d'Arménie.

En ce temps là, Archag établit son frère Vagharchag roi de notre pays, lui donnant pour états le nord et l'occident. Vagharchag, comme nous l'avons dit dans notre premier livre, prince aussi vaillant que sage, étendit bientôt son empire; organisa, autant qu'il pût, un système d'institutions civiles; créa des sa-

նեաց աշխարհիս. և նախարարութիւնս, և նոյին նախարարութեանցն նահապետութիւնս հաստատեաց զարս պիտանիս, որ 'ի զաւակաց նախնւոյն մեր Հայկայ և յայլոց ։

Քանզի յետ սանձահարելոյ զՄակեդոնացիս և դադարելոյ պատերազմացն, սկիզբն առնէ բարեգործութեանց Պարթևն քաջ. նախ և առաջին փոխարէն բարեաց հատուցանելով առնն զօրաւորի և իմաստնոյ, որ 'ի Հրէիցն՝ Շամբայ Բագարատ. տալ նմա իշխանութիւն ազգաւ թագադիր լինել Արշակունեաց. և որ 'ի նմանէ ծնեալ ազգ՝ լինել յանուն նորա կոչմամբ Բագրատունի, որ և այժմ մեծ նախարարութիւն 'ի մէջ աշխարհիս ։ Քանզի այր Բագարատ նախաձեռն ընծայ լեալ կամաց մատոյց զինքն Վաղարշակայ յառաջ քան զպատերազմն Արշակայ ընդ Մակեդոնացիսն, և սա 'ի դրան արքունի ։ Իսկ 'ի ծայրս Հայերէն խօսից կողմնակալ իշխան բիւրուց և հազարաց յարևմտից կուսէ ։

Բայց դարձցուք անդրէն 'ի վեր պատմելով յաղագս պատերազմին Վաղարշակայ ընդ Պոնտացիս, և որ 'ի Փռիւգիայ, և վասն յաղթութեանն ։

## Դ

Եթէ որպէս միաբանեալ Վաղարշակայ զքաջս Հայոց 'ի կարգ զօրու, խաղայ 'ի վերայ Մակեդոնացւոց մնացորդաց ։

ՅԵՏ պատերազմին Արշակայ ընդ Մակեդոնացիս և ունելոյ զԲաբելոն և զարևելս և զարևմուտս ասորեստանի, միաբանէ և Վաղարշակ զօր բազում յԱտրպատականէ և 'ի Հայոց, որ 'ի միջոցի աշխարհիս, արս անուանիս և քաջս, և զկոչեցեալն Բագարատ, և որ ընդ նովաւ քաջք, և զծովեզերեայն մանկունս, որք 'ի Պեղամայ և 'ի քանանացւոց, և

trapies, établit chefs dynastiques de ces satrapies des hommes habiles issus de la race de notre ancêtre Haïg et des autres patriarches.

Après avoir dompté les Macédoniens, mis fin aux combats, le Parthe généreux commence le cours de ses bienfaits. D'abord, il songe à récompenser les services d'un guerrier aussi valeureux que sage, du Juif Champa Pacarad; il lui confère, à lui et à sa race, le privilége de poser la couronne sur la tête des Archagouni. Il accorde à sa race le droit de s'appeler Pacradouni, satrapie considérable encore aujourd'hui en Arménie. Ce Pacarad s'était dévoué volontairement au service de Vagharchag, avant la guerre d'Archag contre les Macédoniens. Il est créé dignitaire de la Porte, gouverneur de province à l'extrémité de l'Arménie, chef, prince de onze mille hommes à l'occident.

Mais revenons sur nos pas, et parlons de la guerre de Vagharchag contre les habitans du Pont, contre les habitans de la Phrygie, et de sa victoire.

## IV.

### Vagharchag, à la tête de l'élite des Arméniens, marche contre les alliés des Macédoniens.

Après la guerre d'Archag contre les Macédoniens, après la conquête de Babylone, de l'Assyrie orientale et occidentale, Vagharchag lève dans l'Aderbadagan et l'Arménie centrale de nombreux guerriers, tous renommés et intrépides. Sous ses drapeaux sont rangés Pacarad et ses braves, la jeunesse du littoral, les descendans de Kégham, des Chananéens, de Chara,

Շարայի ծնունդք և Պուշարայ, և առ Թէր սիսա կեանսն, և զկաղմեանսն և զնոցա մերձաւորսն, որպէս թէ զկէս մասն աշխարհիս ։ Հասանէ ՚ի միջոց աշխարհիս վերագոյն քան զակոնս մօրին մեծի յափն Երասխայ, մօտ յՈրմաւիրն որ ասի բլուր ․ աւուրս չասս առնելով անդ, որպէս պարտ է ասել․ զի ոչ գիտէին զկարգս ինչ ։

Եւ աստի միաբանեալ զբոլոր կողմ աշխարհիս, հասանէ առ սահմանօքն Խաղտեաց ։ Քանզի Պազիկայ, Պոնտոս, Փռիւգիայ, Սաժաք և այլք, ոչ գիտելով զհամ պատերազմին Որշակայ, առ մակեդոնացւոց պետութիւնն զմիաբանութիւն դաշանցն հաստատուն պահէին ։ Վասն որոյ ումն Մորփիւղիկեայ միաբանեալ զասացեալ կողմանս զայսոսիկ, և գրգռէր ՚ի պատերազմ ընդ Վաղարշակայ ։ Բայց պատահեն միմեանց առ բարձրաւանդակի միով բլրով քարագագաթնիւ, որ այժմ ասի Կողոնիայ․ և մատեալք ՚ի միմեանս ձիգ ասպարիսօք միջոցացն․ ամրանան երկոքին կողմանքն բովանդակ աւուրս ։

Ե

Պատերազմ Մորփիւղիկեայ և մկնդահար մահ ։

ՕԿՆԻ անցանելոյ բազում աւուրց ամրանալոյ կողմանցն երկոցունց, գրգռէր պատերազմ ՚ի մերձ կողմանէս դիմեալ․ վասն որոյ յարդարէ կամաւ կամակամայ և Մորփիւղիկեան զիւրոյ կողման ճակատն, հասանէ յանդուգն յարձակմամբ ։ Քանզի այր սրտեայ էր, և անդամովք երկար և ընդ իրեարս պաշած, զոյգ մարմնոյն և ոյժ սաստիկ ունելով ։ Ամրացեալ պղնձով և երկաթով, և այլովք ընտիր վառելովք, ոչ սաստիկ ինչ թուով, տապաստ յերկիր ար-

de Couchar, de Sissag, de Gatmos, avec leurs alliés, enfin près de la moitié du pays. Vagharchag arrive en un lieu au-dessus des sources du grand marais, au bord de l'Éraskh, près de la colline d'Armavir. Là il s'arrête bien des jours, comme il faut le dire, car ses troupes ne savaient pas les manœuvres.

Après avoir levé des troupes dans tout le pays, il arrive en Chaldie; car Lazig, le Pont, la Phrygie, Majag et autres provinces, ne sachant rien de la guerre d'Archag, soumises à la domination des Macédoniens, gardaient les traités d'alliance. C'est pourquoi, un certain Morphylig, soulevant ces contrées, marche au combat contre Vagharchag. Les deux partis se rencontrent près d'une colline au sommet calcaire, appelée aujourd'hui Colonia, et, s'approchant l'un de l'autre de plusieurs stades, ils se fortifient des deux côtés, durant plusieurs jours.

## V.

Combat de Morphylig. — Il meurt d'uu coup de lance.

Après plusieurs jours passés à se fortifier des deux côtés, le combat présenté par nous va s'engager. Morphylig, bon gré malgré, range son armée, se précipite avec impétuosité; car c'était un guerrier magnanime, de haute stature, aux membres vigoureux et bien proportionnés, d'une force énorme répondant à sa conformation. Tout couvert de fer et d'airain, Morphylig avec ses soldats d'élite, sans être en grand nombre, abattait, renversait les plus valeureux guerriers de

կանէր առս ընտիրս և քաջս 'ի մանկանցն Վաղարշակայ . և ջանայր անցանել հասանել յարքայն Հայոց 'ի մէջ խմբի մեծի և զինու ամրացելոց : Այլ մօտ անցեալ աջողեցաւ ձգել զուռինն . քանզի էր կորովի և երկայնաձիգ , հեռի զաշտէսն արձակեալ՝ որպէս 'ի Թռիչս սրաթև հաւուց : Այլ ոչ ինչ կարէր յամեցին ընդ մէջ անցանել արք քաջք և անուանիք 'ի զարմից Հայկայ և ասորեստանւոյն Սենեքերիմայ . և աշտէիւ հարեալ սատակեն զքաջն , և զզօրսն առաջի արկեալ՝ 'ի փախուստ դարձուցանէին . բազում վտակս արեան հեղեալ, զերկիրն ողողանէին իբրև հեղեղք անձրևաց : Այլ յայնմ հետէ դադարեալ խաղաղէր երկիրն , նուաճեալ ընդ ձեռամբ Վաղարշակայ , և մակեդոնացւոցն դադարեալ գոռն :

## Զ

Եթէ որպէս կարգեաց Վաղարշակ զարևմուտս և զհիւսիսի մերոյ աշխարհիս :

Եւ այս այսպէս կատարեալ , կարգէ զկողմանս Մաժաքայ և զպոնտացիս և զեգերացիս . դառնայ առ ստորոտովն Պարխարայ ընդ մէջ Տայոց 'ի գիջին և 'ի մառախլուտ տեղիս մայրեացն և 'ի լոռաւէտս . գեղեցիկ իմն կարգելով զերկիրն , հաստատելով զլեռնայինսն և զջերմահոտն 'ի բարեխառն և 'ի զուգագեղեցիկ վայելչութիւն իւրոյ թագաւորութեանն . ամառնային ժամանակին հովանոցս պատրաստելով , յորժամ զհիւսիսով երթիցէ : Գոմս զերկուս տափարակին անտառախիտս հանդերձ լերամբքն կազմելով , և որսոց տեղիս . և զջերմութիւնն Կողայ 'ի մարմանդս այգեաց և բուրաստանեաց : Այլ խորեմ աստ վասն սիրելի առնն յայտնի գրել զամենայն և մանրապատում . զի անցի միայն զտեղիսն

Vagharchag. Le chef ennemi s'efforçait de pénétrer jusqu'au roi d'Arménie, au milieu d'un fort bataillon de soldats bien armés ; arrivé près de Vagharchag, il parvient à brandir sa longue et redoutable lance, qui fendait l'air comme fait l'aile effilée des oiseaux. Mais les braves et célèbres enfans de Haïg et de Sennéchérim l'Assyrien, ne tardèrent pas à se jeter en travers. D'un coup de lance ils abattent le fier Morphylig, et mettent ses troupes en fuite. Des flots de sang arrosaient la terre, semblables à des torrens de pluie. Dès ce moment le pays fut en paix, soumis à Vagharchag : toute attaque cesse de la part des Macédoniens.

## VI.

### Vagharchag organise l'occident et le nord de notre pays.

L'EXPÉDITION terminée, Vagharchag organise les contrées de Majag, du Pont, des Ékératzi ; il s'en va au pied du Barkhar, dans le Daïk, en des lieux humides, pleins de brouillards, couverts de sapins et de mousse ; il donne au pays une forme toute nouvelle, aplanit les terrains montagneux ; il change la brûlante chaleur en une douce température, le pays en un lieu de délices, le plus agréable de son royaume, se préparant de frais ombrages pour la saison de l'été, quand il ira au nord. Il transforme en parcs deux plaines boisées, à la suite des montagnes, pour le plaisir de la chasse. Il destine le climat chaud de Gogh aux plants de vignes et aux vergers. Je voudrais ici, pour un prince si cher, décrire tout avec détail.

նշանակելով, զհաւաստին և զոճն 'ի բաց թողեալ, վասն զկապ սիրոյ զհրաշալեացն անխզելի պահելոյ:

Այս ասա կոչեցեալ զվայրենի եկամուտ ազգն, որ 'ի դաշտին հիւսիսոյ և որ զստորոտով մեծի լերինն Կաւկասոյ, և որ 'ի հովիտս կամ 'ի ձորս երկայնագոգս խորացեալս, 'ի լեռնէն՝ որ զհարաւով իջեալ մինչ 'ի դաշտաքերանն մեծ. պատուէր տալով զաւազակութիւն և զմարդադաւութի՛ւն 'ի բաց քեցել յինքեանց, և հրամանաց և հարկաց արքունի հպատակ լինել. որպէս զի միաբանգամ տեսեալ զնոսա, առաջնորդս և իշխանս հանդերձ գեղեցիկ կարգօք հաստատեսցէ: Այս արձակէ զնոսա հանդերձ արամբք իմաստնովք և վերակացուօք յիւրմէ: Այս ինքն արձակեալ զարևմտեայ բազմութիւնն, իջանել 'ի տեղիս խոտաւէտ մերձ 'ի սահմանն Շարայի, զոր հինքն Անփայտ և վերին Բասեան կոչէին. իսկ յետոյ վասն հատուածին Վղընդուր Բուլկարայ Վնդայ բնակելոյ 'ի տեղիս, յանուն նորա անուանեցաւ Վանանդ. և անուանք շինիցն յանուն եղբարց և զարմից նորա անուանեալ կոչին մինչև ցայժմ:

Իսկ 'ի ցրտանալ հիւսիսոյ 'ի դառնահոտ փչելոյ, խաղայ իջանէ 'ի դաշտն մեծ. և անդ զափամբ մօրին մեծի բանակի 'ի տեղւոջ, ուր գետն մեծ 'ի ծովակէն հիւսիսոյ սկիզբն առեալ՝ իջանէ և խառնի 'ի մօրն մեծ: Այս անդ կարգեալ զզօրս աշխարհիս, և թողեալ յինքեանէ վերակացուս, և ինք առեալ զամենայն գլխաւորսն՝ չուէ 'ի Մծբին:

Je n'ai fait que signaler les lieux, laissant de côté les détails et les formes du style, conservant indissolubles les liens de mon amour pour ce prince merveilleux.

Ici, Vagharchag convoque les peuplades sauvages, étrangères, celles au nord de la plaine, celles au pied de la grande montagne de Caucase, celles enfoncées dans les vallées, dans les larges cavités, en descendant de la montagne qui est au sud jusqu'à l'entrée de la grande plaine; Vagharchag ordonne à cette multitude de renoncer à ses brigandages, à ses ruses, et de se soumettre aux lois et aux tributs royaux, afin que, la revoyant, il puisse lui donner des chefs, des princes, et une sage organisation; il renvoie ce peuple sous la conduite d'inspecteurs de son choix. Ayant ainsi congédié les hommes de l'occident, il descend dans les prairies, près des possessions de Chara, que les anciens appelaient Pasène supérieure et déboisée. Dans la suite, à cause de la colonie Veghentour Poulgar de Vount, établi dans ces contrées, de son nom le pays fut appelé Vanant; du nom de ses frères et de ses descendans les villages s'appellent jusqu'à présent.

Vagharchag, pour se soustraire au vent glacial du nord, se retire dans une grande plaine; là, au bord du grand marais, il campe à l'endroit où le grand fleuve, partant du lac nord, descend se mêler au grand marais; Vagharchag organise les milices du pays, laisse des inspecteurs, et prenant avec lui tous les notables, s'en va à Medzpine.

## Է.

Յօրինուած թագաւորութեանն, և թէ ուստի զնախարարութիւնսն բազմացոյց, որպէս և զկարգ կենցաղավարել հրամայեաց։

ԱՅՍ դրուակ մեծ, և հաւաստի պատմութեամբ լի, և արժանի բանից ողորկագունից և յոլովից։ Քանզի բազում ինչ աստ կարգաց և յօրինուածոց, տանց, ազգաց, քաղաքաց, շինից, դաստակերտաց, և համայն ասել օրէն թագաւորութեան, և որ ինչ շուրջ զթագաւորութեամբն. զօրաց, զօրապետաց, կողմանց կողմնակալաց, և որ նման այսոցիկ։

Արդ նախ և առաջին օրինադրէ թագաւորն զինքն և զտուն իւր, սկիզբն առնելով 'ի գլխոյն իւրմէ և 'ի թագէ։ Եւ զկոչեցեալն Բագարատ, որ 'ի Հրէիցն, շնորհակալութիւն նմա վասն յառաջագոյն անձնատուր ձեռնտուութեան առ թագաւորն և միամտութենն և քաջութեանն, զյառաջասացեալ տանուտէրական պատիւն ազգին պարգևելով. և իշխել նմա թագ 'ի գլուխ դնել թագաւորին, և կոչել թագադիր և ասպետ. և առանց ոսկւոյ և ականց զկրտսեր մարգարտովն երեքտակեան վարսակալ ածել՝ յորժամ յարքունիս և 'ի տան թագաւորին շրջիցի։

Եւ զգեցուցանողս իւր զձեռէս 'ի զաւակաց Քանանացւոց. անուն կոչէ ազգին զԳնթունիս։ Եւ զթիկնապահս իւր, զինու համօրէն, 'ի զաւակացն Խոռայ հայկազնոյ՝ արս ընտիրս և քաջս, նիզակաւորս և սուսերաւորս. և գլուխ նահապետ նոցա զՄաղխազ ոմն։ Բայց անուն ազգին զնախնականն պահէ։ Եւ զԳատ 'ի զաւակէ Գառնկայ, որ 'ի Գեղամայ, 'ի վերայ ոստոց արքունականաց կարգէ։ Որոյ որդի եղեալ Սարժ, յանուն նորա անուանի ազգն. բայց այս զկնի, յա-

## VII.

**Organisatiou du royaume.— D'où Vagharchag tire-t-il ses nombreuses satrapies ? — Comment règle-t-il son système d'institutions ?**

Voici un grand chapitre, tout rempli de détails historiques, dignes de sérieux, de nombreux développemens; car il y a beaucoup à dire sur les institutions, les règlemens, les maisons, les races, les villes, les villages, les établissemens, tout le système constitutif du royaume, tout ce qui se rapporte au royaume, les capitaines, les gouverneurs de provinces et autres officiers de ce genre.

D'abord Vagharchag règle ce qui regarde sa personne royale, sa maison : il commence par sa tête et par sa couronne. Voulant récompenser le juif Pacarad pour son ancien dévoûment, sa fidélité et sa valeur, il lui confère, comme nous l'avons dit, à lui et à sa race, le titre de prince et seigneur, le privilége de mettre la couronne sur la tête du roi et de s'appeler Tacatir (qui pose la couronne), chevalier, de porter le petit bandeau à trois rangs de perles, sans or ni pierreries, pour aller à la Porte et dans le palais du roi.

Vagharchag choisit parmi les descendans des Chananéens les officiers chargés de lui mettre ses gants ; il donne à leur race le nom de Kentouni ; il tire ses gardes du corps, ses gens d'armes, de la race de Khor, descendant de Haïg, tous guerriers d'élite, habiles à manier la lance et l'épée; il leur donne pour chef Maghkhaz, et conserve le nom de leur race primitive. Tad de la race de Carnig, sorti de Kégham, est préposé à la vénerie royale ; son fils est Varj, de son nom est appelée

ուրս Արտաշիսի ։ Եւ զԳաբաղոմն 'ի վերայ կու-
տից, և զԱբէլ սպասարար և գահաւոր. և շէնս պար-
գևէ նոցա, յորոց և անուն կոչին. սոյնպէս և նախա-
րարութիւնքն՝ աբեղէն և գաբեղէն ։

Եւ զարծրունիսդ գիտեմ՝ ոչ արծրունիս, այլ ար-
ծիւ ունիս, որք արծուիս առաջի նորա կրէին ։ Թո-
ղում զառասպելեացն բաջաղանս, որ 'ի Հադամա-
կերտին պատմին. մանկան նիրհելոյ անձրև և արև
հակառակեալ, և հովանի թռչնոյ պատանւոյն թա-
կացելոյ ։ Գիտեմ զգնունիսդ գինի ունիս, որ առա-
ջի թագաւորին պատրաստէր ըմպելիսն. որ սքանչե-
լի իմն դիպեալ եղև ըստ գործոյն և անունն. քանզի
պատրաստէր ըմպելիսն արքայի յընտիր և համեղ
գինեաց, ունէր և կոչումն անուանն Գինն. ընդ որ
կարի զուարճացեալ, ասեն, Վաղարշակ, կարգէ 'ի
թիւ նախարարութեան ազգաց մեծապէս ։ Եւ են
այս երկու տունքս 'ի զաւակէ Սենեքերիմայ, ար-
ծրունիս և գնունիս ։

Նշեմ և զսպանդունիսդ 'ի վերայ զենարանաց, և
զհաւենունիսդ՝ բազէակիրս և բազէակալս յաղագս
'ի մայրիս բնակելոյ ։ Եւ եթէ առ ցոփս ոչ ունիցիս,
զձիւնականդ՝ ամարայնոցաց պահակս և ձիւնակիրս,
և յառաջադիմութենէ ազատացեալս, որպէս ըն-
տանիք թագաւորաց ։

Եւ գունդս և պահապանս դրան արքունի պա-
տրաստէ զչորս, զմի մի իւրաքանչիւր վառելովք 'ի
նոյն հին զարմից թագաւորացն՝ որ 'ի Հայկայ, որ
ընդ ժամանակս ժամանակս ժառանգութեան 'ի հա-
րանց ստացեալ գեւղս և դաստակերտս ։ Իսկ աստու-
րեմն Պարսից թագաւորութեն, որպէս լսեմ, յայլոց
յարուցեալ գունդս և ոստան անուանել. ոչ գիտեմ

la race, mais ce n'est que postérieurement et du temps d'Ardachès. Capagh a l'inspection des haras, et Apel est nommé chambellan, valet de chambre. Vagharchag leur donne des villages qui prennent leur nom: ainsi se forment les races apéghène et capéghène.

Ce n'est pas Ardzrouni, je le sais, mais Ardzivouni, ceux qui portaient des aigles devant Vagharchag. Je laisse de côté les contes, les fables publiées à Hatamaguerd: Un enfant dormait exposé à la pluie, et au soleil; un oiseau couvrit de ses ailes les membres défaillans de cet enfant. Je sais que le mot Kenouni vient des mots kini (vin), ouni (il a), celui qui préparait les boissons du roi. Voici un fait curieux touchant la fonction, la dénomination: celui qui choisissait parmi les vins les plus savoureux et les meilleurs, ceux destinés au roi, avait pour nom Kine; Vagharchag, dit-on, ravi de cette coïncindence singulière, élève Kine au rang des grandes satrapies; ce sont là les deux maisons sorties de la race de Sennéchérim, les Ardzrouni et les Kenouni.

Sens des mots Arméniens

Je dis encore: les Sbantouni étaient préposés aux immolations, les Havénouni des oiseleurs, des fauconniers, qui habitaient les sapinières; et si tu ne me prends pas pour un conteur, je dis: les Tzunagan étaient les gardiens des résidences d'été, et les glaciers du roi; ils furent annoblis pour leurs services, comme gens de la maison du roi.

Vagharchag forme quatre compagnies de gardes du palais, compagnies recrutées parmi les anciennes races des rois successeurs de Haïg, qui à différentes époques ont hérité de leurs pères des villages, des établissemens. Ici, sous la domination des Perses, comme je l'ai ouï dire, il s'éleva des compagnies formées d'autres individus sous le nom d'Osdan. Je ne sais si c'est

թէ վասն սպառելոյ ազգին առաջնոյ, թէ վասն ընդդիմութեան իւրեք լինելոյ շկապեալ և 'ի բաց ընկեցեալ զազգն, զայլս 'ի տեղիս նոցա յարուցին գունդս անուամբ արքունի։ Այլ առաջինն հաստատ 'ի զարմից թագաւորացն առաջնոց. որպէս և այժմ 'ի Սրաց աշխարհին, որ Սեփծուղն կոչի։ Նա և ներքինիս հրամայէ 'ի նոյն ազգէ խզել. և նահապետ նոցա զՏայր իշխանն մասին յԱտրպատականէ մինչև ցըՃուաշ և Նախճաւան։ Բայց թէ որպէս է և ուր սորա իրք անցին անյիշատակելի, ես ոչ գիտեմ։

## Ը.

Երկրորդ թագաւորութեան լինել 'ի զաւակէ Աշդահակայ Մարաց թագաւորին։

ԲԱՅՑ յետ կարգելոյ զտունն թագաւորին, երկրորդ թագաւորութեանն լինէր 'ի զաւակէ Աշդահակայ՝ Մարաց եղելոյ թագաւորի, որ այժմ Մուրացանդ կոչեն։ Քանզի ոչ ասեն նահապետի ազգին՝ Մուրացան տէր, այլ մարացւոցն տէր։ Եւ թողու 'ի վերայ նորա զամենայն շէնս, որ 'ի գերութենէն Մարաց։ Եւ յարևելից կողմանէ զեզերբ հայկական խօսից կողմնակալս, զերկու ցեղից նահապետութեանցն՝ սիսակեան և կադմեայն, զորոց զանուանսն յառաջնում ճառին կարգեցաք։

Յետ սորա մեծ և անուանի և բազմաբեւր զարևելից հիւսիսոյ կողմանն կարգէ կողմնակալութիւն՝ զայր անուանի և յամենայն գործ մտաւորութեան և հանճարոյ առաջին, զԱռան. առ մեծ գետովն, որ հատանէ զդաշտն մեծ, որ անուանի Կուր։ Բայց զայս գիտեա, զի զցեղս զայս մեծ և անուանի՝ մտ-

à cause de l'extinction de la première race, par esprit d'opposition à ces races rejetées et proscrites, qu'on forma en leur place d'autres compagnies avec le titre de royales: les premières descendent bien des premières races des premiers rois, comme encore à présent en Ibérie, la race appelée Mepédzoul. Vagharchag fait aussi eunuques des individus descendans des mêmes races, et leur donne pour chef Haïr-Ichkhan prince du pays depuis l'Aderbadagan jusqu'à Djouvach et Nakhdjavan. Mais comment cela se fit-il, où sont passés les actes de ce chef, actes oubliés? je ne sais.

## VIII.

Second dignitaire du royaume, choisi parmi les descendans d'Astyage roi des Mèdes.

Après la formation de la maison du roi, le second dignitaire du royaume fut pris parmi les descendans d'Astyage, ancien roi des Mèdes, appelés à présent Mouratzan; car on ne dit pas, du chef de cette race, Mouratzan-der, mais Maratzouotz-der (seigneur des Mèdes). Vagharchag laisse à ce prince tous les villages pris sur les Mèdes. Il établit en orient, sur les frontières du pays où était parlée la langue arménienne, pour gouverneurs les chefs des descendans des deux maisons dynastiques, de Sissag et de Gatmos, dont nous avons signalé les noms dans la première partie.

Vagharchag donne le gouvernement de la grande, célèbre et fertile contrée du nord-est à un homme illustre et supérieur par sa sagesse et son esprit, à Aran; cette contrée est située près du fleuve qui traverse la grande plaine, et ce fleuve s'appelle Gour. Tu sauras que nous avons oublié de mentionner dans le pre-

ռացումն եղև մեզ յառաջին մատենին յիշատակել, զգունդս սիսական՝ որ ժառանգեաց զդաշտն Սիւնից, և զլեռնակողմն նորին դաշտի, 'ի գետոյն Երասխայ մինչև ցամուրն՝ որ ասի Հնարակերտ. և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցան Սիւնիք. զի աղու ձայնէին զնա: Եւ 'ի սորա ծննդոց այս Սռամն անուանի և քաջ կարգեցաւ 'ի պարթևէն Վաղարշակայ կողմնակալ բիւրաւոր: Ի սորա զաւակէ ասեն սերեալ զազգ ուտէացւոց և գարդմանացւոց և ծովդէացւոց և գարգարացւոց իշխանութիւնն:

Իսկ Կուշարայ, որ յորդւոցն Շարայի, ժառանգեաց զլեառն մթին, որ է Կանգարք, և զկէս մասինն Ջաւախաց, զԿողբ, զԾոբ, զՁոր՝ մինչև ցամուրն Հնարակերտ: Բայց զտէրութիւնն Աշոցայ, և զսեպհականութիւնն Տաշրայ՝ կարգէ Վաղարշակ 'ի զաւակացն Կուշարայ հայկազնոյ: Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ կողմնակալ հիւսիսոյ կարգէ զմեծ և զհզօր ազգն. և նահապետութեանն անուն կարդայ՝ բդեշխ գուգարացւոց. որ էր լեալ 'ի զաւակէ Միհրդատայ Դարեհի նախարարի, զոր ածեալ Աղեքսանդրի, թողեալ իշխան 'ի վերայ գերութեան 'ի վերիացւոց ազգացն, զորս եած Նաբուգոդոնոսոր, որպէս Աբիւդենոս պատմէ այսպէս ասելով. Մեծազօրն Նաբուգոդոնոսոր բռնագոյն էր քան զՀերակլէս լիբիացւոց. զօրաժողով լեալ՝ հասանէր 'ի վերիացւոց աշխարհն, և վանեալ խորտակեալ ընդ ձեռամբ նուաճէր. և զմասն մի 'ի նոցանէ յաջակողմն Պոնտոս ծովու յարևմուտս տարեալ բնակեցուցանէր: Իսկ 'ի հովտին մեծի Բասենոյ կարգէ նահապետութիւն զորդունին անուանեալ, որ 'ի զաւակացն Հայկայ:

Իսկ զայր խոժոռադէմ և բարձր և կոպտաբանձն և տափաքիթ, խորակն և դժնահայեաց, 'ի զաւակէ

mier livre cette grande et illustre maison, cette famille de Sissag, qui possédait la plaine des Aghouank et la partie montagneuse de cette plaine, depuis l'Éraskh jusqu'à la forteresse dite Henaraguerd. Le pays, à cause de la douceur des mœurs de Sissag, fut appelé Aghouank, car lui-même était surnommé Aghou (doux). De la race de Sissag descend l'illustre et brave Aran, fait gouverneur et chef de dix mille hommes par le parthe Vagharchag. De la race d'Aran sont issues, dit-on, les races des Oudéatzi, des Cartmanatzi, des Dzotéatzi, et la dynastie des Carcaratzi.

Couchar, l'un des descendans de Chara, a pour sa part la montagne couverte de brouillards, Gankar, la moitié de la contrée de Dchavakh, Goghp, Dzop, Tzor, jusqu'à la forteresse Henaraguerd. Quant aux états d'Achotz, aux propriétés de Dachir, Vagharchag en investit les enfans de Couchar, descendant de Haïg. En face du Caucase, Vagharchag institue, pour gouverner la partie nord, cette grande et puissante race: le titre de la principauté est Ptiachkh (prince) des Coucaratzi; race sortie de Mihrdate, satrape de Darius, qu'Alexandre avait emmené et laissé pour commander aux captifs qu'avait faits Nabuchodonosor en Ibérie, comme le rapporte Abydène qui s'exprime ainsi: « Le puissant Nabuchodonosor était encore plus terrible que l'Hercule des Lybiens. Ayant rassemblé ses troupes, il fondit sur les Ibériens, les défit, les réduisit sous sa puissance, en transplanta une partie à la droite de la mer du Pont en occident ». Dans une grande vallée de la Pasène, Vagharchag crée une satrapie nommée Ouortouni, descendant de Haïg.

Un homme au visage rébarbatif, à la taille haute, mais difforme, au nez camus, à l'œil creux, à l'air fé-

Պաքարմայ, 'ի Հայկակայ Թոռնէ, Տորք անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահադիմութեանն ձայնէին անգեղեայ, վիթխարի հասակաւ և ուժով, հաստատէ կուսակալ արևմտից. և յերեսացն անպիտանութենէ կոչէ զանուն ազգին Անգեղ տուն: Բայց եթէ կամիս, ստեմ և ես յաղագս նորա անյաջ և փցուն, որպէս պարսիկք վասն Ռոստոմայ Սագճկի հարեւր և քսան փղաց ույժ ասեն ունել: Վասնզի կարի իմն անյարմար թուէին նմա երգ բանիցն վասն ուժեղութեանն և սրտեայ լինելոյն. որում ոչ Սամսոնի և ոչ Հերակլեայ և ոչ Սագճկին յարմարեն այս զրոյցք: Վասնզի երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց ձեռօք, ուր ոչ գոյր գեղութիւն, և ձեղքել ըստ կամաց մեծ և փոքր. և քերել ըղընգամբք և կազմել որպէս տախտակ, և գրել նոյնպէս ըղընգամբք իւրովք արծուիս և այլս այսպիսիս: Նա յեզերս ծովուն Պոնտոսի դիպեալ նաւաց թշնամեաց, դիմէ 'ի վերայ. և 'ի խաղալն նոցա 'ի խորն իբրև ասպարէզս ութ, և սա ոչ ժամանեաց նոցա. առնու, ասեն, վէմս բլրաձևս, և ձգէ զկնի. և 'ի սաստիկ պատառմանէ ջուրցն ընկղմին նաւք ոչ սակաւք, և ամբարձումն ալեացն, որ 'ի պատառմանէ ջուրցն, վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս: Ահ, կարի է առասպելս, այլ և առասպելաց առասպել: Բայց քեզ զի՞ է. քանզի էր արդարեւ սաստիկ հզօր, և այսպիսեաց զրուցաց արժանի:

Բայց զկնի դորա հաստատէ զմեծ նահապետութիւնն Շոփաց 'ի չորրորդն կոչեցեալ Հայս: Այլ և զնախարարութիւնն ապահունեաց և զմանաւազեանն և զբզնունեանն 'ի նոյն զաւակացն Հայկայ.

race, de la race de Baskam, petit-fils de Haïgag, appelé Dork, surnommé pour sa laideur Ankéghia (le laid); cet homme, d'une taille et d'une force colossale, est établi par Vagharchag gouverneur de l'occident. A cause de la laideur de Dork, sa race a le nom de maison Ankegh. Mais, si tu veux, je vais débiter sur le compte de Dork mille faussetés et extravagances, comme ont fait les Perses pour Rosdom Sakdjig, disant qu'il avait la force de cent vingt éléphans; car il y a eu des chants tout à fait déraisonnables touchant la force, la valeur de Dork, qualités que l'on ne pourrait pas attribuer au même degré ni à Samson, ni à Hercule, ni à Sakdjig; on disait dans ces chants qu'il saisissait dans ses mains des pierres très dures, sans aucune fente, qu'il les taillait à volonté grandes ou petites, les polissait avec ses ongles, en formait des tablettes sur lesquelles il traçait également avec ses ongles des figures d'aigles et autres objets semblables. Des vaisseaux ennemis étant arrivés sur le rivage de la mer du Pont, il court sus; mais les vaisseaux avancent de huit stades dans la haute mer, et il ne peut les joindre; il prend, dit-on, des pierres grosses comme des collines et les lance sur l'ennemi. Par suite du déchirement des eaux, grand nombre de vaisseaux sont engloutis, et le soulèvement des flots produit par le déchirement des eaux, pousse à plusieurs milles au loin le reste des navires. Oh! que cette fable est extraordinaire, c'est bien la fable des fables! mais que t'importe? Dork était vraiment d'une force merveilleuse, digne de tels récits.

Vagharchag établit encore la grande satrapie dynastique de Dzop dans la quatrième Arménie, ainsi que les satrapies Abahouni, Manavazian, Peznounian, issues de la même descendance de Haïg. Des prin-

'ի բնակչաց գաւառաց պերճագոյն, տեղարս կարգէ յա-
նուն շինից և գաւառաց կոչելով:

Այլ մոռացաք և զդժնեայ Սլաքն անուանեալ այր. զոր ոչ կարեմ հաւաստեաւ ասել, 'ի հայկայ եթէ յառաջագունից քան զնա եղելոց յաշխարհին, զի հին զրոյցքն պատմեն լինել. բայց էր այր քաջ: Սա կարգէ սակաւ արամբք պահել զլեառնն, որսալ զքօշսն. որք անուանեցան Սլկունիք: Այսպէս և 'ի նոյն իրս և զՄանդակն անդառնալի. և 'ի սմանէ Մանդակունիք:

Բայց յորդւոցն Վահագնի գտեալ այս, որք յինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս, պատուէ մեծապէս, 'ի ձեռն տալով նոցա զքրմութիւնն. և կարգէ ընդ առաջին նախարարութիւնսն, և անուն կոչէ վահնունիս: Սապէս և զառաւենեանն և զարեհաւանեանն գտեալ 'ի զարմից առաջին թագաւորացն, կարգէ 'ի նոյնանուանս աւանս:

Եւ զՇարաշան 'ի տանէ Սանասարայ հաստատէ բդեշխ մեծ և կուսակալ յարեւմտից հարաւոյ, յեզեր սահմանացն ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ, գաւառս պարգեւելով զԱրձն, որ շուրջ զնովաւ, և զլեառն Տաւրոս, ուր և Սիմ, և զԿղեսուրն ամենայն:

Իսկ զՄոկացին 'ի նոյն գաւառէ գտեալ այր, որ ունէր ընդ իւրեաւ սրիկայս բազում, նախարարութիւնս հաստատէ: Նոյնպէս և զկորդուացիս, զանձեւացիս, զակէացիս 'ի նոյն գաւառաց: Իսկ զդըտունիս և զգողթնեցիս գտի պատմեալ 'ի սխսականէն արդարեւ հատուած. ոչ գիտեմ, թէ յանուն արանցն զգաւառն անուանեն, և թէ յանուն գաւառացն զնախարարութիւնսն կոչեցեալ:

Իսկ յետ այսր ամենայնի մեհեան շինեալ յԱրմաւիր, անդրիս հաստատէ արեգական և լուսնի և իւ-

cipaux habitans il fait les seigneurs des villages et des cantons, leur en donne le nom.

Nous avons oublié le terrible Slak ; je ne saurais dire avec certitude s'il descend de Haïg ou des individus établis dans le pays avant son arrivée, dont parlent les anciennes traditions. C'était un homme intrépide : Vagharchag le commet avec un petit nombre d'hommes à la garde de la montagne et pour chasser les chamois. Ces hommes furent appelés Selgouni ; Miantag l'invincible est préposé aux mêmes fonctions : de lui sortent les Mantagouni.

Parmi les enfans de Vahakn, il s'en trouva plusieurs qui demandèrent d'eux-mêmes les fonctions sacrées ; Vagharchag les comble d'honneurs, en leur confiant le sacerdoce ; il constitue au premier rang leur satrapie qu'il nomme Vahnouni. C'est ainsi que les races aravénian et zaréhavanian, issues des premiers rois, sont établies par Vagharchag dans les bourgs de leurs noms.

Charachan, de la maison de Sannassar, est créé grand prince et gouverneur de la partie sud-ouest, sur les frontières d'Assyrie, au bord du Tigre, et reçoit le canton d'Artzn, le pays environnant, le mont Taurus, y compris le Sim et toute la Cœlé-Syrie.

Quant aux Mogatzi, Vagharchag trouvant un homme du canton de Mog, qui était chef d'une foule de brigands, établit la satrapie des Mogatzi ; il en est de même des Gortouatzi, des Antzévatzi, des Aguéatzi, issus des mêmes cantons ; quant aux Rechdouni et aux Coghtnétzi, j'ai vu rapporté quelque part que c'est vraiment des branches sorties de la race sissaguian ; je ne sais si l'on appelle les cantons du nom de ces hommes, ou leurs satrapies du nom des cantons.

Après toutes ces dispositions, Vagharchag bâtit un temple à Armavir où il met les statues du soleil, de

րոց նախնեաց ։ Ե՞ւ աղերսեալ որ 'ի Հրէիցն Շամ-բայ Բագարատ, որ եւ թագադիր եւ ասպետ, հան-դերձ հարկեցուցանող բանիւք զթողուլ զօրէնս հրէ-ութեան, եւ պաշտել զմեհեանս. 'յոր չառեալ յանձն, ըստ կամաց թողու զնա արքայն. Վաղարշակ ։

Հրաման տայ եւ զքաղաքն Շամիրամայ նորոգել, եւ յայլ բազում տեղիս շինել քաղաքս բազմամարդս, եւ շէնս գիւղաւորս եւ մարդախիտս ։

Եւ օրէնս իմն հաստատէ 'ի տան թագաւորու-թեան իւրոյ, եւ ժամս որոշէ ելևմտից եւ խորհրդոց եւ խրախճանութեանց եւ զբօսանաց ։ Եւ կարգս զի-նուորութեանց, եւ նոցունց առաջինս եւ երկրորդս եւ երրորդս, եւ որ 'ի կարգին ։ Եւ յիշեցուցանողս երկուս 'ի ձեռն գրոյ. այլ ումն զբարի յիշողութիւնն առնելով; եւ այլ ումն զվրէժխնդրութեանցն ։ Եւ բարւոյ յիշե-ցուցանողին հրաման տայ՝ 'ի բարկութեան արքայի եւ յանիրաւ հրամանս՝ յիշեցուցանել զիրաւն եւ զմար-դասիրեն ։ Իրաւարարս 'ի տան արքունի, իրաւարարս 'ի քաղաքս եւ յաւանս ։ Հրաման տայ քաղաքացեաց մարդկան արգոյ եւ պատիւ լինել քան զգեղջկաց, եւ գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս. եւ քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարիլ, վասն բարեկարգութեան եւ ան-նախանձ կենաց, որ է շինութեան եւ խաղաղու-թեան կենաց պատճառք. եւ որ ինչ նման այսոցիկ ։

Եւ քանզի բազում ունէր ուստերս, պատշաճ վար-կաւ ոչ ամենեցուն առ իւր կալ 'ի Մծբին. վասն ո-րոյ առաքէ զնոսա բնակել 'ի գաւառս Հաշտենից, եւ 'ի ձորն նորին սահմանակալ, որ է արտաքոյ Տա-րօնոյ. 'ի նոսա թողլով զշէնս ամենայն, հանդերձ յաւելուածով մտից առանձինն եւ ռոճկաց կարգե-լոց յարքունուստ ։ Եւ միայն զառաջին որդին իւր,

la lune, et celles de ses ancêtres. Champa Pacarad, Juif de nation, investi de la dignité de chevalier avec le privilége de poser la couronne sur la tête du roi, est invité, pressé même d'abandonner les lois du judaïsme et d'adorer les idoles; sur son refus, le roi Vagharchag le laisse libre.

Vagharchag fait rebâtir la ville de Sémiramis et construire sur différens points des villes pour grand nombre d'habitans, des bourgs populeux.

Il met dans son palais un ordre parfait, règle les heures des entrées, des conseils, des festins, des plaisirs; établit des classes dans les milices, première, deuxième, troisième classe, ainsi de suite. Il institue deux secrétaires chargés de rappeler au roi par écrit, l'un, le bien à faire, l'autre, les vengeances à exercer; il ordonne à celui qui doit faire souvenir du bien, de rappeler au roi, dans sa colère, lorsqu'il donne des ordres injustes, de lui rappeler et la justice et la philanthropie. Il crée des justiciers à la cour, des justiciers dans les villes, dans les bourgs. Il enjoint aux citadins, de tenir un rang supérieur à celui des paysans, aux paysans d'honorer les citadins, comme des supérieurs, aux citadins de ne pas être hautains envers les paysans; mais de se conduire en frères, pour le maintien du bon ordre, de l'harmonie sans jalousie, ce qui est la cause du bonheur, de la tranquillité de la vie; il établit encore bien d'autres institutions semblables.

Comme Vagharchag avait plusieurs fils, il juge convenable de ne pas les garder tous, près de lui, à Medzpine. En conséquence, il les envoie demeurer au canton de Hachdiank, et dans la vallée frontière, hors de Daron, leur laissant tous les villages avec une addition de revenus particuliers, et de traitemens assignés sur le trésor royal. Vagharchag ne garde près

որ կոչէր Արշակ, պահեալ իւր ’ի համար թագաւորութեան, և զնորին ուստր՝ զոր անուանեաց Արտաշէզ, և յոյժ սիրեցեալ. քանզի էր արդարև տղայն կայտառ և հզօր մարմնով. որպէս զի կարծիս Հայեցողացն տալ՝ որ ’ի նմայն անձնելոց էին արութիւնք։ Եւ եդեալ այս յայնմ հետէ և առ յապայ օրէնք ’ի մէջ Արշակունեաց, միոյ որդւոյ բնակել ընդ արքային՝ փոխանորդ լինել թագաւորութեանն, և այլ ուստերաց և դստերաց գնալ ’ի կողմանս Հաշտենից՝ յազգին ժառանգութիւն։

Բայց Վաղարշակ յետ այսպիսեաց արութեանց և բարեկարգութեանց մեռանի ’ի Մծբին, թագաւորեալ ամս քսան և երկուս։

Թ

Յաղագս մերոյ Արշակայ առաջնոյ, և նորին գործոց։

ԱՐՇԱԿ որդի Վաղարշակայ թագաւորէ ’ի վերայ Հայոց ամս երեքտասան. նախանձաւոր և հետևող հայրենի առաքինութեանցն լեալ, բազում կարգս ուղղութեանց գործեաց, պատերազմելով ընդ պոնդացիս, և նշանակ եթող յեզեր ծովուն մեծի. զնիզակն իւր զգոլորատէգ, որ էր արեամբ զեռնոց մրխեալ, ձգեալ ’ի հետևակուց՝ խորագոյնս նստոյց յերկանաքար արձանին, զոր կանգնեաց ’ի ծովեզերըն։ Զայս արձան բազում ժամանակս պատուեցին պոնդացիք որպէս զառ ’ի յաստուածոց գործ։ Իսկ ’ի գոռալն Արտաշիսի միւսանգամ ընդ պոնդացիս, ընկեցեալ ասեն զարձանն ’ի ծով։

Ի սորա աւուրս աղմուկ մեծ լեալ ’ի գօտիս մեծի լերինն Կաւկասու յաշխարհին Բուլղարայ, և բազումք ’ի նոցանէ հատուածեալք եկին յաշխարհս

de lui que son fils aîné, appelé Archag, comme héritier présomptif, ainsi que le fils de son fils, nommé Ardachès, qu'il aime tendrement; car c'était vraiment un enfant bien éveillé, bien constitué, qui donnait les plus grandes espérances de courage et de sagesse. Ce fut dès lors une loi chez les Archagouni, qu'il ne demeurât près du roi qu'un seul fils, comme agrégé et successeur au trône, que les autres fils et filles allassent aux contrées de Hachdiank, héritage de leur race.

Vagharchag, après tous ces hauts faits et ces belles dispositions accomplies, meurt à Medzpine, ayant régné vingt-deux ans.

## IX.

De notre Archag Ier. — Ses faits et gestes.

Archag, fils de Vagharchag, règne treize ans sur l'Arménie. Jaloux de suivre les traces des vertus paternelles, il fonda beaucoup de sages institutions, fit la guerre aux habitans du Pont, laissa sur les bords de la grande mer une marque de sa victoire: Prenant sa lance arrondie par le bout, qu'il avait plongée dans le sang des reptiles, il la brandit d'un bras vigoureux, quoiqu'étant à pied, l'enfonça profondément dans une colonne de pierre très dure qu'il érigea au bord de la mer; colonne adorée long-temps par les habitans du Pont, comme une œuvre des dieux; mais dans une incursion d'Ardachès contre les habitans du Pont, cette colonne, dit-on, fut jetée dans la mer.

A cette époque surviennent de grands troubles dans la chaine de la grande montagne du Caucase, au pays des Poulghares, et grand nombre d'habitans,

մեր, և բնակեցան ներքոյ Կովկասայ՝ յարգաւանդ և ՝ի հացաւէտ տեղիս բազում ժամանակս։

Ի սմանէ նեղեալ ոմանք Բագարատայ վասն զկուռս պաշտելոյ, երկու ՝ի նոցանէ սրով կատարեցան արիաբար ՝ի վերայ հայրենի օրինացն. զորս ոչ պատկառեմ ասել հետեւող լինել Անանիանցն և Եղիազարեանց։ Բայց այլքն յանձն առնուն այսչափ միայն, ՝ի շաբաթու հեծանել յորս և ՝ի պատերազմունս, և զմանկունս թողուլ անթլփատս, յորժամ լինիցին. քանզի անկին էին։ Եւ հրամայեցաւ յԱրշակայ մի տալ նոցա կանայս յամենայն նախարարութեանց, եթէ ոչ ուխտ պայմանի հաստատեսցեն՝ թողուլ ըզթլփատութիւնն։ Զորս յանձն առնուն զերկուսս զայս միայն, այլ ոչ զերկրպագութիւն կռոցն։

Աստանօր սպառին բանք ծերունւոյն Մար Աբաս Կատինայ։

## Ժ

Եթէ ուստի՛ է գիտող պատմութիւնն զկնի մատենիցն Մար Աբաս Կատինայ։

ՍԿԻԶԲՆ արասցուք պատմել քեզ ՝ի հինգերորդ դրոցն Ափրիկանոսի ժամանակագրի, որում վկայէ Յովսեպոս և Հիպողիտոս և այլք բազումք Յունաց։ Քանզի նա բովանդակ փոխադրեաց և որ ինչ ՝ի քարտէսս դիւանին Եդեսիայ՝ որ է Ուռհայ, որ յաղագս թագաւորացն մերոց պատմէր. որ մատեանքն ՝ի Մծբնայ էին փոխեալ անդր. և ՝ի Սինոպայ Պոնտոսէ ՝ի մեհենական պատմութեանցն։ Մի ոք անհաւատասցի, քանզի մեզէն իսկ ականատես եղաք այն դիւանին։ Եւ վկայ քեզ ՝ի մօտոյ երաշխաւորեսցէ Եկեղեսիաստէ գիրք Եւսեբի կեսարացւոյ, զորս

quittant leurs foyer, vinrent en notre pays, s'établirent au-dessous de Gogh, sur des terres très fertiles et très abondantes en blé, y restèrent long-temps.

Les enfans de Pacarad furent tourmentés par Archag pour adorer les idoles; deux d'entre eux périrent vaillamment martyrs de la foi de leurs pères. Je n'hésite pas à dire qu'ils ont imité l'exemple des Ananias et des Éléazar. Les autres fils de Pacarad consentent seulement à monter à cheval le samedi pour aller à la chasse et à la guerre, et à laisser incirconcis leurs enfans à naître. Comme ils étaient sans femmes, défense fut faite par Archag, dans toute les satrapies, de leur donner des femmes en mariage, s'ils ne s'engageaient par serment à abandonner la circoncision. Ils ne se soumettent que sur ces deux points, mais ils refusent d'adorer les idoles.

Ici se termine le récit du vieux et respectable Mar Apas Gadina.

## X.

### D'où cette histoire est-elle tirée après le livre de Mar Apas Gadina ?

Nous commencerons à te faire le récit des événemens d'après le cinquième livre d'Africanus le chronologiste, dont le témoignage est confirmé par Joseph, Hippolyte et beaucoup d'autres auteurs grecs; car Africanus a extrait des cartulaires et des archives d'Édesse, c'est-à-dire Ourha, tout ce qui était de l'histoire de nos rois: ces livres avaient été apportés de Medzpine; Africanus se servit aussi des histoires des temples de Sinope du Pont; que personne n'en doute, car nous avons vu nous-mêmes de nos propres yeux ces archives. En témoignage et garantie te vient encore l'histoire ecclésia-

ետ թարգմանել երանելին վարդապետն Մաշտոց 'ի Հայ լեզու ։ Խնդիր արասցես 'ի Գեղաքունի 'ի գաւառին Սիւնեաց, և գտցես յառաջին հազներրդութեանն յերեքտասաներորդ թուին, զի վկայէ Մի-դեսխայ դիւանին լինել ամենայն գործոց առաջին թագաւորացն մերոց մինչև ցԱրգար, և զկնի Արգարու մինչև ցԵրուանդ ։ Որ այժմ կարծեմ գտանի պահեալ 'ի նոյն քաղաքի ։

## ԺԱ

Յաղագս մերոյ առաջնոյ Արտաշիսի, և յափշտակելոյ զնախագահութիւնն ։

ԱՐՏԱՇԷՍ թագաւորէ Հայոց փոխանակ Արշակայ հօր իւրոյ 'ի քսան և 'ի չորրորդ ամի Արշականայ Պարսից արքայի. և յառաջադէմ եղեալ, ոչ զերկրորդականն ունի գահ, այլ զաւագութեան թեկն առնէ. որում հաւանեալ, յանձն առնու Արշական տալ նմա զնախագահութիւնն ։ Քանզի էր այր հպարտ և պատերազմասէր. որ և արքունիս իւր 'ի Պարսից աշխարհին շինեաց, և դրամ առանձին զիւր պատկերն հարկանէր. և զԱրշական ընդ իւրով ձեռամբ կացուցանէր թագաւոր Պարսից, որպէս զՏիգրան որդի իւր՝ Հայոց ։

Բայց տայ զՏիգրան որդի իւր ցպատանի ումն Մարաժ անուն, որդի Գնտայ, որ 'ի զաւակէ Գնթուկայ՝ որ 'ի Գեղամայ, քանզի էր պատանին նշաւակ 'ի նետաձգութիւն կորովութեան, ուսուցանել զՏիգրան ։ Զնա իշխան արքունականացն արարեալ որսոց, և չէնս պարգևեալ նմա առ Հրազդան գետով, յանուն նորա կոչի ազգն Մարաժնունի ։ Բայց զդդուստր իւր զԱրտաշամայ տայ կին Միհրդատայ ումեմն Մարաց բդեշխի մեծի, որ էր 'ի զաւակէ Միհրը-

stique d'Eusèbe de Césarée, que le bienheureux docteur Machdotz fit traduire en arménien ; cherche à Kéghacouni, au canton de Sunik, et tu trouveras, première rapsodie, N° treize, l'assurance que dans les archives d'Édesse est l'histoire de tous les faits et gestes de nos derniers rois jusqu'à Abgar, et après Abgar jusqu'à Érouant ; documens qui, je pense, se trouvent encore conservés dans cette ville.

## XI.

De notre premier Ardachès. — Il s'empare de la suprématie royale.

Ardachès succède sur le trône d'Arménie à Archag son père, la vingt-quatrième année du règne d'Archagan, roi des Perses. Vu l'agrandissement de sa fortune, il ne veut plus le deuxième trône, il veut le premier rang ; Archagan consent à lui donner la suprématie royale. Ardachès était un guerrier superbe, ami des combats. Il se bâtit un palais en Perse, fit frapper monnaie à son effigie. Il tint Archagan, roi des Perses, sous sa puissance; et fit Dicran, son propre fils, roi d'Arménie.

Ardachès confie l'éducation de Dicran, son fils, à un jeune homme nommé Varaj, fils de Tad, de la race de Carnig, descendant de la race de Kégham. Varaj était un jeune homme célèbre par son adresse et sa force au tir de l'arc ; créé intendant des chasses royales, Varaj reçoit encore des villages près du fleuve Hraztan ; de son nom s'appelle sa race, Varajnouni. Ardachès donne sa fille Ardachama en mariage à Mihrdate, grand prince des Ibériens, issu de la race

դատայ՝ Պարէհի նախարարի, զոր կացուցեալ էր Աղեքսանդր 'ի վերայ գերութեանն վերիացւոց, որպէս յառաջագոյն պատմեցաք. և հաւատայ սմա ըղկողմնակալութիւն հիւսիսային լերանցն և Պոնտոս ծովու:

## ԺԲ

*Խաղալն Արտաշիսի յարևմուտս, և ձերբակալ առնել զԿրիւսոս, և աւարել ընձեռել Հայոց զպատկերս կռոց:*

ՅԱՅՆԺԱՄ հրաման տայ Արտաշէս զօր յարուցանել յարևելից և 'ի հիւսիսոյ բազում յոյժ, մինչև ոչ գիտել նմա զհամարն, այլ յանցս և յիջևանս քար ըստ մարդաթուի կարկառ՝ նշան բազմութեանն թողուլ: Խաղայ յարևմուտս, և ձերբակալ արարեալ զԿրիւսոս թագաւոր Լիւդացւոց:

Եւ գտեալ յԱսիայ պղնձաձոյլ ոսկեզօծ պատկերս զԱրտեմիդեայ և զՀերակլեայ և զԱպողոնի, տայ բերել յաշխարհս մեր, զի կանգնեսցեն յԱրմաւիր: Զոր առեալ քրմապետացն, որ էին յազգէ Վահունեաց, զԱպողոնին և զԱրտեմիդայն կանգնեցին յԱրմաւիր. իսկ զՀերակլեայն զառնապատկերն, զոր արարեալ էր 'ի Սկիւղեայ և 'ի Դիպինոսէ կրետացւոյ, զՎահագն իւրեանց վարկանելով նախնի, կանգնեցին 'ի Տարօն յիւրեանց սեփհական գեւղն յԱշտիշատ, յետ մահուանն Արտաշիսի:

Բայց Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց, ընու զՈվկիանոս բազմութեամբ նաւուց, ծառայեցուցանել կամելով զբոլոր արևմուտս: Քանզի մեծ յոյզք խռովութեան եղեալ 'ի Հռովմ, ոչ ոք ընդդիմանայ նմա հզօրապէս: Այլ ոչ գիտեմ ասել յորպիսի ազդմանէ, ահագին իմն աղմուկ

de Mihrdate, satrape de Darius, qu'Alexandre plaça à la tête des captifs Ibériens, comme nous l'avons rapporté plus haut. Ardachès confie à Mihrdate le gouvernement des montagnes septentrionales et de la mer du Pont.

## XII.

**Ardachès s'en va en occident, fait Crésus captif, donne à l'Arménie les idoles qu'il a pillées en Asie.**

Ardachès fait lever en orient, au nord, une si grande masse de troupes, qu'il n'en sait pas le nombre; mais il ordonne de laisser aux lieux de passage et de halte une pierre par chaque homme, pierre servant à former un monceau en signe de cette multitude. Ardachès va à l'occident; il fait captif Crésus, roi des Lydiens.

Ayant trouvé en Asie les statues de bronze doré d'Artémis, d'Hercule et d'Apollon, il les fait porter en notre pays pour les ériger à Armavir. Les pontifes qui étaient de la race Vahnouni, élevèrent à Armavir les statues d'Artémis et d'Apollon; quant à la statue virile d'Hercule, faite par Scyllis et Dipénus de Crète, la prenant pour leur ancêtre Vahakn, ils l'élevèrent en la contrée de Daron, dans leur propre village Achdichad, après la mort d'Ardachès.

Mais Ardachès, après avoir soumis le continent situé entre les deux grandes mers, remplit l'Océan de la multitude de ses voiles, pour asservir tout l'occident; car le trouble et l'anarchie étant à Rome, personne n'oppose une vive résistance à Ardachès. Je ne saurais dire par quelle funeste influence, un effroyable dé-

լեալ չփոթից, բազմութեան զօրացն զմիմեանս կոտորեալ. իսկ Արտաշէս փախուցեալ մեռանի, որպէս ասեն յիւրոց զօրաց. թագաւորեալ ամս քսան և հինգ:

Բայց և Տիգրան առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդայ, զԱթենայ, զՀեփեստոս, զԱփրոդիտեայ, տայ բերել 'ի Հայս. որ ոչ ժամանեալ միջամուտ լինել յաշխարհս, լուեն զգոյժ մահուանն Արտաշիսի. և փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի. և քուրմք գնացին զհետ լինելով, դադարեն առ նոսա:

ԺԳ

Վկայութիւնք տիեզերակալութեանն Արտաշիսի և կալելոյն զԿրիւսոս, յայլոց պատմագրաց:

ԶԱՅՍ ասացեալ պատմագրացն Յունաց, ոչ միոյ կամ երկուց, այլ բազմաց. ընդ որ տարակուսեալ մեր՝ բազում խոյզ խնդրոյ արարաք: Վասնզի լսեաք 'ի պատմութեանց ոմանց՝ Կիւրոսի սպանեալ զԿրիւսոս, և բարձեալ զթագաւորութիւնն լիւդեացւոց: Նաև դարձեալ պատմի առարկութիւնն Կրիւսեայ և Նեկտանեբայ. և Նեկտանեբոս այս վերջին թագաւոր է Եգիպտացւոց 'ի Մանեթոսէ պատմեալ, զոր ոմանք հայր Աղեքսանդրի ասացին: Նաև գտանեմք զժամանակս Կրիւսոսի երկերիւր ամաւ յառաջ քան զՆեկտանեբայ, իսկ զՆեկտանեբայ ժամանակս աւելի ևս երկերիւր ամաւ յառաջ եղեալ քան զառաջին Արտաշիսի թագաւորի Հայոց:

Բայց քանզի բազումք են, որ ասեն զԿրիւսոս մերոյ Արտաշիսի կալեալ, և ոճով իմն պատմեն, ես հաւանիմ: Վասնզի ասէ Պոլիկրատէս այսպէս. Մեհ ինձ Արտաշէս պարթև քան զմակեդոնացին Աղեք-

sordre s'étant élevé, ces troupes innombrables s'exterminèrent mutuellement. Ardachès fuit et meurt, dit-on, de la main de ses propres soldats, après avoir régné vingt-cinq ans.

Ardachès ayant pris dans l'Hellade les statues de Jupiter, d'Artémis, d'Athéna, d'Epheste, d'Aphrodite, les fait transporter en Arménie. Ces statues ne sont pas encore arrivées au centre du pays, que déjà on apprend la nouvelle de la mort d'Ardachès. On fuit, on jette ces statues dans le fort d'Ani; mais les prêtres, s'attachant à ces idoles, restent près d'elles.

## XIII.

**Preuves des grands conquêtes d'Ardachès et de la captivité de Crésus, d'après les autres historiens.**

Ces faits sont rapportés par les historiens grecs, non par un seul ou deux historiens, mais bien par un grand nombre. Doutant encore de la vérité, nous avons fait beaucoup de recherches; car nous avions appris de quelques histoires que Cyrus avait fait périr Crésus, et s'était emparé du royaume de Lydie; on rapporte aussi les combats de Crésus et de Nectanébis. Ce Nectanèbis est le dernier roi d'Égypte, selon Manéthon, et serait, au dire de quelques uns, père d'Alexandre. Nous trouvons l'époque de Crésus deux cents ans avant l'époque de Nectanébis, et celle de Nectanébis plus de deux cents ans avant Ardachès premier roi d'Arménie.

Mais puisqu'il est plusieurs écrivains qui disent que notre Ardachès prit Crésus, ce qu'ils rapportent avec assez de détails, je veux bien le croire; car Polycrate s'exprime ainsi : « Ardachès le Parthe, me paraît supérieur

le malin !

սանդըր, զի կալով յիւրում աշխարհին, իշխեաց Փւեքայ և Բաբելոնի. և չև ընդ Ալիւս գետ ան-ցեալ, զլուծականն սատակեաց զզօրս, և կալաւ զԿրիւսոս. և յառաջ քան յԱսիայ հասանելն՝ յԱսիա-տիկէ դղեկէն քարոզեցաւ: Աւաղ բախտին. միայն թէ 'ի տէրութեանն և ոչ 'ի փախստեանն էր փո-խանեալ:

Համգոյն դմին ասէ Ասւագարոս. Փոքր Աղեքսան-դրի և Դարեհի պատերազմաւն Արտաշիսին բաղդա-տեալ. քանզի նոցայն ոչ փոշւոյն մաքուր երևէր լոյս տուընջեանն, այլ սա ծածկեաց նետաձգութեամբն և ստուերացոյց զարեգակն, ձեռագործ գիշեր զմի-ջօրէին արարեալ: Ոչ փախստեայ համբաւաբեր լիւ-դացւոցն թողեալ. այլ և զթագաւորն նոցին զԿրիւ-սոս 'ի տապակի հրամայեաց կացուցանել: Առ-սորա և ոչ ուխք զգետս յատուարացուցին, արքմամբն 'ի ձմեռնայինն նուաղութիւն իջուցանելով. վասն զի և զթուոցն եցոյց տկար՝ բազմութեամբ զօրացն, մինչ զի չափոյ պէտք եղեն առաւել քան զհամարոյ: Ընդ այս ոչ հպարտացեալ, այլ արտասուեաց ասելով. Աւաղ փառացս անցաւորի:

Գրէ և Կամադրոս այսպէս. Խաբկանք լինէին հպարտացելոցն լիւդացւոց, Կրիւսեայ Պիւթիայ հարցուածն պատասխանելով. Կրիւսոս անցեալ ընդ Ալիւս գետ քակեսցէ զիշխանութիւնս: Զոր նո-րա զօտարաց կարծեցեալ, զինքն քակէ. քանզի կա-լեալ զնա պարթևին Արտաշիսի, հրամայեաց հա-նել յերկաթեղէն տապակ: Իսկ Կրիւսոսի յիշեալ զբանն Սողոնի աթենացւոյ, ասէ յիւր լեզուն. Ո՛վ

à Alexandre de Macédoine, parce que, tout en restant dans son pays, il commanda à Thèbes et à Babylone ; sans traverser le fleuve Alys, il tailla en pièces les troupes lydiennes, et prit Crésus ; avant son arrivée en Asie, son nom était connu, publié dans l'Attique. Malheur à sa destinée ; si du moins il était mort sur le trône, et non en état de déroute ! »

Évagrus parle dans le même sens : « La guerre d'Alexandre et de Darius est peu de chose, comparée aux guerres d'Ardachès ; car la poussière soulevée par la marche d'Alexandre et de Darius obscurcissait la clarté du jour, mais Ardachès cacha le soleil par la multitude des flèches tirées, et produisit les ténèbres, faisant ainsi, par l'œuvre des mains de l'homme, la nuit au milieu du jour. Il ne laisse pas un seul des Lydiens fuir et porter la nouvelle de leur défaite, il fait mettre leur roi Crésus dans une poêle de fer. A cause d'Ardachès les torrens ne grossirent pas le fleuve : ses eaux absorbées en grande partie par les soldats, étaient descendues au point de décroissance où elles sont en hiver. Ardachès rendit vaine toute la puissance des chiffres devant la multitude de ses troupes, au point qu'il fallût avoir recours aux mesures, plutôt qu'aux nombres. Loin de se glorifier de tout cela, Ardachès pleurait, disant : « O malheur ! ma gloire est une gloire passagère ! ».

Camadrus s'exprime ainsi : « Les Lydiens dans leur orgueil se laissèrent tromper par la réponse de l'oracle de Pythe à Crésus : « Crésus en passant le fleuve Alys, brisera la puissance ». Crésus entendait la puissance des étrangers, il se brise lui-même ; fait captif par le Parthe Ardachès, il est jeté dans une poêle de fer. Alors Crésus, se rappelant les paroles de Solon, l'Athénien, dit en sa langue : « O Solon, Solon ! tu avais bien

Սողոն Սողոն, գեղեցիկ բարբառեցար, ոչ երանել զբարեբախտութիւն մարդոյ մինչև ցվախճան։ Այս լուեալ որ մերձն կային, պատմեցին Արտաշրի, եթէ զնոր ոմն աստուած կարդայ Կրիւսոս։ Այս գթացեալ Արտաշրի, հրամայեաց ածել, և հարցեալ և ուսեալ, թէ զինչ է որ աղաղակեացն, հրամայեաց ներել զտանջանսն։

Գրէ և Փղեգոնիոս. Ամենայն թագաւորաց հուժկու եղեալ պարթևն Արտաշէս, և ոչ միայն զլիւդացիս վանեալ և զԿրիւսոս կալեալ, այլ զԵղլէսպոնտոս և 'ի Թրակէ զտարերացն փոխեաց զբնութիւն. ծովագնաց ընդ երկիր բերեալ լինէր, և ընդ ծով հետևակելով. թետեղացւոցն սպառնալով, և համբաւն հիացուցանէր զհելլենականն։ Կործանեաց զլակեդեմոնացիս, փախոյց զփոկէացիս, զովկրացիք անձնատուրք եղեն, բիւտացիք մասն են 'ի կազմածոյ նորա. առ հասարակ նմա Եղլադայ մատուցանէր զահն։ Յետ փոքու ժամանակի աղէտք անցին զամենեքումբք. ոչ այնքան թշուառացաւ Կրիւսոս ընդ Մասքութս պատերազմելով, ոչ այսպիսի կիրս կրեաց Դարեհ 'ի սկիւթացւոցն պահուստ, և ոչ Կամբիւսէս յեթովպացիս. փոքր և Քսերքսին յԵղլադայ զօրու երթալն, թողլով նոցա զգանձս և զխորանս, միայն կենդանի փախուցեալ մազապուր։ Այլ սա մեծամեծ յաղթանակօք պանծացեալ, 'ի յիւրոց զօրացն խողխողի։

Արդ ես հաւատարմութեան արժանի համարիմ զայսոսիկ պատմութիւնս. և զայն Կրիւսոսի, որ առ Կիւրոսիւ և կամ Նեքտանեբաւն պատմին, կամ սուտ լեալ, և կամ միով անուամբ բազում թագաւորաց վարեալ, որպէս յոլովից է սովորութիւն։

raison de ne pas vouloir proclamer le bonheur d'un homme jusqu'au moment de sa fin». Ce qu'ayant entendu les plus proches spectateurs, ils rapportèrent à Ardachès que Crésus invoquait quelque nouveau dieu. Ardachès, touché de compassion, se fit amener le captif, l'interrogea, et ayant appris ce que signifiaient ces cris, il suspend, arrête les tourmens.

Phlédon écrit aussi : « Le Parthe Ardachès, le plus puissant de tous les rois, non seulement défit les Lydiens, enchaina Crésus, mais encore, dans l'Hellespont, dans la Thrace, il changea la nature des élémens: sur terre il marchait à pleines voiles, sur mer il marchait à pied. Il menaça la Thessalie, le bruit de son nom remplit toute la Grèce d'étonnement; il défit les Lacédémoniens, mit en fuite les Phocéens; les Locriens se donnèrent à lui, les Béotiens font partie de ses peuples; l'Hellade en général tremblait devant lui, et peu après tous les malheurs surpassèrent pour lui tous les malheurs. Cyrus en combattant contre les Massagètes, Darius chez les Scythes, Cambyse chez les Éthiopiens, n'éprouvèrent pas tant d'infortune; Xerxès, dans son expédition en Hellade, abandonnant ses trésors, ses tentes, échappe au moins sain et sauf; mais lui, Ardachès, si fier de ses grandes victoires, est assasiné par ses propres troupes ».

Je regarde ces récits comme dignes de croyance. Je regarde le Crésus qui, dit-on, vivait sous Cyrus ou Nectanébis, comme un personnage imaginaire, ou bien plusieurs rois auraient eu le même nom, ainsi que c'est la coutume pour la plupart.

## ԺԴ

Յաղագս թագաւորութեանն Տիգրանայ միջնոյ և ընդդէմ կալոյ զօրացն Յունաց, և զմեհեանն շինելոյ, և որշաւանս առնելոյ 'ի Պաղեստին:

ՅԵՏ Արտաշիսի առաջնոյ թագաւորէ Տիգրան որդի նորա յիննևտասաներորդ ամի Արշականայ թագաւորի Պարսից: Սա ժողովեալ զզօրս Հայոց, ընդդէմ երթայ զօրացն Յունաց. որք յետ մահուանն Արտաշիսի հօրն իւրոյ և ցրուելոյ զօրացն՝ հետամուտ լեալ դիմեալ գային յաշխարհս մեր: Որոյ ընդդէմ պատահեալ Տիգրանայ, արգելեալ 'ի վերջնահանջէ: Սա 'ի քեռայր իւր Միհրդատ հաւատացեալ զՄաժաք և զհողս միջերկրայցն, և զօր բազում թողեալ նմա, դառնայ յաշխարհս մեր:

Առաջին գործ զմեհեանսն շինել կամեցաւ: Իսկ քրմացն, որ եկեալ էին 'ի Յունաց, զմտաւ ածեալ՝ զի մի 'ի խորագոյն Հայս վարիցին, պատճառեցան ըղձութիւնս, իբր թէ դիքն անդէն կամին զմնալն: Որում հաւանեալ Տիգրան, կանգնեաց զոլոմպիական պատկերն Դիոսի յամուրն յԱնի, և զԱթենաս 'ի Թիլ, և զԱրտեմիդայ զմեւս պատկերն յԵրիզայ, և զՀեփեստոն 'ի Բագայառինջ: Բայց զԱփրոդիտայ զպատկերն իբրև Հերակլեայ տարփաւորի՝ առ նորին պատկերին Հերակլեայ հրամայեաց կանգնել յԱշտից տեղւոջն: Սա ցասուցեալ ընդ վահունիսն, եթէ ընդէ՞ր յիւրեանց սեպհականին իշխեցին կանգնեցին զպատկերն Հերակլի առաքեալ 'ի նորին հօրէ, ընկենու զնոսա 'ի քրմութենէն, և զգեւղն յարքունիս առնու, յորում պատկերքն կանգնեցան:

Սա այսպէս մեհեանս շինեալ, և առաջի մեհենիցն բագինս կանգնեալ, զոհս ամենայն նախարարացն

## XIV.

**Règne de Dicran II. — Résistance contre les troupes grecques. — Construction des temples. — Invasion de Dicran en Palestine.**

Après Ardachès I[er], monte sur le trône Dicran, son fils, la dix-neuvième année du règne d'Archagan, roi des Perses. Dicran, à la tête des troupes arméniennes, s'avance contre l'armée des Grecs, qui, après la mort d'Ardachès, père de Dicran, et la dispersion de ses troupes, par une marche progressive étaient arrivés en notre pays. Dicran vient s'opposer à leurs incursions, qu'il arrête enfin ; il remet alors à son beau-frère Mihrdate le gouvernement de Majag et des provinces méditerranées, lui laisse quantité de troupes, et retourne en notre pays.

Son premier soin fut de bâtir des temples; mais les prêtres venus de Grèce, craignant de se voir rélégués au fond de l'Arménie, prétéxtèrent que leurs idoles voulaient se fixer en ces lieux. Dicran, accédant à ces vœux, érige la statue de Jupiter Olympique dans la forteresse d'Ani; la statue d'Athéna, à Til; la statue d'Artémis, à Ériza, et celle d'Épheste, à Pacaïarindch. Quant à la statue d'Aphrodite, comme amoureuse d'Hercule, il la fit placer près de la statue d'Hercule, à Achdichad. Irrité contre les Vahnouni, qui avaient érigé dans leur propre domaine la statue d'Hercule envoyée par son père, il les dégrade du sacerdoce, et confisque au profit de la couronne le village où ils avaient érigé la statue.

Les temples construits, et devant ces temples les idoles posées, le roi ordonne à tous les satrapes d'of-

հրամայէ մատուցանել հանդերձ երկրպագութե՛ք . զոր չառեալ յանձն ազգին բագրատունեաց, ըղ-միոյ զլեզուին հատեալ, որում անուն էր Սուրդ, վասն պատկերացն անարգութեան, և ոչ այլ իւիք խոշտանգէ . քանզի յանձն առին ուտել՚ի զոհիցն և զմիս խոզի, թէպէտ և ոչ ինքեանք զոհեցին երկրը-պագութեամբ : Վասն որոյ առնու՚ի նոցանէ՚ի բաց զիշխանութիւն զօրուն . բայց միայն զթագակապ ասպետութիւնն ոչ հանէ : Ինքն իջանէ՚ի Միջա-գետս, և գտեալ անդ զՆարշամինայ զպատկերն, զոր՚ի փղոսկրոյ և՚ի բիւրեղէ կազմեալ էր արծա-թով, հրամայէ տանել կանգնել յաւանին Թորդան:

Յետ նորին հետայն դիմէ յաշխարհն պաղեստինա-ցւոց վրէժ պահանջել՚ի Պտղոմայիդ Կղեոպատրայ յաղագս Դիոնիսի որդւոյ նորա առ հայր իւր յան-ցանաց : Առեալ գերի բազում և՚ի Հրէիցն, նստի շուրջ զՊտղոմայիդ քաղաքաւ : Իսկ դշխոյն Հրէից Աղեքսանդրիայ, որ և Մեսաղինայ, որ էր լեալ կին Աղեքսանդրի, որդւոյ Յոհաննու, որդւոյ Շմաւոնի, եղբօր Յուդայ Մակաբէի, որ զայնու ժամանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից, ինչս բազումս տալով դարձոյց զնա անտի : Քանզի էր լուեալ և համբաւ, թէ Վայկուն ոմն անուն յեղուզակ խռո-վէ զերկիրն Հայոց, զլեառն ամուր կալեալ . որ և այժմ յանուն յեղուզակին կոչին վայկունիք :

ԺԵ

Դիմումն՚ի մեզ Պոմպէոսի հռոմայեցւոց զօրավարի, և առնուլն զՄա-ժաք, և մահն Միհրդատայ :

ՅԱՅՆՄ ժամանակի Պոմպէոս հռովմայեցւոց զօ-րավար զօրօք բազմօք եկեալ հասեալ՚ի միջերկրայս,

frir des sacrifices aux dieux, de les adorer : la famille Pacradouni s'y refuse ; un de ses membres, nommé Assout, a la langue coupée pour avoir méprisé les idoles. Il n'éprouve pas d'autres tourmens, car les Pacradouni consentirent à manger de la viande des victimes, et de la chair de porc, quoiqu'ils ne sacrifiassent pas eux-mêmes, et n'adorassent pas les idoles. Pour cela, Dicran leur ôte le commandement des troupes, mais il ne leur ôte pas leur chevalerie qui jouit du droit de mettre la couronne sur la tête des rois. Dicran va en Mésopotamie, il y trouve la statue de Barchamine, faite d'ivoire, de cristal et d'argent ; il la fait emporter, ériger au village Tortan.

Aussitôt Dicran marche sur la Palestine, pour demander à Cléopâtre Ptolémaïde vengeance des injures faites par Denis son fils à Ardachès, père de Dicran ; il fait un grand nombre de Juifs prisonniers, investit la ville de Ptolémaïde. La reine des Juifs, Alexandra, c'est-à-dire Messaline, femme d'Alexandre, fils de Jean, fils de Simon, frère de Juda Machabée, Alexandra qui tenait alors le trône de la Judée, obtint, à force de trésors le départ de Dicran : car ce prince avait reçu la nouvelle qu'un brigand nommé Vaïgoun désolait l'Arménie, s'était emparé d'une montagne forte, du nom du brigand appelée à présent Vaïgounik.

## XV.

Arrivée chez nous de Pompée, général romain. — Prise de Majag. — Mort de Mihrdate.

En ce temps-là, Pompée, général des Romains, arrive avec une armée considérable sur les terres mé-

զՍկաւրոս սպարապետ իւր յԱսորիս առաքէ՝ տալ պատերազմ ընդ Տիգրանայ։ Որոյ եկեալ, և ոչ պատահեալ Տիգրանայ, քանզի էր դարձեալ յիւր աշխարհն վասն խուժապանաց յեղուզակին, անցեալ Սկաւրոս 'ի Դամասկոս, և տեսեալ զքաղաքն առեալ 'ի Մետեղայ և 'ի Լուղայ, զնոսա հալածեալ անտի, ինքն 'ի հրէաստան փութայր հասանել 'ի վերայ Արիստաբուղի օգնականութեամբ եղբօր նորա Երիցու՝ Հիւրկանու քահանայապետի, որդւոյ Աղեքսանդրի։

Իսկ Պոմպէոս պատերազմեալ ընդ Միհրդատայ, տեսանէ սաստիկ ընդդիմակացութիւնս և ահագին մարտս, և վտանգի յոյժ. սակայն բազմութեամբն յաղթեալ, փախստական լինի Միհրդատ 'ի կողմանս Պոնտոսի։ Յորմէ իբր թէ զերծեալ Պոմպէոս, որում ակն ոչ ունէր, և առեալ զՄաժաք, և կալեալ զորդի նորա զՄիհրդատ, նստուցանէ զօր 'ի քաղաքին. և ինքն ոչ հետամուտ լինի նմա, այլ ընդ Ասորիս 'ի հրէաստան փութայ հասանել։ Իսկ 'ի ձեռն հօրն պոնդացւոյ Պիղատոսի զՄիհրդատ սպանանէ թունաւոր դեղովք։ Վկայէ այսմ բանիս և Յովսէպոս 'ի Ճառին, որ վասն Ապղոսամին պատմէ, այսպէս ասելով. Պոմպէի հուպ յԵրիքով հասանելն աւետիք մահուանն Միհրդատայ։

ԺԶ

Յաղագս յարձակմանն Տիգրանայ 'ի վերայ զօրացն հռոմայեցւոց, և խոյս տալ Գաբինոսի, և արձակելոյ զմանուկն Միհրդատ։

Իսկ Թագաւորն Հայոց Տիգրան զգերութիւն Հրէիցն նստուցեալ 'ի յԱրմաւիր և 'ի յաւանին Վարդգէսի, որ 'ի վերայ Քասաղ գետոյ, և զյեղուզական բնաջինջ արարեալ 'ի լեռնէն, և զսուգն Միհրդատայ կատարեալ, խաղայ գնայ յԱսորիս 'ի

diterranées, envoie Scaurus, son lieutenant en Syrie, livrer combat à Dicran. Scaurus n'ayant pu joindre Dicran, car ce prince était retourné dans ses états à cause des déprédations du brigand, Scaurus passa à Damas, trouva cette ville au pouvoir de Métellus et de Lollius. Après les avoir chassés, il se hâta d'arriver en Judée, et de fondre sur Aristobule avec le secours de son frère ainé Hyrcanus, grand-prêtre, fils d'Alexandre.

Pompée, dans sa guerre contre Mihrdate, trouve une vigoureuse résistance, d'affreux combats, de grands périls. Cependant le nombre l'emporte, Mihrdate est jeté fugitif dans les contrées du Pont. Pompée, comme délivré de tout péril par l'effet d'un bonheur inespéré, ayant fait captif Mihrdate, fils de Mihrdate, pris Majag, y met garnison; au lieu de poursuivre le vaincu, il se hâte d'arriver en Judée par la Syrie. Il fait empoisonner Mihrdate par le père de Ponce-Pilate; c'est ce que confirme Joseph, lorsque, en parlant d'Abersam, il dit: « Pompée, près de Jérico, reçoit l'heureuse nouvelle de la mort de Mihrdate ».

## XVI.

Dicran fond sur l'armée des Romains. — Fuite de Gabinius. — Délivrance du jeune Mihrdate.

Le roi d'Arménie Dicran, ayant installé les Juifs captifs à Armavir et au bourg Vartkès sur le fleuve Cassagh, exterminé les brigands de la montagne, fait le deuil de Mihrdate, marche en Syrie sur l'armée des Romains, pour en tirer vengeance. Contre Dicran

վերայ զօրացն Հոռոմայեցւոց՝ առ 'ի վրէժս պահանջել։ Ընդդէմ նորա գայ Գաբիանոս սպարապետն Հոռոմայեցւոց, զոր թողեալ էր Պոմպիոս 'ի դառնալն իւրում 'ի Հռոմ. և Գաբիանոս ոչ իշխեաց 'ի դիմի հարկանել Տիգրանայ, դառնայ յԵփրատայ յԵգիպտոս, զՊտղոմէոս ունելով պատճառս։ Այլ գաղտնի հաշտութիւն խօսեցեալ ընդ Տիգրանայ, տայ զքեռորդին նորա զպատանին Միհրդատ, զորդին Միհրդատայ, զոր կալեալ էր Պոմպէի 'ի Մաժաք, ասելով թէ գաղտ գնաց։

## ԺԷ

Պատերազմ Կրասոսի, և սատակումն նորին 'ի Տիգրանայ։

ԶԿԱՍԿԱԾ առեալ Հոռոմայեցւոցն, զԳաբիանոս փոխեն, և զԿրասոս փոխանակ առաքեն. որոյ եկեալ և առեալ զամենայն գանձս գտեալս 'ի տաճարին Աստուծոյ յԵրուսաղէմ, խաղայ 'ի վերայ Տիգրանայ։ Այլ անցեալ ընդ Եփրատ, սատակի ամենայն զօրօքն հանդերձ 'ի պատերազմելն ընդ Տիգրանայ։ Զորոյ ժողովեալ Տիգրանայ զգանձսն, դառնայ 'ի Հայս։

## ԺԸ

Թէ որպէս Կասսիոս ընդդիմակաց եղև Տիգրանայ, և ապստամբելն Միհրդատայ, և շինելն զԿեսարիայ։

ԶՀԱՐԵԱԼ Հոռոմայեցւոց, առաքեն զԿասսիոս անթիւ զօրօք։ Սա եկեալ և ընդդէմ կացեալ, չտայ թոյլ զօրացն Հայոց անցանել ընդ Եփրատ և ասպատակել յԱսորիս։

s'avance Gabinius, général romain, que Pompée avait laissé à sa place, pour retourner à Rome. Gabinius, qui ne peut résister à Dicran, retourne par l'Euphrate en Égypte, sous prétexte de marcher contre Ptolémée. Par un traité secret avec Dicran, Gabinius lui rend le fils de sa sœur, le jeune Mihrdate, pris autrefois par Pompée, à Majag, et dit que le prisonnier s'est échappé.

## XVII.

Combat de Crassus. — Sa défaite par Dicran.

Les Romains, soupçonnant Gabinius, le changent, et envoient Crassus à sa place. Le nouveau général, à son arrivée, s'empare de tous les trésors qu'il trouve dans le temple de Dieu, à Jérusalem, et marche contre Dicran; mais après avoir passé l'Euphrate, il est défait avec toutes ses troupes, par Dicran, qui tout chargé des trésors et des dépouilles de Crassus, retourne dans ses états.

## XVIII.

Comment Cassius résista-t-il à Dicran? — Révolte de Mihrdate. — Reconstruction de Césarée.

Les Romains, indignés de leurs défaites, envoient Cassius, avec des troupes innombrables. Ce général, à peine arrivé, oppose une vigoureuse résistance et ne laisse pas aux troupes arméniennes le pouvoir de passer l'Euphrate et de faire incursion sur les terres de la Syrie.

Զայսու ժամանակաւ թերահաւատութիւն լեալ Տիգրանայ 'ի պատանին Միհրդատ, չկարծելով ինքեան քուեր որդի, չտայ նմա մասն ինչ իշխանութեան, այլ և ոչ զիւր աշխարհն Վրաց: Եւ Միհրդատայ արհամարհութիւն կրեալ 'ի քեռւոյն իւրմէ Տիգրանայ, ապստամբութեամբ անկանի առ Կեսար. իշխանութիւն գտեալ 'ի նմանէ զՊերգեայ քաղաքի, զօրավիգ օգնականութեան լինի Անդիպատրոսի հօր Հերովդի, Կեսարու հրամանաւ: Սա շինէ զՄաժաք ընդարձակագոյն և պայծառ շինուածովք, և անուանէ Կեսարիայ 'ի պատիւ Կեսարու: Եւ յայնմ հետէ բարձեալ լինի իշխանութիւն Հայոց 'ի քաղաքէն յայնմանէ:

## ԺԹ

Յաղագս միաբանութեան Տիգրանայ և Արտաշիսի, և առաքեալ ասպատակ 'ի Պաղեստինէ. և գերութիւն Հիւրկանու քահանայապետի և այլ բազմութեան Հրէից:

Յետ այսր ամենայնի 'ի հիւանդութիւն եղեալ Տիգրան, աղերսէ 'ի սէր զԱրտաշէզ արքայ Պարսից, յաղագս հպարտութեան հօրն՝ հանելով 'ի նոցանէ զնախագահութիւնն: Իսկ սա իւրովք կամօք զերկրորդականն ունելով ըստ իրաւանց, դարձուցանէ 'ի նա զնախագահութիւնն. և 'ի հաշտութիւն ածեալ զԱրտաշէզ, առնու 'ի նմանէ զօր յօգնականութիւն ինքեան: Յայնմ ժամանակի առեալ Տիգրանայ զԲարզափրան նահապետ Ռշտունեաց նախարարութեանն, սպարապետ կացուցանէ Հայոց և Պարսից զօրաց, և առաքէ 'ի վերայ զօրացն հռովմայեցւոց, հրաման տուեալ զբնակիչս աշխարհին Ասորւոց և պաղեստինացւոց 'ի հաշտութիւն հաւանութեան խօսել: Նմա ընդ առաջ լինի ոմն Պակարոս անուն, որոյ հայրն թագաւոր լեալ Ասորւոց,

Vers la même époque, Dicran, qui se méfie du jeune Mihrdate, ne le croyant pas fils de sa sœur, ne lui donne aucune part de souveraineté, lui refuse même ses propres états d'Ibérie. Mihrdate, accablé des mépris de son oncle Dicran, se révolte et se retire près de César, en reçoit la principauté de la ville de Perga; par l'ordre de César, il va au secours d'Antipâter, père d'Hérode. Mihrdate rebâtit sur un plan plus étendu Majag qu'il nomme Césarée, en l'honneur de César. Dès lors cette ville échappe à la domination de l'Arménie.

## XIX.

Alliance de Dicran et d'Ardachès. — Incursion en Palestine. — Captivité du grand-prêtre Hyrcarnus, et d'une multitude de Juifs.

Après tous ces faits, Dicran tombé malade, invite à une réconciliation amicale Ardachès, roi des Perses, dépouillé, par l'orgueil du père de Dicran, de la suprématie. Dicran, de sa propre volonté, reprenant le second rang, restitue le premier à Ardachès, fait amitié avec ce prince, en reçoit un secours de troupes; alors Dicran choisit Parzapran, chef de la satrapie des Rechdouni, pour général de l'armée des Arméniens et des Perses, l'envoie contre les Romains, avec ordre de traiter avec les habitans de la Syrie et de la Palestine. Vers Parzapran s'avance un certain Pacorus dont le père est roi de Syrie, et qui lui-même est parent d'Antigone, de la race d'Aristobule ; il vient près de Parzapran, chef des Rechdouni, général des Arméniens et des Perses, lui promettre ~~cinq cents~~ fem-
100 femmes

և ինքն խնամի Անտիգոնեայ Արիստաբուղեանց։ Եւ եկեալ առ Բարզափրան նահապետ ռըշտունեաց և սպարապետ Հայոց և Պարսից, և խոստանայ հինգ հարիւր կին գեղեցիկ և հազար քանքար ոսկւոյ, զի օգնեսցէ նոցա՝ ընկենլով ՚ի թագաւորութենէ Հրէից զՀիւրկանոս, և թագաւորեցուցանել զԱնտիգոնոս։

Իբրև ետես Հիւրկանոս Հրէից քահանայապետ և թագաւոր, և Փասայեղոս եղբայր Հերովդէի, եւթէ զզօրս հռոմայեցւոց փախստական արարեալ, զոմանս ՚ի ծով, զոմանս ՚ի քաղաքս, խաղաղութեամբ ընդ երկիրն անցանէր Բարզափրան, խօսին և ինքեանք զխաղաղութիւն առ Բարզափրան։ Եւ նորա զԳնէլ ոմն տակառապետ արքային Հայոց, որ էր յազգէն գնունեաց, առաքէ յԵրուսաղէմ համդերձ հեծելազօրու, իբր թէ ՚ի պատճառս խաղաղութեան. բայց ՚ի գաղտնիս՝ օգնել Անտիգոնեայ։ Եւ Հիւրկանոս զտակառապետն ամենայն զօրօքն ոչ ընդունէր յԵրուսաղէմ, այլ միայն հինգ հարիւր հեծելովք։ Եւ տակառապետին դաւով խրատ տուեալ Հիւրկանու՝ զի առ Բարզափրան երթիցէ վասն աւերածոյ աշխարհին. և ինքն խոստանայր լինել բարեխօս։ Եւ Հիւրկանու երդումն խնդրեալ ՚ի Բարզափրանայ, երդնու նմա յարեգակն և յամենայն պաշտամունս իւրեանց երկնայինս և երկրայինս, և յարև Արտաշէզի և Տիգրանայ։ Ընդ որ վստահացեալ Հիւրկանոս, թողու զՀերովդէս ՚ի վերայ Երուսաղէմի, և զՓասայելոս երէց եղբայր Հերովդէի առեալ ընդ իւր, գայ առ Բարզափրան ՚ի ծովեզրն ՚ի գեօղն որ կոչի Եքտիպան։

Եւ Բարզափրան խորամանկութեամբ պատուէր զնոսա. և ինքն յանկարծակի գնացեալ անտի, մնացելոց զօրացն հրաման տայր՝ ՚ի բուռն առնուլ զնոսա, և ՚ի ձեռն Անտիգոնի մատնել։ Եւ Անտիգոնոս ՚ի վերայ Հիւրկանու անկեալ, զականջն ատամամբքն

mes d'une grande beauté, et mille talens d'or, si Parzapran veut l'aider, en renversant Hyrcanus du trône de Judée, et y placer Antigone.

Lorsque Hyrcanus, grand-prêtre et roi des Juifs, Phasaël, frère d'Hérode, voient que Parzapran, après avoir mis en fuite l'armée des Romains, en avoir précipité une partie dans la mer, l'autre dans les villes, traversait en paix tout le pays, ils s'en vont ensemble parler de paix à Parzapran. Ce général envoie aussitôt Knel, sommelier du roi d'Arménie, de la famille Kenouni, à Jérusalem, avec de la cavalerie, comme pour traiter de la paix, mais en réalité pour secourir secrètement Antigone. Hyrcanus ne reçut pas le sommelier du roi, avec toutes ses troupes, à Jérusalem, mais seulement avec cinq cents hommes de cavalerie; Knel, par ruse, conseilla à Hyrcanus, d'aller trouver Parzapran et de s'entendre avec lui au sujet de la désolation du pays; Knel promettait même sa médiation. Hyrcanus ayant demandé un serment à Parzapran, celui-ci jure par le soleil, par leurs divinités respectives au ciel et sur la terre, par la vie même d'Ardachès et de Dicran; Hyrcanus, rassuré par ce serment, laisse Hérode à Jérusalem, et prenant avec lui Phasaël, frère ainé d'Hérode, s'en va trouver Parzapran, au bord de la mer, en un village appelé Ecdippon.

Parzapran par ruse, reçut avec honneur Hyrcanus et Phasaël, puis disparaissant tout-à-coup, il donna ordre aux troupes restées là de se saisir des deux étrangers, de les livrer entre les mains d'Antigone. Antigone se jeta sur Hyrcanus et lui coupa une oreille avec les

'ի բաց կորէր . զի թէ և այլ ժամանակ փոխեսցի , անհնար լիցի նմա զքահանայապետութիւնն ունել, քանզի օրէնքն զողջանդամն հրամայեն կացուցանել քահանայս ։ Իսկ Փասայել եղբայր Հերովդի իւրովի զարկեալ զգլուխ իւր զքարի , առաքեցաւ բժիշկ յԱնտիգոնէ, իբր թէ բժշկել զնա . ելից զվէրն թունաւոր դեղովք և վախճանեցոյց ։

Իսկ Բարզափրանայ հրաման տուեալ տակառապետին Հայոց յԵրուսաղէմ զՀերովդէս որսալ . իսկ տակառապետն ելեալ արտաքս քան զպարիսպն , զՀերովդէս պատրել . զոր չառեալ յանձն Հերովդի , այլ և ոչ կալ 'ի քաղաքին , երկուցեալ 'ի պատառմանէ անտիգոնեանցն , 'ի գիշերի 'ի ծածուկ ընդանեօքն հանդերձ առ Եդոմայեցիս փախչէր . 'ի Մասանդան յամուր թողեալ զընտանիսն , ինքն 'ի Հռոմ փութայր հասանել ։ Բայց զօրքն Հայոց ձեռնտուութեամբ անտիգոնեանցն յԵրուսաղէմ մտանեն՝ ոչ ինչ ումեք վնասեալ , բայց միայն զՀիւրկանոս զինչսն առնուին աւելի քան զերեքարիւր քանքար . Իսկ ընդգաւառն ասպատակեալ , զՀիւրկանեանսն առեալ աւերէին . և զՄարիսացւոց քաղաքն գերի առեալ , թագաւոր կացուցանելով զԱնտիգոնոս ։ Իսկ զՀիւրկանոս կապեալ ածեն Տիգրանայ հանդերձ գերութեամբն . և Տիգրան հրաման տայ Բարզափրանայ նստուցանել զգերին Հրէից՝ որ 'ի Մարիսացւոց , 'ի քաղաքն Շամիրամայ ։ Իսկ Տիգրանայ ոչ աւելի բաւեալ քան զերեամ յետ այնորիկ՝ վախճանի, թագաւորեալ ամն երեսուն և երիս ։

dents, afin que, si les temps changeaient, il lui fût impossible de reprendre les fonctions de grand-prêtre; car les lois ne veulent admettre pour prêtres que des hommes ayant tous leurs membres. Phasaël, frère d'Hérode, se frappe lui-même la tête contre une pierre; un médecin, alors envoyé par Antigone, comme pour soigner le malade, remplit la plaie d'une substance vénéneuse, et fit ainsi périr Phasaël.

Parzapran ordonna au sommelier du roi d'Arménie de se saisir d'Hérode à Jérusalem. Le sommelier s'avança jusque sous les murs de la ville, cherchant à tromper Hérode; mais Hérode ne donna pas dans le piége, et n'osant pas non plus rester dans la ville, tant il était effrayé de la faction d'Antigone, il s'enfuit secrètement la nuit chez les Iduméens, avec sa maison qu'il déposa dans le fort Masandan, puis se hâta d'aller à Rome. Mais les troupes arméniennes, avec les secours des Antigonistes, entrent dans Jérusalem sans aucun dommage pour les habitans, et se contentent de prendre les biens d'Hyrcanus, biens qui montaient à plus de trois cents talens. On fait incursion dans tout le pays, on pille tous les partisans d'Hyrcanus; la ville des Mariciens est prise, Antigone y est établi roi; Hyrcanus, chargé de chaînes, est amené devant Dicran, avec les captifs. Dicran donne ordre à Parzapran de transporter dans la ville de Sémiramis (Van) les captifs juifs mariciens. Dicran, trois ans après cet événement, meurt, ayant régné trente trois ans.

## Ի

*Այլ պատերազմ Հայոց ընդ զօրս Հռոմայեցւոց, և պարտութիւն Միհրանի և Բենդիդեայ։*

ՀԵՐՈՎԴԷՍ անցեալ՚ի Հռովմէ առաջի Անտոնի և Կեսարու և սինկղիտոսին, զինքեան միամտութիւն առ Հռովմայեցիսն պատմէ, և Թագաւոր եղեալ Հրէաստանի յԱնտոնինէ, առնու իւր զօրավիգ օգնականութեան զՒենդիդիոս սպարապետ Հռոմայեցւոց զօրօք, ՚ի պատերազմել ընդ զօրս Հայոց և քակել զԱնտիգոնոս։ Որոյ հասեալ յԱսորիս, փախստական առնէ զզօրս Հայոց, և զՄիհրան Թողեալ ընդդիմակաց Հայոց մերձ ՚ի յԵփրատ, և զՊակորոս սպանեալ, դառնայ յԵրուսաղէմ ՚ի վերայ Անտիգոնի։ Իսկ Հայոց միւսանգամ օգնականութիւն գտեալ՚ի Պարսից, դիմեալ՚ի վերայ Միհրանի, և փախստական ՚ի Ւենդիդիոս արկանեն, հեղումն արեանց առնելով անթաւս։

## ԻԱ

*Եթէ զիա՞րդ Անտոնինոս ինքնին դիմեալ ՚ի վերայ զօրացն Հայոց, առնու զՇամշատ։*

ՕԶԱՐԵԱԼ Անտոնինոս, ինքնին հասանէ ամենայն զօրօք Հռոմայեցւոց. և հասեալ ՚ի Շամշատ, լնէ զմահն Տիգրանայ. և առեալ զքաղաքն, և Թողեալ զՍովսիոս զօրավիգն Հերովդի՝ մարտ դնել ընդ Երուսաղէմի ՚ի վերայ Անտիգոնի, և ինքն ՚ի ձմերոց գնայ յԵգիպտոս։ Փութայր հասանել ըստ շամշութեան առնն կնամոլոյ, ցանկութեամբ վառեալ ՚ի Կղէոպատրեայ դշխոյն եգիպտացւոց։ Այս Կղէո-

## XX.

**Autre guerre des Arméniens contre les Romains. — Défaite de Silon et de Ventidius.**

Hérode, arrivé à Rome, se présente devant Antoine, César et le sénat; il expose son attachement envers les Romains; rétabli roi de Judée par Antoine, il en reçoit un secours de troupes romaines sous les ordres de Ventidius pour combattre contre les Arméniens et détruire Antigone. Arrivé en Syrie, Ventidius met en fuite l'armée des Arméniens, laisse Silon pour leur résister près de l'Euphrate, et, après avoir fait périr Pacorus, retourne à Jérusalem contre Antigone; mais les Arméniens ayant reçu de nouveaux secours des Perses, fondent sur Silon, le rejettent fugitif sur Ventidius et font couler des ruisseaux de sang.

## XXI.

**Antoine fond lui-même sur les troupes arméniennes, prend Samosate.**

Antoine, furieux, accourt en personne avec toute l'armée romaine. Arrivé à Samosate, il apprend la mort de Dicran, s'empare de la ville, et laissant Sosius au secours d'Hérode pour combattre à Jérusalem contre Antigone, il va prendre ses quartiers d'hiver en Égypte. Comme un homme passionné, il se hâtait d'arriver, car il brûlait d'amour pour Cléopâtre, reine d'Égypte, fille de Ptolémée Denis, petite-fille de Ptolémaïde

պատրեայ դուստր է Պտղոմէոս Դիոնիսի, Թոռն Պտղոմայիդ Կղէոպատրայ, և Հերովդի յոյժ սիրե֊լի. վասն որոյ առաւել ևս յանձնէ Անտոնիոս զՀե֊րովդէս Սոսիայ։ Որ և մարտուցեալ իսկ քաջապէս, առնու զԵրուսաղէմ. և սպանեալ զԱնտիգոնոս, Թագաւորեցուցանէ զՀերովդէս ամենայն Հրէաս֊տանի և Գալիլեայ։

## ԻԲ

Յաղագս Թագաւորելոյն Արտաւազդայ, և պատերազմել ընդ Հռոմայ֊եցիս։

ՀԱՅՈՑ Թագաւորէ Արտաւազդ որդի Տիգրա֊նայ։ Սա ժառանգեցուցանէ զեղբարս իւր և զքորս 'ի գաւառս Աղիովտի և Առբերանոյ, Թողլով 'ի նո֊սա զմասն արքունի որ 'ի շէնս այնմ գաւառաց, հան֊դերձ առանձին մտից և ռոճկաց, ըստ օրինակի ազ֊գականացն՝ որ 'ի կողմանս Հաշտենից. որպէս զի լի֊նել նոցա պատուականագոյն և առաւել Թագաւոր֊ազնն քան զայնս արշակունիս. միայն օրինադրէ ոչ կեալ յԱյրարատ 'ի բնակութիւն արքայի։

Բայց այլ ոչ ինչ գործ արութեան և քաջութեան եցոյց. այլ ուտելեաց և ըմպելեաց պարապեալ, մօ֊րից և եղեգնապուրակաց թափառեալ շրջէր և ա֊ռապարաց, զիշավայրիս և զխոզս արածելով. զիմաս֊տութենէ և զքաջութենէ և զբարի յիշատակաց ան֊փոյթ արարեալ, ծառայ և ստրուկ աղտարեւ որովայ֊նի լինելով, զաղիսս մեծացուցանէր։ Սա բարկելով յիւրոց զօրացն վասն առաւել պղերգութեանն և սաստիկ որկորամոլութեանն, մանաւանդ զի և զՄի֊ջագետս Անտոնի հանեալ էր 'ի նմանէ, զայրացեալ՝ հրաման տայր զօր յարուցանել զիւրաւորս Ատրպա

Cléopâtre, et amie d'Hérode. En conséquence, Antoine recommande vivement à Sosius la cause d'Hérode; Sosius, après avoir combattu vaillamment, prend Jérusalem, fait périr Antigone et rétablit Hérode roi de toute la Judée et de la Galilée.

## XXII.

Règne d'Ardavazt. — Guerre contre les Romains.

ARDAVAZT, fils de Dicran, règne en Arménie. Ce prince établit ses frères et sœurs dans les cantons d'Aghiovid et d'Arpéran, leur laisse une partie des droits royaux perçus sur les villages de ces cantons avec des revenus et traitemens particuliers, à l'exemple de ses parens établis dans les contrées de Hachdiank, pour augmenter l'éclat de leur rang et élever leur condition royale au-dessus de celle des Archagouni; seulement il leur impose l'obligation de ne pas vivre en Ararat, lieu de la résidence du roi.

Ardavazt ne fit rien autre chose de remarquable, aucune action d'éclat. Il était occupé à manger, à boire; il errait dans les marais, dans les roseaux, dans les rocailles, chassant les ânes sauvages et les pourceaux. Indifférent à tout ce qui est sagesse, valeur, bonne réputation, vraiment esclave de son ventre, il en augmentait sans cesse le volume. Ardavazt se voyant méprisé de ses troupes, à cause de son extrême incurie, de son infâme gloutonnerie, et surtout à cause de la perte de la Mésopotamie qu'il s'était laissé enlever par Antoine, Ardavazt, indigné, donna ordre de rassem-

տակաւն նահանգին և զբնակիչս լերինն Կաւկասու հանդերձ Աղուանիւք և Վրօք. խաղաղ իշխանէ 'ի Միջագետս, և հալածական առնէ զզօրս հռոմայե-ցւոց :

ԻԳ

Ձերբակալ արարեալ Անտոնինոս զԱրտաւազդ :

ՄՌԸՆՉԵԱԼ առիւծաբար գազանութեամբ Ան-տոնինոս, առաւել ևս թունեալ 'ի Կղէոպատրայ, քանզի քէն պահէր վասն ըլկանաց իւրոյ հանոյն, որ 'ի Տիգրանայ. և ոչ միայն Հայոց, այլ բազում թա-գաւորաց լինէր մահաբեր, զի նոցայոցն տիրեսցէ իշ-խանութեանց : Սակս որոյ բազում թագաւորս սպա-նեալ Անտոնի, 'ի Կղէոպատրայ հաւատայ զնոցա իշ-խանութիւնն, բայց 'ի Տիւրոսէ և 'ի Սիդոնէ, և որ միանգամ ընդ Եգատ գետովն էին : Եւ առեալ զբազմութիւն զօրացն, դիմէ 'ի վերայ Արտաւազդայ. և անցեալ ընդ Միջագետս, կոտորէ անհնարին զզօրս Հայոց, և ձերբակալ առնէ զարքայն նոցա : Եւ դառ-նայ յԵգիպտոս պարգևել Կղէոպատրի զԱրտաւազդ որդի Տիգրանայ, հանդերձ բազում ընչիւք յանկա-ծէ պատերազմին :

ԻԴ

Ցաղագս թագաւորելոյն Արշամայ. և զառաջինն մասնաւոր հարկել Հայոց հռոմայեցւոց, և արձակումն Հիւրկանոսի և վասն նորին վտանգ-աղջկին բաղդատութեանց :

Ի ՔՍԱՆԵՐՈՐԴԻ ամի 'ի կատարումն աւուրց թա-գաւորութեանն Արշէզի, ժողովեալ զօրք Հայոց հրամանաւ նորին թագաւորեցուցին 'ի վերայ ին-քեանց զԱրջամ, որ և Արշամ, որդի Արտաշիսի եղ-

bler les dix mille hommes de la province d'Aderbadagan, les habitans du mont Caucase, avec les Aghouank, et les Ibériens, puis il marche en Mésopotamie et en chasse les forces des Romains.

## XXIII.

Antoine fait Ardavazt prisonnier.

Antoine, avec la fureur d'un lion, fureur encore envenimée par Cléopâtre, qui gardait en son cœur souvenir des persécutions subies par son aïeule, de la part de Dicran. Antoine était l'exterminateur, non seulement des Arméniens, mais aussi de beaucoup de rois, pour s'emparer le leurs états ; c'est pourquoi immolant un grand nombre de rois, il remet leur puissance à Cléopâtre ; tout subit la loi du vainqueur, excepté Tyr et Sidon et les pays situés près du fleuve Éleuthère. Antoine, à la tête de ses troupes, s'avance contre Ardavazt, et, traversant la Mésopotamie, taille en pièces l'innombrable armée des Arméniens, fait leur roi captif, retourne en Égypte offrir à Cléopâtre Ardavazt, le fils de Dicran, avec quantité de richesses tirées du butin fait dans la guerre.

## XXIV.

Règne d'Archam. — Pour la première fois l'Arménie se voit en partie tributaire des Romains. — Délivrance d'Hyrcanus. — Péril où se trouve pour lui la race des Pacradouni.

La vingtième année et vers la fin du règne d'Archèz, les troupes arméniennes, rassemblées par ses ordres, se donnèrent pour roi Archam, fils d'Ardachès frère de Dicran, père d'Abgar. Quelques Syriens

քոր Տիգրանայ, հայր Աբգարու ։ Զսա ումանք յԱսորւոց կոչեցին Մանովայ, ըստ յոլովից սովորութեան կրկին ունելով անուանս․ որպէս Հերովդէս Ագրիպաս, և որպէս Տիտոս Անտոնինոս և կամ Տիտոս Յուստոս ։ Բայց քանզի 'ի նմին ամի վախճանեցաւ Արշէզ, թողլով զթագաւորութիւնն Պարսից որդւոյ իւրում Արշաւրի, որ էր փոքրիկ մանուկ և տղայ, ոչ ոք էր որ օգնէր Արշամայ՝ ընդդէմ կալ հռոմայեցւոց․ խօսի ընդ նոսա 'ի հաշտութիւն խաղաղութեան, տալով հարկս 'ի Միջագետաց և 'ի կողմանց Կեսարու 'ի ձեռն Հերովդի ։ Այս եղև սկիզբն հայոց մասնաւոր մտանել ընդ հարկաւ հռոմայեցւոց ։

Զայսու ժամանակաւ եղև մեծ ցասումն Արշամայ 'ի վերայ Ենանոսի ասպետի որումն թագակապի․ քանզի նա արձակեաց զՀիւրկանոս Հրէից քահանայապետ, զոր գերեալ էր Բարզափրանայ ռըշտունւոյ յաւուրս Տիգրանայ ։ Իսկ Ենանոս պատճառի արքայի, ասելով եթէ փրկանս խոստացաւ հարեւր քանքար․ այն ունելով առնուլ 'ի նմանէ․ և յանձն էառ տալ ։ Սամն որոյ ժամադրութիւն 'ի վերայ նորա սահմանէ Արշամ ։ Եւ նորա առաքեալ զմի յեղբարց իւրոց 'ի հրէաստան առ Հիւրկանոս, որում անուն էր Մենեքիայ, զի տացէ ինչս վասն փրկութեան իւրոյ ։ Եւ երթեալ առաքելոյն յԵնանոսէ, պատահէ սպանեալ Հերովդէս զՀիւրկանոս, զի մի ինչ դաւ լիցի թագաւորութեան նորա ։ Արդ իբրև եհաս ժամադրութիւնն և չտայ զանձս փրկանացն Հիւրկանու Ենանոս, բարկանայ 'ի վերայ նորա Արշամ, և ընկեցեալ 'ի պատուոյն՝ հրամայէ դնել 'ի բանտի ։

Յայնմ ժամանակի քսութիւն զնմանէ մատուցանէ արքայի Զօրայ նահապետ ազգին գնթունեաց, ասելով․ Գիտեա, արքայ, զի ապստամբել 'ի քէն կամեցաւ Ենանոս, խորհուրդ ընդ իս բերելով, զի եր-

l'appelèrent Manova, selon l'usage commun à la plupart des princes, d'avoir deux noms, comme Hérode Agrippa, comme Titus Antonin, ou Titus Justus. Mais, comme cette année même mourut Archèz, laissant la couronne de Perse à son fils Archavir, encore enfant au berceau, il n'y eut personne qui soutînt Archam contre les Romains. Archam traite donc de la paix avec ses ennemis, leur paye tribut pour les contrées de la Mésopotamie et de Césarée entre les mains d'Hérode. C'est là le commencement de la soumission d'une partie de l'Arménie au tribut des Romains.

Vers le même temps, Archam entra en fureur contre Énanus, chevalier jouissant du privilége de poser la couronne sur la tête des rois. Énanus avait délivré Hyrcanus, grand-prêtre des Juifs, fait autrefois captif par Parzapran Rechdouni, sous le règne de Dicran. Énanus s'excuse près du roi, en disant que, Hyrcanus a promis cent talens pour le prix de sa délivrance, que lui Énanus, espère les recevoir et consent à les donner au roi. En conséquence, Archam fixe un terme à Énanus; celui-ci dépêche en Judée un de ses frères, appelé Sénéchias, vers Hyrcanus, pour lui demander le prix de sa rançon; mais, à l'arrivée de l'envoyé d'Énanus, Hérode venait de faire périr Hyrcanus, pour l'empêcher d'attenter à sa couronne. Or, quand le terme fut échu, Énanus ne peut donner l'argent, prix de la délivrance d'Hyrcanus; Archam, irrité contre lui, le dégrade de ses honneurs et le fait jeter en prison.

Sur ces entrefaites, Zora, chef de la race des Kentouni, vient porter accusation près du roi contre Énanus: « O roi, dit Zora, apprends que, Énanus a voulu se révolter contre toi; il m'a proposé que nous

դուամն խնդրեսցուք 'ի Հերովդէէ Թագաւորէ Հրէաստանի, իբր ընդունել զմեզ և տալ ժառանգութիւն 'ի բնակ երկրի մերում. քանզի նորակտուտ ծանակեցաք յաշխարհիս յայսմ: Եւ իմ ոչ առնլով յանձն, ասեմ ցնա. Ընդէ՞ր պատրիմք զրուցօք վաղընջուց և պառաւեալ առասպելօք, պաղեստինացիս զմեզ վարկանելով: Եւ նորա անյուսացեալ յինէն, նմին իրի առաքեաց զքահանայապետն Հիւրկանոս, և առաւել ևս 'ի Հերովդէէ անյուսացաւ. այլ ոչ մեկնի 'ի դրժողութեան բարուցն, եթէ ոչ արքայդ աճապարեսցես նմա: Այս քսութեանցս հաւատայ Արշամ. հրամայեաց տանջանս պէս պէս 'ի վերայ Ենանոսի կուտել. և վախճան գործոյն, կամ թողուլ 'ի սպառ զօրէնս հրէութեան, և երկիր պագանել արեգական, և պաշտել զկուռս արքայի, ընդ որով հարկեալ արքայ տացէ նմա զնոյն իշխանութիւնն, կամ կախել զփայտէ և բնաջինջ լինել ազգի դորա: Եւ սպանեալ մի յազգականացն առաջի նորա, որում անուն էր Սարիայ, և առընթեր զորդիսն մատուցեալ 'ի տեղի սպանմանն, որոց անուանքն Սափատիայ, և Ազարիայ, յերկիւղէ մահուան որդւոցն և 'ի թախանձելոյ կանանցն կատարէ զկամս արքայի՝ հանդերձ ամենայն ազգատոհմիւն, և յառաջին պատիւն իւր հաստատի: Սակայն ոչ ամենևին վստահացաւ 'ի նա արքայ. այլ առաքէ 'ի Հայս, հաւատալով նմա զաշխարհն, զի 'ի Միջագետաց միայն հեռացուսցէ:

demandions à Hérode, roi de Judée, un serment par lequel il s'engagerait à nous recevoir, à nous donner des possessions dans le pays de nos ancêtres, parce que nous avions beaucoup à souffrir dans celui-ci; et moi, loin de consentir aux propositions d'Hyrcanus, je lui dis: « Pourquoi nous laisser tromper par d'antiques traditions, par des fables usées, en croyant que nous sommes originaires de la Palestine ». Énanus, n'espérant rien de moi, a renvoyé le grand-prêtre Hyrcanus: il a perdu, encore plus, toute espérance du côté d'Hérode. Mais il ne renonce pas à ses projets de félonie, à moins que tu ne te hâtes, ô roi, de le prévenir ». Archam, ajoutant foi à la délation, ordonne d'épuiser tous les tourmens sur la personne d'Énanus. Le but de cette persécution est de le forcer d'abandonner entièrement les lois du judaïsme, d'adorer le soleil, de rendre hommage aux idoles du roi ; à ces conditions, le roi lui rendra sa première dignité, mais faute de se soumettre, Énanus doit être pendu au poteau, et sa race exterminée. On exécute même devant lui un de ses parens nommé Saria ; ses fils, Saphadia et Azaria, sont amenés sur le lieu du supplice. Énanus, alors ébranlé par la crainte de voir périr ses enfans, ébranlé par les supplications de ses femmes, consent, avec toute sa famille, aux volontés du roi, et son premier rang lui est rendu. Cependant, le roi, qui n'a pas en lui une entière confiance, l'envoie en Arménie, et lui donne l'administration du pays, seulement afin de l'éloigner de la Mésopotamie.

## ԻԵ

Գժտութիւն ընդ Հերովդի Արշամայ, և ակամայ հնազանդութիւն։

Յետ այսր եղև խռովութիւն 'ի մէջ Հերովդի արքայի հրէաստանի և մերոյն արքայի Արշամայ։ Վասնզի Հերովդէս, յետ բազում գործոց արութեանց, ձեռնամուխ լինի 'ի բարեգործութիւնս, շինուածս բազումս առնելով յոլով քաղաքաց, սկսեալ 'ի Հռովմէ մինչև ցԴամասկոս։ Խնդրեալ 'ի յԱրշամայ բազմութիւն արանց անարուեստից գործաւորաց, որովք զԱսորւոց զԱնտիոքայ զանանց և զանկոխ հրապարակսն 'ի խոհերացն. և 'ի տղմոցն՝ լցցէ։ Զոր չառեալ յանձն Արշամայ, զօրս ժողովէ ընդդիմանալ Հերովդի. և 'ի ձեռն հրեշտակաց յղէ առ կայսրն 'ի Հռոմ, զի մի զնա ընդ իշխանութեամբ Հերովդի արասցէ։ Իսկ կայսրն ոչ միայն զԱրշամ չազատէ յիշխանութենէ Հերովդի, այլև զամենայն միջերկրայս նմա հաւատայ։

Յայնմ ժամանակի Հերովդէս զանէր Աղեքսանդրի որդւոյ իւրոյ, որ էր 'ի հօրէ Տիմոնէ և 'ի մօրէ Թագաւորութենէ Մարաց՝ 'ի զաւակէ Դարեհի վշտասպեանց, ընդ իւրով ձեռամբ թագաւոր միջերկրեացն կացուցանէր, առեալ իւր 'ի սպասաւորութիւն տասն գունդ 'ի գաղատացւոց և 'ի պոնտացւոց։ Տեսեալ զայն Արշամայ, երկրպագէ Հերովդի իբրև տեառն ամենայնի, տալով զոր խնդրէրն գործաւորս. որովք լցեալ զհրապարակս անտիոքացւոց քսան վտաւանաւ երկայնութեամբ, յատակեաց սպիտակ կճասալ յատակօք, զի ուխաւորք յատակացն դիւրագոյնս կարգեսցեն առ ոչ ինչ փնաս առնել քաղաքին։ Բայց Ար-

## XXV.

**Différend d'Archam avec Hérode.—Soumission forcée d'Archam.**

Après ces événemens, il y eut trouble entre Hérode, roi de Judée, et notre Archam. Car Hérode, après beaucoup d'actions de valeur et d'éclat, se livre aux soins d'une bonne administration, en élevant grand nombre de constructions et d'établissemens dans la plupart des villes, depuis Rome jusqu'à Damas. Il demande à Archam quantité d'ouvriers maîtres, pour faire paver les places publiques d'Antioche, en Syrie, impraticables jusqu'alors, à cause des boues. Archam, loin de consentir à la demande d'Hérode, rassemble ses troupes pour lui résister; il envoie même des députés à Rome, vers César, pour le prier de ne point le soumettre, lui Archam, à la puissance d'Hérode; mais César, non seulement n'affranchit pas Archam de la domination d'Hérode, il confie encore au roi de Judée le gouvernement de toutes les terres méditerranées.

En ce même temps, Hérode, fit roi des provinces méditerranées, sous son autorité, le beau-père d'Alexandre, son fils, issu par son père Timon, et sa mère, du royaume des Mèdes, de la race de Darius, fils d'Hystaspe, prit à son service dix légions de Galates et d'habitans du Pont. Archam, alors, se prosterne devant Hérode comme devant son seigneur et maître, lui donne les ouvriers qu'il demandait: Hérode les emploie à remplir les voies publiques d'Antioche, la longueur de vingt stades, puis à les paver en marbre blanc, afin que les torrens, ayant un cours plus facile et mieux

շամայ վարեալ զԹագաւորութիւնն ամս քսան, վախճանեցաւ ։

## ԻԶ

Թագաւորութիւն Աբգարու, և մտանել բոլորովին Հայոց ընդ հարկաւ հռոմայեցւոց. և պատերազմ ընդ զօրս Հերովդի, և սպանանել զեղբօրորդի նորա զՅովսէփ ։

ԹԱԳԱՒՈՐԷ Աբգար որդի Արշամայ 'ի քսաներորդ ամի Արշաւրի արքայի Պարսից։ Այս Աբգարէս կոչիւր աւագ այր՝ վասն առաւել հեզութեանն և իմաստութեանն. որում յետոյ և տիքն. զայս ոչ կարելով ուղղախօսել Յունաց և Ասորւոց, կոչեցին Աբգարոս ։ Ի սորա երկրորդ ամի Թագաւորութեանն հարկին հռոմայեցւոց բոլորովին ամենայն կողմանքն Հայոց։ Քանզի հրամայեալ յՕգոստոս կայսերէ, որպէս ասի 'ի Ղուկայ աւետարանին, աշխարհագիր լինել ընդ ամենայն տիեզերս. վասն որոյ և 'ի Հայս առաքեալ գործակալք հռոմայեցւոց բերելով զպատկերն Օգոստոսի կայսեր, կանգնեցին յամենայն մեհեանս ։ Զայսու ժամանակաւ լինի ծնեալ Փրկիչն մեր Յիսուս Քրիստոս որդի Աստուծոյ ։

Զսմին աւուրբք լինի խռովութիւն 'ի մէջ Աբգարու և Հերովդի ։ Քանզի Հերովդի հրամայեալ զիւր պատկերն հուպ 'ի կայսերական պատկերն կանգնել 'ի մեհեանս Հայոց, զոր չառեալ յանձն Աբգարու, պատճառս 'ի վերայ նորա յուզէր Հերովդէս ։ Առաքէ զզօրս Թրակացւոց և գերմանացւոց ասպատակաւ հինից յերկիրն Պարսից, հրաման տուեալ ընդ աշխարհն Աբգարու անցանել։ Իսկ Աբգարու ոչ հաւանեալ, ընդդիմանայ ասելով, եթէ ընդ անապատ է հրաման կայսեր անցանել զօրացդ 'ի յերկիրն Պարսից ։ Ընդ որ դառնացեալ Հերովդէս, անձամբ ինչ ոչ կարէր վճարել, պէս պէս ցա

réglé sur ces dalles, ne causent aucun dégât à la ville. Archam meurt après avoir gouverné vingt ans.

## XXVI.

**Règne d'Abgar. — L'Arménie est entièrement soumise au tribut des Romains. — Guerre avec les troupes d'Hérode. — Le fils de son frère, Joseph, est tué.**

Abgar, fils d'Archam, monte sur le trône la vingtième année d'Archavir, roi des Perses. Cet Abgar était appelé Avak-aïr (grand homme), à cause de sa grande mansuétude et de sa sagesse, et de plus, à cause de sa taille Ne pouvant bien prononcer, les Grecs et les Syriens l'appelèrent Abgar. La deuxième année de son règne, toutes les contrées de l'Arménie deviennent tributaires des Romains. Ordre est donné par l'empereur Auguste, comme il est dit dans l'Évangile de saint Luc, de faire un dénombrement en tous lieux: pour cela envoyés en Arménie, des commissaires romains y apportèrent la statue de l'empereur Auguste, et l'érigèrent dans tous les temples. En ce même temps, vient au monde notre sauveur Jésus-Christ, fils de Dieu.

A la même époque il y a trouble entre Abgar et Hérode; car Hérode voulait que sa statue fût érigée auprès de la statue de César, dans les temples de l'Arménie: Abgar se refuse à cette prétention. D'ailleurs, Hérode ne cherchait qu'un prétexte pour fondre sur Abgar; il envoie une armée de Thraces et de Germains faire incursion dans le pays des Perses, avec ordre de passer sur les terres d'Abgar. Mais Abgar loin de consentir, s'y oppose, disant que l'ordre de l'empereur est de faire passer les troupes en Perse par le désert. Hérode, indigné, et ne pouvant pas agir par lui-même, accablé de douleurs, en punition de sa coupable con-

ւոց զնա ըմբռնեալ՝ վասն որոյ 'ի Քրիստոս համարձակեցաւ, որպէս պատմէ Յովսէպոս. առաքէ զեղբօրորդին իւր, որում տուեալ էր զդուստր իւր որ էր յառաջ կին Փերուրի եղբօր իւրոյ: Եւ նորա առեալ զբազմութիւն զօրացն, գայ հասանէ յաշխարհն Միջագետաց, պատահէ Աբգարու 'ի զօրանիստ գաւառին Բուզնան. և մարտուցեալ մեռանի, և զօրքն փախստական լինին: Այն հետայն վախճանի և Հերովդէս, և Հրէից ազգապետ զԱրքեղայոս նորին որդի Օգոստոս կացուցանէ:

## ԻԷ

Շինուած Եդեսիայ քաղաքի, և յիշատակութիւն սակաւուք ազգի մերոյ Լուսաւորչին:

ՕԳՆԻ ոչ բազում աւուրց վախճանի Օգոստոս, և փոխանակ նորա թագաւորէ հռոմայեցւոց Տիբեր. և Գերմանիկոս կեսար եղեալ, ձաղէ զառաքեալսն 'ի հռովմ զիշխանս Արշաւրի և Աբգարու, յաղագս պատերազմին նոցա՝ յորում սպանին զեղբօրորդին Հերովդի: Ընդ որ խստացեալ Աբգարու, խորհի ապստամբութիւն և պատրաստութիւն պատերազմի: Յայնժամ շինէ քաղաք զտեղի պահպանութեան գնդին հայոց, ուր յառաջագոյն զգուշանային Եփրատու 'ի Կասսիոսէ, որ կոչի Եդեսիայ. և փոխէ 'ի նա զարքունիս իւր՝ որ 'ի Մծբին, և զամենայն կուռս իւր, զՆաբոգ և զԲէլ և զԲաթնիկաղ և զՏարաթայ, և զմատեանս մեհենիցն վարժարանին, և միանգամայն զդիւանս թագաւորացն:

Յետ այսր մեռեալ Արշաւիր, թագաւորէ 'ի վերայ Պարսից Արտաշէս որդի նորա: Արդ թէպէտ և ոչ է կարգ պատմութեանս 'ի ժամանակի, և ոչ ըստ կարգի՝ զոր ասելն ձեռնարկեցաք, այլ քանզի սերունդք Արշաւրի թագաւորին են, և արիւն և հա-

duite envers le Christ, comme le rapporte Joseph, envoie son neveu, à qui il avait donné sa fille, mariée d'abord à Phéror, son frère. Le lieutenant d'Hérode, à la tête d'une armée considérable, se hâte d'arriver en Mésopotamie, rencontre Abgar au camp de la province Pouknan, périt dans le combat, et ses troupes sont mises en fuite. Bientôt après, Hérode meurt: Archélaüs, son fils, est établi par Auguste ethnarque de la Judée.

## XXVII.

### Fondation de la ville d'Édesse. — Notice abrégée sur la race de notre Illuminateur.

Peu de temps après, Auguste meurt, et Tibère en sa place est empereur des Romains. Germanicus, devenu César, trainant à sa suite les princes du royaume d'Archavir et d'Abgar envoyés à Rome, triomphe, au sujet de leur guerre, dans laquelle ces princes avaient tué le neveu d'Hérode. Abgar, indigné, médite des projets de révolte, et se prépare aux combats. Il bâtit une ville sur le terrain occupé par l'armée arménienne d'observation, là où précédemment on gardait l'Euphrate contre les entreprises de Cassius; cette nouvelle ville est appelé Édesse. Abgar y transporta sa cour, qui était à Medzpine, tous ses dieux, Naboc, Bel, Patnicagh et Tarata, les livres des écoles attachées aux temples, et même les archives royales.

Après quoi Archavir étant mort, Ardachès, son fils, règne sur les Perses. Quoique ce ne soit pas l'ordre de l'histoire quant aux temps, ni même l'ordre selon lequel nous avons entrepris ces annales, mais comme il s'agit des descendans du roi Archavir, du sang même

բաղատութիւն Արտաշիսի որդւոյ նորա, սկիզբն արարցուք յաղագս պատուականութեան մարդկանն, նախակարգեալ 'ի գիրս առ ընթեր Արտաշիսի. զի իմասցին որք ընթեռնուն, եթէ համազգիք քաջին են: Իսկ զկնի ապա նշանակեսցուք և զժամանակ գալըստեան հարցն նոցա 'ի Հայս, որք են կարենանք և սուրենանք, յորմէ սուրբն Գրիգոր, և յորմէ կամսարականք, յորժամ 'ի չարի կարգին հասանիցեմք 'ի ժամանակս Թագաւորին, որ զնոսա ընկալաւ:

Բայց Աբգարու ոչ յաջողեցաւ խորհուրդն ապըստամբութեան. զի խռովութիւն անկեալ 'ի մէջ ազգականաց իւրոց՝ Թագաւորութեանն Պարսից, զոր ժողովեալ անդր չուէր 'ի համոզել և 'ի դադարեցուցանել զնոսա:

## ԻԲ

Յաղագս երթալոյն Աբգարու յարևելս և Թագաւորեցուցանելոյ Պարսից զԱրտաշէս. և թէ զիարդ կարգեաց զեղբարս իւր, յորոց մեր Լուսաւորիչն և Նորին ազգակիցքն:

ԵՐԹԵԱԼ Աբգարու յարևելս, գտանէ Թագաւորեալ Պարսից զԱրտաշէս որդի Արշաւրի, և ընդդիմացեալ նմա զեղբարս իւր. քանզի նա խորհէր ազգաւ 'ի վերայ նոցա Թագաւորել, և նոքա ոչ առնուին յանձն: Վասն որոյ պաշարեալ զնոսա Արտաշիսի և երկիւղ մահու եդեալ 'ի վերայ նոցա, բազում պատառմունք և անմիաբանութիւնք 'ի մէջ զօրացն և այլ ազգականացն լինէին: Քանզի էին Արշաւրի Թագաւորի որդիք երեք և դուստր մի. առաջին՝ նոյն ինքն արքայն Արտաշէս, երկրորդն Կարէն, երրորդն Սուրէն, և քոյր սոցին՝ որ անուանեալ կոչի Կոշմ, կին զօրավարին ամենայն Արեաց 'ի հօրէն կարգեցեալ:

d'Ardachès, son fils, nous allons, pour faire honneur à ces princes, les placer, par anticipation de temps, près d'Ardachès, afin que le lecteur sache qu'ils sont bien de la même race, de la race du brave Archag; puis nous signalerons le temps de l'arrivée de leurs pères en Arménie, les Garénian et les Sourénian de qui descendent saint Grégoire et les Gamsarian, lorsque, suivant l'ordre des événemens, nous arriverons au règne du roi sous lequel ils parurent.

Abgar ne réussit pas dans ses projets de révolte; car, des troubles étant survenus entre ses parens du royaume de Perse, il partit à la tête d'une armée pour apaiser et faire cesser la discorde.

## XXVIII.

**Abgar vient en orient, maintient Ardachès sur le trône de Perse. — Concilie ses frères, de qui descendent notre Illuminateur et ses parens.**

Abgar, étant allé en orient, trouve sur le trône de Perse Ardachès, fils d'Archavir, et les frères d'Ardachès en lutte avec lui; car ce prince pensait à régner sur eux dans sa postérité, et eux ne voulaient pas y consentir. C'est pourquoi Ardachès les cerne de toutes parts, suspend sur leur tête le glaive de la mort; les déchiremens, la discorde étaient entre leurs troupes et leurs autres parens et alliés; car le roi Archavir avait trois fils et une fille: le premier de ces fils était le roi Ardachès lui-même, le second Garène, le troisième Sourène; leur sœur nommée Gochm, était femme du général de tous les Arik, général choisi par leur père Archavir.

Իսկ Աբգարու համոզեալ զնոսա խաղաղանալ, 'ի մէջ ամենեցունց հաստատէ զայս ինչ սահմանելով. Թագաւորել Արտաշիսի հանդերձ ծննդովք իւրովք՝ որպէս և խորհեցաւն, և զեղբարսն անուանեալ Պահլաւս՝ յանուն քաղաքին իւրեանց և աշխարհին մեծի և քաջաբերոյ. որպէս զի լինել նոցա պատուականագոյն և առաջին քան զամենայն նախարարութիւնս Պարսից՝ որպէս արդարեւ զարմս Թագաւորաց: Եւ դաշինս և երդմունս 'ի միջի հաստատեալ, զի թէ լիցի սպառել զարմից Արտաշիսի 'ի պատանեաց, նոքա մատնիցեն 'ի թագաւորութիւնն: Եւ արտաքոյ ցեղի նորա թագաւորեցելոյ՝ ցեղս որոշել զնոսա երիս, կոչմամբ այսպիսեաւ. Կարենի Պահլաւ, Սուրենի Պահլաւ, և զքոյրն՝ ասպահապետի Պահլաւ, յառնն տանուտէրութենէ զանունն որոշեալ:

Եւ ասեն զսուրբն Գրիգոր 'ի Սուրենեանն Պահլաւէ, և զկամսարականս 'ի Կարենեանն Պահլաւէ: Այլ զայսր գալոյն զորպիսութիւն 'ի կարգին պատմեսցուք. միայն նշանակելով այժմ առ ընթեր Արտաշիսի, զի ծանիցես զազգս զայս մեծ, թէ հաւաստի արիւն Վաղարշակայ են. այս ինքն զարմ Արշակայ մեծի, եղբօր Վաղարշակայ:

Եւ այսոցիկ այսպէս կարգեցելոց, և զգիր ուխտին ընդ իւր առեալ Աբգարու՝ դառնայ ոչ առողջ մարմնով, այլ չարաչար ցաւովք ախտացեալ:

## ԻԹ

Դարձ Աբգարու յարևելից և տալ օգնականութիւն Արտաւայ 'ի մարտ ընդ Հերովդի չորրորդապետի:

ԻԲՐԵՒ դարձաւ Աբգարիոս յարևելից, լուաւ նա զհռովմայեցւոց, թէ 'ի կասկածանս անկեալ են վա-

Abgar persuade aux fils d'Archavir de faire la paix; il en fixe entr'eux les conditions et stipulations : Ardachès règnera avec sa postérité comme il méditait, et ses frères seront appelés Bahlav, du nom de leur ville et de leur vaste et fertile pays, de manière que leurs satrapies soient les premières, plus élevées en rang que toutes les satrapies de Perse, comme vraiment race de rois. Des traités, des sermens stipulent que, en cas d'extinction d'enfans mâles d'Ardachès, ses frères arriveront au trône; après la race régnante d'Ardachès, ses frères sont distingués en trois races ainsi dénommées : la race de Garène Bahlav, la race de Sourène Bahlav, et la race de leur sœur, la race Asbahabied Bahlav, race ainsi appelée du nom de la seigneurie de son mari.

On dit saint Grégoire issu de la race Sourène Bahlav, et les Gamsarian de la race Garène Bahlav. Nous rapporterons dans la suite les circonstances de l'arrivée de ces personnages, signalant seulement ici leurs noms auprès d'Ardachès, afin que tu saches que ces grandes races sont bien le sang de Vagharchag, c'est-à-dire la postérité du grand Archag, frère de Vagharchag.

Tout étant ainsi réglé, Abgar prend avec lui la lettre des traités, et retourne dans ses états, non en parfaite santé, mais en proie à de vives douleurs.

## XXIX.

**Abgar revient d'orient. — Il prête secours à Arète, en guerre contre Hérode Tétrarque.**

Quand Abgar fut revenu d'orient, il apprit que les Romains le soupçonnaient d'y être allé pour lever

սըն նորա, որպէս թէ զկնի զօրու գնաց յարևելս Աբգար ։ Վասն որոյ յղէ առ գործակալս հռովմայեցւոց զպատճառս երթալոյն իւրոյ 'ի Պարսս, միանգամայն և զգիր ուխտին՝ որ ընդ Արտաշէս և ընդ եղբարս նորա՝ տալ տանել ։ Այլ նոքա ոչ հաւատացին նմա ․ վասն զի և թշնամիք չարախօսէին զնմանէ, Պիղատոս և Հերովդէս չորրորդապետ և Լիւսինայ և Փիլիպպոս ։ Իսկ Աբգարու եկեալ 'ի քաղաքն իւր յԵդեսիայ, միաբանեաց ընդ Արետայ արքայի պատրիացւոց, սատարս տալով նմա 'ի ձեռն Խոսրանայ որումն արծրունւոյ՝ մարտնչել ընդ Հերովդէի ։ Վասնզի նախ զդուստրն Արետայ կին առեալ Հերովդէի, և անարգեալ 'ի բաց եթող ․ և զՀերովդիադայ մեկնեալ յառնէ իւրմէ եհան կենդանւոյն, յաղագս որոյ սպանեալ զՅովհաննէս Մկրտիչ ։ Այլ եղև պատերազմ ընդ նա և ընդ Արետ վասն անարգանաց դստերն ․ յորում սաստկապէս հարեալ սատակեցան զօրքն Հերովդի յօգնականութենէ քաջացն Հայոց ․ որպէս յաստուածային գոգցես տեսչութենէ, վրէժս հատուցանել ընդ մահուան Մկրտչին ։

## Լ

Առաքումն իշխանացն Աբգարու առ Մառինոս, յորում տեսին զՓրկիչն մեր Քրիստոս, ուստի եղև սկիզբն հաւատոցն Աբգարու ։

Ընդ այն ժամանակս եկաց 'ի գործ հազարապետութեան կայսեր 'ի վերայ փիւնիկեցւոց և պաղեստինացւոց, Ասորւոց և Միջագետաց Մառինոս որդի Ստորգեայ ․ առ որ առաքեաց Աբգարիոս երկուս 'ի գլխաւորաց իւրոց, զՄար Իհաբ բդեշխն Աղձնեաց, և զՇամշագրամ նահապետ ապահունեաց տոհմին, և զԱնան հաւատարիմ իւր՝ 'ի քաղաքն Բեթքուբին, զգացուցանել նմա զպատճառս

des troupes; en conséquence, il fait parvenir aux commissaires des Romains la connaissance des causes de son voyage en Perse, ainsi que le traité conclu entre Ardachès et ses frères, mais on n'ajouta aucune croyance à ses rapports; car il était chargé par ses ennemis Pilate, Hérode le Tétrarque, Lysanias et Philippe. Abgar s'étant rendu dans sa ville d'Édesse, se ligua avec Arète, roi de Pétra, et lui donna des troupes auxiliaires, sous la conduite de Khosran Ardzrouni, pour faire la guerre à Hérode. Hérode avait d'abord épousé la fille d'Arète, puis l'avait répudiée, pris ensuite Hérodiade du vivant même de son mari, circonstance pour la quelle il avait fait périr Jean-Baptiste. Ainsi il y eut guerre entre Hérode et Arète en raison de l'injure faite à la fille d'Arète. Vivement attaquées, les troupes d'Hérode furent défaites, grâce au secours des braves Arméniens; comme si, par la Providence divine, vengeance était tirée de la mort de Jean-Baptiste.

## XXX.

**Abgar envoie des princes à Marinus.—Ces députés voient notre Sauveur le Christ. — Commencement de la conversion d'Abgar.**

A CETTE époque, fut élevé par l'empereur au commandement de la Phénicie, de la Palestine, de la Syrie et de la Mésopotamie, Marinus, fils de Storoge. Abgar lui envoya deux de ses principaux officiers, Marlhap prince d'Aghtznik et Chamchacram, chef de la maison des Abahouni, ainsi qu'Anan, son confident. Les envoyés se rendent dans la ville de Petkoupine pour faire connaître à Marinus les causes du voyage

երթալոյն իւրոյ յարևելս, ցուցանելով և զգիր ուխտին՝ որ ընդ Արտաշէս և ընդ եղբարս իւր, և առնել զնա Թիկունս օգնականութեան։ Որոց եկեալ զգտին զնա յԵլևթերոպօլիս։ Եւ նորա ընկալեալ զնոսա խաղաղութեամբ և մեծարանօք, առնէ պատասխանի Աբգարու. Մի՛ կասկածեր՝ ՚ի կայսերէ սակըս այնր, միայն զի զհարկեանն լրով փութասցիս։

Եւ նոցա դարձեալ անտի, ելին յԵրուսաղէմ տեսանել զՓրկիչն մեր Քրիստոս վասն լրոյ համբաւուց սքանչելագործութեանցն. որում և ականատես եղեալ, պատմեցին Աբգարու։ Ընդ որ զարմացեալ Աբգարու, հաւատաց ճշմարտապէս իբր յարդարև որդի Աստուծոյ, և ասէ. Այն զօրութիւնք ոչ մարդոյ են, այլ Աստուծոյ. զի չիք ոք ՚ի մարդկանէ որ կարէ զմեռեալս յարուցանել, բայց միայն Աստուած։ Եւ քանզի ապականեալ էր մարմինն իւր ՚ի չարաչար ցաւոց, որ պատահեցին նմա ՚ի Պարսից աշխարհին յառաջ քան զեւթն ամ, և ՚ի մարդկանէ ոչ եղև նմա հնար բժշկութեան, ետ տանել նմա թուղթ աղաչանաց, գալ և բժշկել զնա ՚ի ցաւոցն, օրինակ զայս։

## ԼԱ

### Թուղթ Աբգարու առ Փրկիչն Յիսուս Քրիստոս։

ԱԲԳԱՐ Արշամայ իշխան աշխարհի, առ Յիսուս Փրկիչ և բարերար, որ երևեցար աշխարհի երուսաղէմացւոց, ողջոյն։

Լուեալ է իմ վասն քո և վասն բժշկութեանդ, որ լինին ՚ի ձեռս քո առանց դեղոց և արմատոց. զի որպէս ասի, տաս դու կուրաց տեսանել և կաղաց գը-

d'Abgar en orient, en lui montrant le traité conclu entre Ardachès et ses frères, et, en même temps, pour invoquer l'appui de Marinus. Les députés trouvèrent à Éleuthéropole le gouverneur romain ; celui-ci les reçoit avec amitié et distinction, et fait cette réponse à Abgar : « Ne crains rien pour cela de la part de l'empereur, pourvu que tu aies bien soin d'acquitter entièrement le tribut ».

A leur retour, les députés arméniens allèrent à Jérusalem voir notre Sauveur, le Christ, attirés par le bruit de ses miracles. Devenus eux-mêmes témoins oculaires de ces prodiges, ils les rapportèrent à Abgar. Ce prince, saisi d'admiration, crut véritablement que Jésus était bien le fils de Dieu, et dit: « Ces prodiges ne sont pas d'un homme, mais d'un Dieu. Non, il n'est personne d'entre les hommes qui puisse ressusciter les morts, Dieu seul a ce pouvoir ». Abgar éprouvait dans tout son corps des douleurs aiguës qu'il avait gagnées en Perse, plus de sept années auparavant ; des hommes il n'avait reçu aucun remède à ses maux; Abgar fit porter une lettre de supplication à Jésus, il le conjurait de venir le guérir de ses douleurs. Voici cette lettre :

## XXXI.

### Lettre d'Abgar au Sauveur Jésus-Christ.

« Abgar fils d'Archam, prince de la terre, à Jésus, sauveur et bienfaiteur des hommes, qui as apparu dans la contrée de Jérusalem, salut :

« J'ai ouï parler de toi et des cures opérées par tes mains, sans remèdes, sans plantes; car, comme il est dit, tu fais que les aveugles voient, que les boi-

նալ և զբորոտս սրբել, և զայսս պիղծս հանես, և որ միանգամ չարչարեալ են երկար հիւանդութեամբք՝ բժշկես. դու և զմեռեալս յարուցանես։ Եւ իբրև լուայ վասն քո զայս ամենայն, եդի 'ի մտի իմում մի յերկուց աստի. կամ թէ դու Աստուած իցես, իջեալ յերկնից գործես զայդ. կամ թէ որդի իցես դու Աստուծոյ, և զայդ առնես։ Արդ վասն այսորիկ գրեցի ես առ քեզ՝ աղաչել զքեզ, զի աշխատ լինիցիս և եկեսցես առ իս և բժշկեսցես զհիւանդութիւնս, զոր ունիմ ես։ Նա և լուայ զի Հրեայք տրտնջեն զքէն և կամին չարչարել զքեզ. բայց քաղաք մի փոքրիկ և գեղեցիկ է իմ, և բաւական է մեզ երկոցունցս։

Որոց տարեալ զթուղթն, պատահեցին նմա յԵրուսաղէմ։ Զայս վկայէ աւետարանական բանն, եթէ էին ոմանք 'ի հեթանոսաց ելելոց առ նա. վասն որոյ ոչ համարձակէին, որք լուանն, ասել ցՅիսուս, այլ ասեն ցՓիլիպպոս և ցԱնդրէաս. և նոքա ասեն ցՅիսուս։ Իսկ ինքն Փրկիչն յայնմ ժամանակի յորում կոչեցաւն զնա, ոչ առ յանձն. բայց թղթոյ արժանի արար զնա, որ ունի այսպէս։

## ԼԲ

Պատասխանի Թղթոյն Աբգարու, զոր գրեաց Թումաս Առաքեալն հրամանաւ փրկչին։

Երանի իցէ այնմ, որ հաւատայ յիս՝ իբրև ոչ իցէ նորա տեսեալ զիս. զի գրեալ է վասն իմ այսպէս. Զի որք տեսանենն զիս՝ ոչ հաւատասցեն յիս, և որք ոչն տեսանեն՝ նոքա հաւատասցեն և կեցցեն։ Իսկ վասն այնր զի գրեցեր դու առ իս գալ ինձ առ քեզ, արժան է ինձ կատարել աստ զամենայն ինչ վասն որոյ առաքեցայ ես։ Եւ իբրև կատարեցից զայս, ա-

teux marchent, que les lépreux sont guéris ; tu chasses les esprits immondes, tu guéris les malheureux affligés de maladies longues et invétérées ; tu ressuscites même les morts. Comme j'ai ouï parler de tous ces prodiges opérés par toi, j'en ai conclu ou que tu es Dieu, descendu du ciel pour faire de si grandes choses, ou que tu es fils de Dieu, toi qui produis ces miracles. En conséquence je t'ai donc écrit, te priant de daigner venir vers moi et de me guérir des maux qui m'affligent. J'ai ouï dire aussi que les Juifs murmurent contre toi et veulent te livrer aux tourmens : j'ai une ville, petite mais agréable, elle peut nous suffire à tous deux ».

Les messagers, porteurs de cette lettre, rencontrèrent Jésus à Jérusalem, fait confirmé par ces paroles de l'Évangile : « Quelques uns d'entre les païens vinrent trouver Jésus ; mais ceux qui les entendirent, n'osant rapporter à Jésus ce qu'ils ont entendu, le disent à Philippe et à André qui redisent tout à leur maître ». Le Sauveur n'accepta pas alors l'invitation qui lui était faite, mais il voulut bien honorer Abgar d'une réponse ainsi conçue :

## XXXII.

**Réponse à la lettre d'Abgar, réponse que l'apôtre Thomas écrivit à ce prince par ordre du Sauveur.**

« HEUREUX celui qui croit en moi sans m'avoir vu ! Car il est écrit de moi : « Ceux qui me voient, ne croiront point en moi, et ceux qui ne me voient point, croiront et vivront ». Quant à ce que tu m'as écrit, de venir près de toi ; il me faut accomplir ici tout ce pourquoi j'ai été envoyé, et lorsque j'aurai tout accompli, je monterai vers celui qui m'a envoyé ; et

պա համբարձայց առ այն՝ որ առաքեացն զիս. և յոր-ժամ համբարձայց, առաքեցից զմի յաշակերտաց աստի իմոց, զի զցաւս քո բժշկեսցէ, և կեանս քեզ և որոց ընդ քեզ են շնորհեսցէ:

Զայս Թուղթ եբեր Անան սուրհանդակ Աբգարու, ընդ որում և զկենդանագրութիւն փրկչական պատկերին, որ կայ յԵդեսացւոց քաղաքին մինչև ցայսօր ժամանակի:

## ԼԳ

Քարոզութիւն յԵդեսիայ Առաքելոյն Թադէի, և պատճէն Թղթոցն հնգից:

Իսկ յետ համբառնալոյ Փրկչին մերոյ՝ Թովմաս առաքեալ, մի յերկոտասանիցն, առաքեաց մի յեւթանասնից անտի՝ զԹադէոս, 'ի քաղաքն Եդեսիայ՝ բժշկել զԱբգար և աւետարանել ըստ բանին Տեառն: Որոյ եկեալ 'ի տուն Տուբիայ իշխանի հրէի, զոր ասեն լինել յազգէն Բագրատունեաց. որոյ խուսեալ յԱրշամայ՝ ոչ ուրացաւ զհրէութիւնն ընդ այլ ազգականս իւր, այլ նոյն օրինօքն եկաց մինչև հաւատալ 'ի Քրիստոս: Եւ ել համբաւ նորա ընդ ամենայն քաղաքն: Լուեալ Աբգարու ասէ. Նա է վասն որոյ գրեացն Յիսուս. և իսկոյն կոչեաց զնա: Եւ եղև 'ի մտանելն Թադէի, տեսիլ մեծ երևեցաւ Աբգարու յերեսան Թադէի. և յարուցեալ 'ի գահոյից անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց և երկիր եպագ նմա. և զարմացան ամենայն իշխանքն՝ որ շուրջն կային, զի ոչ գիտացին զտեսիլն: Ասէ ցնա Աբգար. Եթէ դո՞ւ իցես արդարև աշակերտ օրհնելոյն Յիսուսի, զոր ասաց առաքել ինձ այսր, և կարո՞ղ իցես բժշկել զցաւս իմ: Պատասխանի ետ Թադէ. Եթէ հաւատասցես 'ի Քրիստոս Յիսուս յորդին Աստու-

quand je m'en irai, j'enverrai un de mes disciples, qui guérira tes maux, te donnera la vie à toi et à tous ceux qui sont avec toi ».

Anan, courrier d'Abgar, lui apporta cette lettre, ainsi que le portrait du Sauveur, image qui se trouve encore aujourd'hui dans la ville d'Édesse.

## XXXIII.

Prédication à Édesse de l'apôtre Thadée. — Copie de cinq lettres.

Après l'ascension de notre Sauveur, l'apôtre Thomas, l'un des douze, envoie un d'entre les soixante-dix disciples, Thadée, dans la ville d'Édesse, pour guérir Abgar et évangéliser, selon la parole du Seigneur. Thadée vient dans la maison de Tobie, prince juif, qu'on dit être de la race des Pacradouni. Tobie, ayant quitté Archam, n'abjura point, avec ses autres parens le judaïsme, mais en suivit les lois jusqu'au moment où il crut au Christ. Bientôt le nom de Thadée se répand dans toute la ville. Abgar, en apprenant son arrivée, dit : « C'est bien celui au sujet duquel Jésus m'a écrit » ; et aussitôt Abgar manda l'apôtre. Lorsque Thadée entra, une apparition merveilleuse se peignit aux yeux d'Abgar sur le visage de l'apôtre ; le roi s'étant levé de son trône, tomba la face contre terre et se prosterna devant Thadée. Ce spectacle surprit fort tous les princes assistans, car ils ignoraient le fait de la vision. « Es-tu vraiment, dit Abgar à Thadée, es-tu disciple de Jésus à jamais béni ? es-tu celui qu'il m'a promis de m'envoyer, et peux-tu guérir mes maux ? » — « Oui » répondit

ծոյ, տացին խնդրուածք սրտի քո։ Ասէ ցնա Աբգար․ Ես հաւատացի 'ի նա և 'ի հայրն նորա․ վասն որոյ կամեցայ առնուլ զզօրս իմ և գալ կոտորել զՀրէայսն , որ խաչեցին զնա , եթէ ոչ էր արգելեալ վասն թագաւորութեանն հռովմայեցւոց ։

Եւ յայսմ բանէ սկիզբն արարեալ Թադէի , աւետարանեաց նմա և քաղաքի նորա․ և եդեալ ձեռն 'ի վերայ բժշկեաց զնա, և զԱբդիու պատագրոս իշխան քաղաքին և պատուական յամենայն տանն արքայի․ նա և զամենայն՝ որ էին 'ի քաղաքին հիւանդք և ախտաժետք , բժշկեաց։ Եւ հաւատացին ամենեքեան․ և մկրտեցաւ ինքն Աբգար և ամենայն քաղաքն․ և զդուրս տաճարաց կռոցն փակեցին․ և որ 'ի վերայ բագնին և սեանն կային պատկերքն՝ ծածկեալ պատեցին եղեգամբ․ և ոչ զոք ածէր բռնութեամբ 'ի հաւատս , բայց օր ըստ օրէ յաւելեալ 'ի հաւատացեալսն բազմանային ։

Իսկ Առաքելոյն Թադէի զխոյրարար ոմն մետաքսագործ մկրտեալ , և անուն կոչեցեալ Ադդէ , ձեռնադրեալ 'ի վերայ Եդեսիայ , փոխանակ իւր թողու առ արքայի ։ Եւ իւր առեալ հրովարտակ յԱբգարէ , զի ամենեքեան լուիցեն աւետարանին Քրիստոսի , գայ առ Սանատրուկ քեռորդի նորին , զոր կարգեալ էր 'ի վերայ աշխարհին և զօրացն ։ Բայց Աբգար յօժարեցաւ գրել թուղթ առ Տիբերիոս կայսր , որ ունի օրինակ զայս ։

Թուղթ Աբգարու առ Տիբերիոս ։

ԱԲԳԱՐ արքայ Հայոց , տեառն իմում Տիբերի կայսեր հռովմայեցւոց խնդալ ։

Գիտելով իմ, թէ ոչ ինչ ծածկի 'ի քումմէ թագաւորութենէդ , այլ իբրև զմտերիմ քո՝ աւելի ես

Thadée, « si tu crois en Jésus-Christ, fils de Dieu, les vœux de ton cœur seront exaucés. » — « J'ai cru en Jésus » dit Abgar, « j'ai cru en son père; c'est pourquoi je voulais aller à la tête de mes troupes exterminer les Juifs qui ont crucifié Jésus, si je n'avais été empêché à cause de la puissance des Romains ».

Dès lors Thadée se mit à évangéliser le roi et sa ville; posant les mains sur Abgar, il le guérit; il guérit aussi un podagre, Abdiou, prince de la ville, très honoré dans toute la maison du roi. Il guérit encore tous les malades et les infirmes de la ville, et tous crurent en Jésus-Christ. Abgar fut baptisé et toute la ville avec lui, et les temples des faux dieux furent fermés, et toutes les statues des idoles placées sur les autels et les colonnes furent cachées, voilées avec des roseaux. Abgar n'obligeait personne par la force d'embrasser la foi, mais de jour en jour le nombre des croyans se multipliait.

L'apôtre Thadée baptise un fabricant de coiffures de soie, appelé Atté, le consacre, l'établit à Édesse et le laisse au roi en sa place. Thadée, après avoir reçu des lettres patentes d'Abgar, qui veut que tous écoutent l'Évangile du Christ, s'en va trouver Sanadroug, fils de la sœur d'Abgar, que ce prince avait établi sur le pays et sur l'armée. Abgar se plut à écrire à l'empereur Tibère une lettre ainsi conçue:

### Lettre d'Abgar à Tibère.

« Abgar, roi d'Arménie, à mon seigneur Tibère, empereur des Romains, salut:

« Je sais, que rien n'est ignoré de ta majesté; mais comme ton ami, je te ferai encore mieux connaître

իմացուցանեմ 'ի ձեռն գրոյ ։ Զի Հրեայք, որ բնա-
կեալ են 'ի գաւառս պաղեստինացւոց, ժողովեալ
խաչեցին զՔրիստոս առանց իրիք յանցանաց, 'ի վե-
րայ մեծամեծ երախտեացն՝ զոր արար առ նոսա, նը-
շանս և սքանչելիս, մինչև զմեռեալս անգամ յարու-
ցանել ։ Եւ գիտեա, զի զօրութիւնքս այս ոչ են սոսկ
մարդոյ, այլ Աստուծոյ ։ Զի և 'ի ժամանակին յո-
րում խաչեցինն զնա՝ արեգակն խաւարեցաւ, և եր-
կիր շարժեալ տատանեցաւ ․ և ինքն յետ երից աւ-
ուրց յարեաւ 'ի մեռելոց և երևեցաւ բազմաց ։ Եւ
այժմ յամենայն տեղիս անուն նորա 'ի ձեռն աշա-
կերտաց նորա սքանչելիս մեծամեծս կատարէ ․ որ և
առիս ինքեան եցոյց յայտնապէս ։ Եւ արդ այսուհե-
տև տէրութիւնդ քո գիտէ, որ ինչ արժան է հրա-
մայել 'ի վերայ ժողովրդեանն Հրէից, որք զայն գոր-
ծեցին, և գրել ընդ ամենայն տիեզերս, զի երկրպա-
գեսցեն Քրիստոսի իբրև ճշմարիտ Աստուծոյ ։ Ողջ լեր ։

### Պատասխանի Թղթոյն Աբգարու 'ի Տիբերեայ ։

ՏԻԲԵՐԻՈՍ կայսր հռովմայեցւոց, Աբգարու թա-
գաւորի Հայոց խնդալ ։

Զթուղթ մտերմութեանդ քո ընթերցան առա-
ջի իմ, վասն որոյ շնորհակալութիւն 'ի մէնջ քեզ
հասցէ ։ Թէպէտ և 'ի բազմաց մեր լուեալ զայդ յա-
ռաջագոյն, եցոյց և Պիղատոս ստուգապէս վասն նը-
շանացն նորա, և եթէ յետ յարութեանն 'ի մեռելոց
հաւատարիմ եղև բազմաց, թէ Աստուած է ։ Վասն
որոյ և ես կամեցայ առնել զայդ, զոր և դու խորհե-
ցար ։ Այլ քանզի սովորութիւն է հռովմայեցւոց՝
աստուած 'ի հրամանէ թագաւորի միայնոյ ոչ նստու-
ցանել, մինչև ոչ փորձեալ քննեսցի նա 'ի սինկղիտո-
սէն, վասն որոյ և իմ յայտնեալ զբանս զայս սինկղի-
տոսին, արհամարհեաց սինկղիտոսն, զի ոչ քննեցաւ

les faits par écrit. Les Juifs, qui habitent dans les cantons de la Palestine, ont crucifié Jésus, Jésus sans péché, Jésus après tant de bienfaits, tant de prodiges et de miracles accomplis en leur faveur, jusqu'à ressusciter les mort. Sache bien que ce n'est pas là les effets de la puissance d'un simple mortel, mais de Dieu. Pendant le temps qu'ils l'ont crucifié, le soleil s'obscurcit, la terre fut agitée, ébranlée; Jésus lui-même, trois jours après, ressuscita d'entre les morts et apparut à plusieurs. Aujourd'hui, en tous lieux, son nom seul, invoqué par ses disciples, produit les plus grands miracles: ce qui m'est arrivé à moi-même en est la preuve la plus évidente. Ton auguste majesté sait désormais ce qu'elle doit ordonner à l'égard du peuple juif, qui a commis ce forfait; elle sait si elle doit faire publier par tout l'univers l'ordre d'adorer le Christ, comme vrai Dieu. Salut et santé ».

Réponse de Tibère à la lettre d'Abgar.

« Tibère, empereur des Romains, à Abgar, roi des Arméniens, salut:

« On a lu devant moi ta gracieuse lettre, et je veux que remercîment t'en soit fait de ma part. Quoique nous eussions déjà de plusieurs ouï raconter ces faits, Pilate nous a informé officiellement des miracles de Jésus. Il nous a certifié qu'après sa résurrection d'entre les morts, il a été reconnu par plusieurs pour être Dieu. En conséquence j'ai voulu, moi aussi, faire ce que tu proposes; mais comme c'est la coutume des Romains, de ne pas admettre un dieu seulement d'après l'ordre du souverain, tant que l'admission n'a pas été discutée, examinée en plein sénat, j'ai donc dû proposer l'affaire au sénat, et le sénat l'a rejetée avec mé-

նա յառաջագոյն 'ի սմանէ ։ Այլ մեք տուաք հրաման ամենայն ումեք որում և հաճոյ թուեսցի Քրիստոս, ընկալցին զնա ընդ աստուածս. և մահ այնոցիկ սպառնացեալ, որ չարախօս կայցեն զքրիստոնէից ։ Եւ վասն ժողովրդեանն Հրէից, որ յանդգնեցան խաչել զնա, զորմէ լսեմ՝ թէ ոչ արժանի խաչի էր նա և մահու, այլ պատուի և երկրպագութեան, յորժամ առից պարապումն 'ի պատերազմէս սպանիացւոց ապստամբողաց յինէն, քննեալ հատուցից նոցա զարժանն ։

Դարձեալ գրէ թուղթ Աբգար առ Տիբերիոս ։

ԱԲԳԱՐ արքայ Հայոց, տեառն իմում Տիբերի կայսեր հռովմայեցւոց խնդալ ։

Զթուղթ գրեալ ըստ արժանի քոյոյ տէրութեանդ տեսի, և ընդ հրամանն մտածութեանդ քո ուրախացայ. և եթէ ոչ ցասնուցուս ինձ, գործ սխնդալիտասիդ յոյժ այպանելի է. քանզի առ դոսա՝ 'ի քննութենէ մարդկան տուեալ լինի աստուածութիւնն ։ Եւ արդ այսուհետև եթէ ոչ լինիցի հաճոյ Աստուածըն մարդոյն, Աստուած լինել նա ոչ կարէ. և իբրև յայսմանէ մարդոյն արժան է քաւել զԱստուածն ։ Եւ այց քեզ տեառն իմոյ հաճոյ թուեսցի առաքել զայլոք յԵրուսաղէմ փոխանակ Պիղատոսի, զի լուծցի նա անարգանօք յիշխանութենէն՝ յոր կարգեցեր զնա. վասն զի արար զկամս Հրէիցն, և խաչեաց զՔրիստոս 'ի տարապարտուց առանց քոյոյ հրամանի ։ Ողջ լինել քեզ ըղձամ ։

Զայս գրեալ Աբգարու, զհաւաստր թղթոյն եդ

pris, sans doute, parce qu'elle n'avait pas été examinée d'abord par lui. Mais nous avons donné ordre que tous ceux à qui Jésus conviendra, le reçoivent parmi les dieux. Nous avons menacé de mort quiconque parlerait mal des chrétiens. Quant au peuple juif, qui a osé crucifier Jésus, lequel, comme je l'entends dire, loin de mériter la croix et la mort, était digne d'honneur, digne de l'adoration des hommes ; lorsque je serai débarrassé de la guerre contre l'Hispanie révoltée, j'examinerai l'affaire, et je traiterai les Juifs comme ils le méritent ».

Abgar écrit encore une lettre à Tibère.

« ABGAR roi des Arméniens, à mon seigneur Tibère empereur des Romains, salut :

« J'ai reçu la lettre écrite de la part de ton auguste majesté, et j'ai applaudi aux ordres émanés de ta sagesse. Si tu te ne fâches pas contre moi, je dirai que la conduite du sénat est extrêmement ridicule et absurde ; car, pour les sénateurs, c'est d'après l'examen et par le suffrage des hommes que peut être donnée la divinité. Ainsi donc, si Dieu ne convient point à l'homme, il ne peut être Dieu, puisqu'il faut que Dieu soit jugé, justifié par l'homme. Il paraîtra sans doute juste à mon seigneur et maître, d'envoyer un autre gouverneur à Jérusalem en place de Pilate, qui doit être ignominieusement chassé du poste puissant où tu l'avais mis, car il a fait la volonté des Juifs, il a crucifié le Christ injustement, sans ton ordre. Porte toi bien, je le désire ».

Abgar ayant écrit cette lettre, en déposa copie, ainsi que copie des autres lettres, dans ses archives.

'ի դիւանի իւրում, որպէս և զայլսն։ Գրեաց և առ Ներսեհ մանուկ արքայ ասորեստանի 'ի Բաբելոն։

Թուղթ Աբգարու առ Ներսեհ։

ԱԲԳԱՐ արքայ Հայոց, որդւոյ իմոյ Ներսեհի խնդալ։

Ողջունի քոյոյ տեսի, և զՊերոզ լուծի 'ի կապանաց, և զվնաս նորա թողի նմա. և եթէ կամ իցէ քեզ, կարգեսցես զնա 'ի վերակացութիւն Նինուէի, որպէս և կամիս։ Բայց վասն այնր զի գրեցեր առ իս, թէ տուր ածել զայրդ բժիշկ, որ զնշանսդ առնէ և քարոզէ այլ աստուած 'ի վեր քան զհուր և զջուր, զի տեսից և լուայց դմա, նա ոչ էր բժիշկ ըստ արուեստի մարդկան, այլ աշակերտ էր որդւոյն Աստուծոյ՝ արարչի հրոյ և ջրոյ. և վիճակ հասեալ 'ի կողմանս Հայոց առաքեցաւ։ Բայց յընկերաց նորա գլխաւորաց Սիմոն անուն, նա 'ի կողմանս Պարսից առաքեալ է. խնդիր արարեալ լուիցես նմա, յորժամ և հայրն քո Արտաշէս։ Եւ նա բժշկեսցէ զամենայն հիւանդութիւնս, և ճանապարհ կենաց ցուցցէ։

Եւ յաւել ևս գրել առ Արտաշէս արքայ Պարսից օրինակ զայս։

Թուղթ Աբգարու առ Արտաշէս։

ԱԲԳԱՐ արքայ Հայոց, Արտաշիսի եղբօր իմում Պարսից արքայի խնդալ։

Գիտեմ զի արդ լուեալ է քո վասն Յիսուսի Քրիստոսի որդւոյն Աստուծոյ, զոր խաչեցին Հրեայքն. որ յարեաւն 'ի մեռելոց, և առաքեաց զաշակերտսն իւր ընդ ամենայն տիեզերս՝ ուսուցանել ընդ հանուր։ Եւ մի յաշակերտաց նորա գլխաւորաց Սիմոն անուն՝ է 'ի կողմանս քոյոյ տէրութեանդ։ Արդ խնդիր

Il écrivit aussi au jeune Nerseh, roi d'Assyrie, à Babylone.

Lettre d'Abgar à Nerseh.

« ABGAR, roi des Arméniens, à mon fils Nerseh, salut :

« J'ai reçu ta lettre et tes hommages ; j'ai déchargé Béroze de ses fers, et lui ai remis ses offenses ; si cela te fait plaisir, donne lui le gouvernement de Ninive. Mais quant à ce que tu m'écris de t'envoyer ce médecin qui fait des miracles et prêche un autre Dieu supérieur au feu et à l'eau, afin que tu puisses le voir et l'entendre, je te dirai: Ce n'était point un médecin selon l'art des hommes, c'était un disciple du fils de Dieu, créateur du feu et de l'eau; il a été destiné, envoyé aux contrées de l'Arménie. Mais un de ses principaux compagnons, nommé Simon, est envoyé dans les contrées de la Perse. Cherche le et tu l'ententendras, toi, ainsi que ton père Ardachès. Il guérira tous vos maux et vous montrera le chemin de la vie ».

Abgar écrit aussi à Ardachès, roi des Perses, la lettre qui suit :

Lettre d'Abgar à Ardachès.

« ABGAR, roi des Arméniens, à Ardachès, mon frère, roi des Perses, salut :

« Je sais que tu as ouï parler de Jésus-Christ, fils de Dieu, que les Juifs ont crucifié, de Jésus qui est ressuscité d'entre les morts, et a envoyé ses disciples par tout l'univers pour instruire les hommes. L'un de ses principaux disciples, nommé Simon, se trouve dans les états de ta majesté. Cherche le, tu le trouveras

արարեալ գտցես զնա, և նա բժշկեսցէ զամենայն ախտս հիւանդութեանց՝ որ ՚ի ձեզ, և ճանապարհ կենաց ցուցցէ. և հաւատասցես բանի նորա, դու և եղբարք քո և ամենեքեան, որ հնազանդին քեզ կամաւոր։ Ո՜ի ախորժելի է ինձ, զձեզ ըստ մարմնոյ ազգականս՝ լինել ինձ մտերիմ հարազատս և ըստ հոգւոյ։

Եւ մինչ դեռ պատասխանի այսց թղթոց ոչ էր ընկալեալ, վախճանի Աբգարիոս, թագաւորեալ ամս երեսուն և ութ։

## ԼԴ

Յաղագս վկայութեան Առաքելոցն մերոց։

ՅԵՏ մահուանն Աբգարու բաժանի թագաւորութիւնն Հայոց յերկուս. քանզի Անանուն որդի նորա կալեալ թագ՝ թագաւորէ յԵդեսիա, և քեռորդի նորա Սանատրուկ ՚ի Հայս։ Բայց որ ինչ առ սոցա ժամանակաւ՝ յառաջագոյն գրեալ յայլոց, զգալուստ Առաքելոյն ՚ի Հայս, և հաւատալ Սանատրկոյ, և թողուլ զհաւատն յերկիւղէ նախարարացն Հայոց, և կատարումն Առաքելոյն և որք ընդ նմա՝ ՚ի գաւառին Շաւարշան՝ որ այժմ կոչի Արտազ, և պատառումն քարին և յիւրար գալ և ընդունել զմարմին Առաքելոյն, և առնուլ անտի աշակերտացն և թաղել ՚ի դաշտին. և մարտիրոսանալ թագաւորի դստերն Սանդխտոյ հուպ ՚ի ճանապարհն. և աստ ուրեմն յայտնեալ նշխարաց երկոցունց, և փոխել յապառաժն։ Այս ամենայն, որպէս ասացաք, այլոց պատմեալ յառաջագոյն քան զմեզ, ոչ ինչ կարևորագոյն համարեցաք աճել երկրորդել։ Նոյնպէս և որ ինչ վասն կատարմանն Ադդէի աշակերտի Առա-

et il vous guérira de toutes vos maladies, et il vous montrera le chemin de la vie, et tu croiras à ses paroles, toi, tes frères et tous ceux qui t'obéissent volontairement. Il m'est bien doux de penser que mes parens, selon la chair, seront aussi mes parens, mes amis, selon l'esprit ».

Abgar n'avait pas encore reçu réponse à ces lettres, lorsqu'il meurt, ayant régné trente-huit ans.

## XXXIV.

### Martyre de nos apôtres.

Après la mort d'Abgar, le royaume d'Arménie est divisé en deux: Ananoun, fils d'Abgar, règne à Édesse, et le fils de sa sœur, Sanadroug, en Arménie. Ce qui se passa de leur temps, a été décrit par d'autres antérieurement : l'arrivée de l'apôtre en Arménie, et la conversion de Sanadroug, et son apostasie par crainte des satrapes arméniens, et le martyre de l'apôtre et de ses compagnons au canton Chavarchan, appelé aujourd'hui Ardaz, et la pierre s'entrouvrant pour recevoir le corps de l'apôtre, et l'enlèvement de ce corps par ses disciples, son inhumation dans la plaine, et le martyre de la fille du roi, de Santoukhd près du chemin, et l'apparition des reliques des deux saints, et leur translation dans les rocailles; toutes circonstances rapportées par d'autres, comme nous l'avons dit, long-temps avant nous : nous n'avons pas cru important de les répéter ici. De même aussi ce qui se rapporte au martyre d'Attée, disciple de l'apôtre, à Édes-

քեղյն յԱդեսիայ յորդւոյն Աբգարու, գտանի յայլոց պատմեալ յառաջագոյն քան զմեզ։

Որ իբրև թագաւորեաց յետ մահուան հօրն, ոչ եղև ժառանգորդ հայրենի առաքինութեանն, այլ եբաց զտաճարս կռոցն և կալաւ զպաշտօն հեթանոսութեանն։ Եւ յղեաց առ Ադդէ, զի արասցէ նմա խոյր բեհեզեայ անգուածով ոսկւոյ, որպէս յառաջագոյն առնէր հօրն նորա։ Եւ պատասխանի ընկալաւ, թէ ոչ արասցեն ձեռք իմ խոյր գագաթան անարժանի, որ ոչ երկրպագէ Քրիստոսի Աստուծոյ կենդանւոյ։ Եւ իսկոյն հրամայեաց միում՚ի զինակրացն կտրել զոտս նորա սրով։ Որոյ երթեալ, և տեսեալ զնա՝ զի նստէր յաթոռ վարդապետութեանն, էած սուսերաւ և ՚ի բաց կտրեաց զսրունս նորա. և նոյնժամայն աւանդեաց զոգին։ Զայս ծայրաքաղ արարեալ համառօտ յիշատակեցաք, որպէս զառ ՚ի յայլոց պատմեալ նախկին։

Բայց վկայեցաւ Հայոց և Բարդուղիմէոս Առաքեալ, որ և կատարեցաւ առ մեզ յԱրեբանոս քաղաքի։ Իսկ զՍիմոնէ, որ Պարսիցն վկայեցաւ, ոչ զհաւաստին կարեմ պատմել՝ եթէ զինչ գործեաց և կամ ուր կատարեցաւ։ Քանզի պատմի յումանց, Սիմոնի ումեմն Առաքելոյ կատարիլ՚ի Վերիոսփորայ. և թէ նա իցէ ճշմարտիւ, և թէ էր աղագաւ գալուստ նորա անդր, ոչ գիտեմ. այլ միայն նշանակեցի, զի գիտասցես՝ թէ ոչ ինչ մնայ յիմմէ ջանից պատմել քեզ զամենայն, որ ինչ անկ է։

## ԼԵ

Վասն Սանատրկոյ թագաւորութեանն, և սպանման ծննդոցն Աբգարու, և վասն Հեղինեայ տիկնոջ։

ՍԱՆԱՏՐՈՒԿ թագաւորեալ, զօրս ժողովէ՚ի ձեռն քաջացն Բագրատունեաց և Արծրունեաց դայեկաց

se, martyre ordonné par le fils d'Abgar, se trouve rapporté par d'autres avant nous.

Le prince qui régna après la mort de son père, ne fut pas l'héritier des vertus paternelles ; il ouvrit les temples des idoles, embrassa le culte des païens. Il envoie dire à Attée : « Fais moi une coiffure en toile tissée d'or, comme celles que tu faisais autrefois pour mon père ». Il reçut cette réponse d'Attée : « Mes mains ne feront point de coiffure pour un prince indigne, qui n'adore pas le Christ Dieu vivant ». Aussitôt, le roi d'ordonner à un de ses gens d'armes de couper les pieds à Attée. Le soldat étant allé et ayant vu le saint personnage assis dans la chaire doctorale, avec son glaive lui coupa les jambes, et aussitôt le saint rendit l'esprit. Nous mentionnons ce fait sommairement, comme un fait rapporté par d'autres depuis longtemps.

Vint ensuite en Arménie l'apôtre Barthélemi qui fut martyrisé chez nous, en la ville d'Arépan. Quant à Simon, envoyé en Perse, je ne puis pas rapporter avec certitude ce qu'il fait, ni où il souffre le martyre. On raconte qu'un Simon apôtre est martyrisé à Vériospore. Le fait est-il vrai, ou pourquoi la venue du saint en ce lieu ? je ne sais ; j'ai seulement signalé cette circonstance afin que tu saches bien que je n'épargne aucun soin, pour te rapporter tout ce qui est nécessaire. menteur !

## XXXV.

Règne de Sanadroug. — Meurtre des enfans d'Abgar. — La princesse Hélène.

Sanadroug étant sur le trône, lève des troupes avec le secours des braves Pacradouni et Ardzrouni, qui

իւրոց, իշխանել տալ պատերազմաւ ընդ որդւոյն Աբգարու, զի բոլորին տիրեսցէ թագաւորութեան։ Այլ մինչ դեռ նա յայսմ էր, աստուածային իմն անհնարկութեամբ խնդրեցաւ վրէժ մահուանն Ադդէի յորդւոյն Աբգարու։ Քանզի սիւն կճեայ կանգնել տայր յԵդեսիայ ՚ի վերնատունն ապարանից իւրոց, և ինքն ՚ի ներքոյ կալով հրամայէր զորպէսն առնել. որ զերծեալ յունողացն, անկաւ ՚ի վերայ նորա և խորտակեաց զոտն և սատակեաց։

Այլ իսկոյն պատգամ բնակչաց քաղաքին եկն առ Սանատրուկ, խնդրելով պայման ուխտի, զի մի՛ վրդովեսցէ զնոսա ՚ի քրիստոնէութեան հաւատոց, և նոքա տացեն զքաղաքն ՚ի ձեռս և զգանձս թագաւորին։ Որ արարեալ, յետոյ ստեաց. նա և զամենայն զաւակ տանն Աբգարու մաշեաց սրով, բայց յաղջկանց՝ զոր եհան ՚ի քաղաքէն բնակել ՚ի կողմանս Հաշտենից։ Այսպէս և զգլուխ կանանցն Աբգարու, որում անուն էր Հեղինէ, առաքեաց յիւրային քաղաքն բնակել ՚ի Խառան, ՚ի վերայ թողլով նմա զտիկնութիւնն ամենայն Միջագետաց, փոխանակ բարեացն զոր գտեալ էր ՚ի ձեռն նորա յԱբգարէ։

Այս Հեղինէ զարդարեալ հաւատովք, որպէս և զայր իւր զԱբգար, ոչ հանդուրժեաց բնակել ՚ի մէջ կռապաշտիցն. այլ չոգաւ յԵրուսաղէմ յաւուրս Կղաւդեայ, ՚ի սովին՝ զոր մարգարէացաւն Ագաբոս. և տուեալ զամենայն գանձս իւր յԵգիպտոս, և գնեաց ցորեան բազում յոյժ և բաշխեաց ամենայն կարօտելոց. որում և վկայէ Յովսեպոս. որոյ և շիրիմ նշանաւոր կայ առաջի դրանն Երուսաղէմ մինչև ցայսօր ժամանակի։

l'ont élevé, et va faire la guerre aux enfans d'Abgar, pour se rendre maître de tout le royaume. Pendant que Sanadroug était occupé de ces affaires, comme par un effet de la Providence divine, vengeance est tirée de la mort d'Attée ; car une colonne de marbre que le fils d'Abgar faisait élever à Édesse, sur le comble de son palais, comme il était dessous pour ordonner le travail, échappa des mains des ouvriers, tomba sur lui et lui écrasa les pieds.

Aussitôt de la part des habitans de la ville vint à Sanadroug un message, pour lui demander un traité par lequel il s'engageât à ne pas les troubler dans l'exercice du christianisme, moyennant quoi ils livreront la ville et les trésors du roi. Sanadroug promit, mais dans la suite viola son serment ; Sanadroug passa au fil de l'épée tous les enfans de la maison d'Abgar, à l'exception des filles, qu'il retira de la ville pour les établir au canton de Hachdiank. Quant à la première des femmes d'Abgar, appelée Hélène, il l'envoya dans sa ville à Kharan, et lui laissa la souveraineté de toute la Mésopotamie, en souvenir des bienfaits qu'il avait reçus d'Abgar par le moyen d'Hélène.

Hélène, pieuse comme son mari Abgar, ne voulut pas habiter au milieu des idolâtres ; elle s'en alla à Jérusalem du temps de Claude, durant la famine qu'avait prédite Agabus ; elle acheta en Égypte, avec tous ses trésors, une immense quantité de blé qu'elle distribua aux indigens, fait dont témoigne Joseph. Le tombeau d'Hélène, tombeau vraiment remarquable, se voit encore aujourd'hui devant la porte de Jérusalem.

## ԼԶ

Յաղագս նորոգման Մծբին քաղաքի, և անուանակոչութեանն Սանատրկոյ, և մահուան նորին։

Իսկ որ ինչ գործք եղեալ Սանատրկոյ, ոչ ինչ յիշատակաց արժանի համարեցաք բայց 'ի շինուածոց Մծբին քաղաքի։ Զի 'ի շարժմանէ խախտեալ, քակեաց և վերստին շինեաց պայծառագոյն, և պարըսպեաց կրկին պարսպով և պատուարաւ. և զինքն անդրի 'ի միջին հաստատեաց, մի դրամ 'ի ձեռն ունելով. որ նշանակէ այսպիսի ինչ, եթէ 'ի շինել քաղաքիս ամենայն գանձքս ծախեցան, և այս միայն մնաց։

Բայց թէ ընդէ՞ր Սանատրուկ կոչեցաւ, ասելի է։ Քանզի յաւուրս ձմերայնոյ ձմանապարհորդեալ 'ի Հայս քոյր Աբգարու Ոդէ, պատահէ բքոյ 'ի լերինս Կորդուաց. ցրուեաց զամենեսեան մրրիկ, մինչ ոչ գիտելով ընկեր զընկեր՝ ընդ որ վարեցաւ։ Իսկ դայեկին նորա Սանոտայ, քեռ Բիւրատայ Բագրատունւոյ, կնոջ Խոսրենայ Արծրունւոյ, առեալ զմանուկն, քանզի տղայ էր, եդ 'ի մէջ ստեանց իւրոց, մնալով 'ի ներքոյ ձեանն զերիս տիւս և զերիս գիշերս։ Զոր մէ առասպելաբանեն, եթէ կենդանի իմն նորահրաշ սպիտակ յաստուածոցն առաքեալ՝ պահէր զմանուկն։ Բայց որչափ եղաք վերահասու, այսպէս է. շուն սպիտակ ընդ խնդրակսն լեալ, պատահեաց մանկանն և դայեկին։ Արդ կոչեցաւ Սանատրուկ, 'ի դայեկէն

## XXXVI.

**Restauration de la ville de Medzpine. — Dénomination de Sanadroug. — Sa mort.**

De tous les faits et gestes de Sanadroug, nous ne jugeons digne de souvenir que la construction de la ville de Medzpine ; car cette ville ayant été ébranlée par un tremblement de terre, Sanadroug la démolit, la reconstruisit plus magnifique, la ceignit de doubles murailles et de remparts. Sanadroug fit élever au milieu de la ville sa statue tenant à la main une seule pièce de monnaie, ce qui signifie : « Tous mes trésors ont été employés à construire la ville, il ne m'est plus resté que cette seule pièce de monnaie ».

Mais pourquoi ce prince fut-il appelé Sanadroug ? nous dirons : C'est que, voyageant pendant l'hiver en Arménie, la sœur d'Abgar, Otée, fut assaillie par un tourbillon de neige dans les monts Gortouk ; la tourmente a dispersé tout le monde, au point que le compagnon ne sait pas où a été poussé son compagnon. La nourrice du prince, Sanod, sœur de Piourad Pacradouni, femme de Khosran Ardzrouni, ayant pris le royal enfant, car Sanadroug était encore au berceau, le mit sur son sein et resta avec lui sous la neige trois jours et trois nuits. La fable s'est emparée de ce fait ; elle raconte qu'un animal, espèce nouvelle, merveilleux, d'une grande blancheur, envoyé par les dieux, gardait l'enfant. Mais, autant que nous en avons été informés, voici le fait : un chien blanc, qui se trouvait au milieu des hommes envoyés à la recherche, rencontra l'enfant et sa nourrice; le prince fut donc appelé Sanadroug, dénomination tirée du nom de sa

զանուանակոչութիւնն առեալ, որպէս թէ տուրք Սանոտայ։

Սա թագաւորեալ յերկոտասաներորդի ամի Արտաշիսի Պարթեւաց արքայի, կեցեալ ամս երեսուն՝ մեռաւ յորսի, նետիւ ուրուք դիպեալ փորոտեացն. իբր թէ վրէժս հատուցեալ ընդ չարչարման սրբոյ դըստերն։ Ղերուբնայ որդի Աբշադարայ դպրի գրեաց զամենայն գործս, որ ինչ յաւուրս Աբգարու եւ Սանատրկոյ, եւ եդ 'ի դիւանին յԵդեսիայ։

## ԼԵ

### Թագաւորել Երուանդայ եւ կոտորել զորդիսն Սանատրկոյ, եւ զերծանել Արտաշիսի փախստեամբ։

Յետ մահուանն Սանատրկոյ շփոթի թագաւորութիւնն։ Վասնզի Երուանդ ոմն, որդի կնոջ արշակունւոյ, թագաւորէ յութերորդ ամի Դարեհի վերջնոյ։ Եւ ունին զրոյցք յաղագս նորա այսպէս։ Կին ոմն յազգէ արշակունեաց, անձամբ խարստի եւ խոշորագեղ, վարար, զոր ոչ ոք դիմագրաւեաց առնուլ կնութեան, ծնանի երկուս մանկունս յանկարգ խառնակութենէ, որպէս Պասիփայէ զՄինոտաւրոս։ Եւ 'ի զարգանալ մանկանցն կոչեն անուանս Երուանդ եւ Երուազ։ Եւ 'ի չափ հասեալ Երուանդայ, լինի սրտեայ եւ անդամովք յաղթ։ Սա 'ի բազում իրս վերակացու առաջնորդութեամբ առաքեալ Սանատրկոյ, գտանի երեւելի. մինչեւ ամենայն նախարարացն Հայոց առաջին լինել. եւ խոնարհութեամբ եւ առատաձեռնութեամբ զամենայն ոք յինքն յանգուցանէր։ Եւ 'ի մեռանելն Սանատրկոյ, միաբա-

nourrice, (et du mot arménien *dourk* don,) comme, pour signifier don de Sanod.

Sanadroug, monté sur le trône la douzième année d'Ardachès, roi des Perses, ayant vécu trente ans, mourut à la chasse d'un trait qui lui perça les entrailles, comme en punition des tourmens qu'il avait fait souffrir à sa sainte fille. Ghéroupna, fils de l'écrivain Apchatar, a recueilli tous ces faits, arrivés du temps d'Abgar et de Sanadroug, et les a déposés dans les archives d'Édesse.

## XXXVII.

**Règne d'Érouant. — Meurtre des enfans de Sanadroug. — Ardachès trouve son salut dans la fuite.**

Après la mort de Sanadroug, son royaume est dans un état de confusion. Un certain Érouant, fils d'une femme Archagouni, règne la huitième année du dernier Darius. Voici ce que portent les récits au sujet de cet Érouant: Une femme de la race des Archagouni, d'une stature colossale, d'une figure repoussante, que personne n'avait consenti à prendre en mariage, enfante deux jumeaux, par suite d'un horrible commerce, comme Pasiphaé enfanta le Minotaure. Ces enfans en grandissant prennent les noms d'Érouant et d'Érouaz. Parvenu en âge, Érouant devient courageux, intrépide, fort, robuste, invincible; dans plusieurs affaires envoyé en qualité de chef par Sanadroug, il acquiert tant de gloire, qu'il devient bientôt le premier des satrapes arméniens. Par son humilité et sa libéralité, il se gagnait tous les cœurs; à la mort de Sanadroug, tous proclamèrent d'un commun accord

նեալ թագաւորեցուցին զնա առանց արանց յազգէն բագրատունեաց լինել թագադիր ։

Բայց 'ի թագաւորելն իւրում Երուանդ, կասկած ունելով յորդւոցն Սանատրկոյ, կոտորէ զամենեսեան ։ Թուի թէ վրէժս հատուցաւ սպանման որդւոցն Աբգարու ։ Բայց մի ոմն տղայ Արտաշէս անուն, զոր առեալ ստընտուի նորա, փախեաւ 'ի կողմանս Հէրայ՝ 'ի հովուաւանս Մաղխազանի, լուր առնելով դայեկի նորա Սմբատայ, որդւոյ Բիւրատայ Բագրատունւոյ, 'ի Սպեր գաւառի, 'ի շէնն Սմբատաւանի ։ Արդ իբրեւ լուէ Սմբատ, որդի Բիւրատայ, զբօթըն Սանատրկոյ եւ զգոյժ կոտորման որդւոցն նորա, առեալ զերկուս դստերս իւր՝ զՍմբատանոյշ եւ զՍմբատուրհի, նստուցանէ 'ի Բայբերդի, արս քաջս թողլով 'ի վերայ ամրոցին. եւ ինքն հանդերձ միով կնաւ իւրով եւ սակաւ արամբք գայ անցանէ 'ի խնդիր մանկանն Արտաշիսի ։ Որում իրազգած եղեալ արքային Երուանդայ, հետամուտ առաքէ. վասն որոյ բովանդակ ժամանակս ընդ երեսս լերանց եւ դաշտաց այլակերպեալ շրջելով հետի հանդերձ մանկամբն, մնացանէ 'ի հովուականս եւ յանդէորդս, մինչեւ պարապ գտեալ ժամ, անցանէ առ Դարեհ արքայ Պարսից ։ Եւ քանզի այր քաջ էր Սմբատ եւ ծանօթ յառաջագոյն, պատուի մեծապէս ընդ զօրագլուխս Պարսից, որպէս եւ մանուկն ընդ որդիս թագաւորին, տեղի բնակելոյ առեալ զԲատ եւ զՕզոմն կոչեցեալ գաւառս ։

Érouant roi, sans la présence d'aucun Pacradouni pour lui mettre la couronne sur la tête.

Érouant sur le trône, ayant des craintes du côté des enfans de Sanadroug, les extermine tous; il parait que vengeance fut tirée du meurtre des enfans d'Abgar. Un seul enfant, nommé Ardachès, échappe; sa nourrice s'enfuit avec lui aux contrées de Her dans les bergeries de Maghkhazan, donne avis au père adoptif du prince, à Sempad, fils de Piourad Pacradouni, au canton de Sber, dans le village de Sempadavan. Lorsque Sempad, fils de Piourad, apprend l'horrible nouvelle de la fin de Sanadroug, du massacre de ses enfans, prenant avec lui ses deux filles, Sempadanouïch et Sempadouhi, il les installe à Païperte, laissant de braves soldats à la garde de la forteresse. Pour lui, il s'en va avec une seule femme et quelques hommes de suite à la recherche du jeune Ardachès. Le roi Érouant, informé de ces menées, envoie des espions. C'est pourquoi, pendant long-temps, obligé d'errer sur les montagnes et dans les plaines avec l'enfant, sous différens déguisemens, Sempad l'élève dans les bergeries, au milieu des pâtres, jusqu'à ce que, trouvant l'occasion favorable, il passe près de Darius, roi des Perses. Comme Sempad était un homme brave et connu depuis long-temps, il est accueilli avec distinction parmi les capitaines des Perses; le jeune prince est admis parmi les enfans du roi qui assigne aux étrangers pour résidence les cantons de Pad et d'Ozom.

## ԼԸ

*Որ ինչ ջանաց Երուանդայ վասն 'ի բուռն ածելոյ զմանուկն Արտաշէս. և 'ի բաց թողլոյ զՄիջագետս:*

Բայց Երուանդայ զմտաւ ածեալ, թէ որպիսի չար թագաւորութեան նորա մնանի 'ի Մարս, խէթ սրտի լեալ՝ ոչ հեշտալի էր նմա քուն: Զանապազ 'ի յարթնութեան յայն հոգալով, նաև 'ի քուն անուրջս ահագինս նմին իրի տեսանէր: Վասն որոյ 'ի ձեռն հրեշտակաց և պատարագաց խնդրէր հաշտեցուցանել զարքայն Պարսից, տալ 'ի ձեռս զԱրտաշէս. ասելով, թէ Արիւն իմ և հարազատութիւն, ընդէ՞ր մնուցանես զՄարդ Արտաշէս հակառակ ինձ և իմոյ թագաւորութեանս, լսելով բանից Սմբատայ յեղուզակի, որ ասէ, թէ որդի է Արտաշէս Սանատրկոյ. և զորդի հովուաց և զանդէորդաց ջանայ առնել արշակունի, և արիւնքս և հարազատութիւն համբաւելով զնմանէ: Նա չէ որդի Սանատրկոյ, այլ ընդ խաբս գտեալ Սմբատայ զմար ումն տղայ, բաջաղի: Նոյնպէս և առ Սմբատ յղէր բազում անգամ, թէ ընդէ՞ր այդ քո մնոտի աշխատութիւնդ. խաբեալ 'ի սոլնտունէդ, մնուցանես զորդի Մարիդ հակառակ ինձ: Եւ լսէ ոչ սիրելոյ բանս պատասխանեաց: Յայնժամ առաքէ Երուանդ և սաստկէ զքաջն 'ի Բայբերդի, գերեալ զդստերսն Սմբատայ՝ պահէ յամրոցին յԱնի ոչ վատթարապէս:

Բայց թիկունս առնել Երուանդայ զհռոմայեցիս՝ ոչ ինչ վտանգի 'ի թագաւորութեանն Վեսպիանու և Տիտոսի, թողլով 'ի նոսա զՄիջագետս: Եւ յայնմ հետէ բարձաւ իշխանութիւնն Հայոց 'ի

## XXXVIII.

**Efforts multipliés d'Érouant pour se saisir du jeune Ardachès.— Érouant abandonne la Mésopotamie.**

Érouant, en pensant à l'ennemi de sa royauté, qui s'élevait en Médie, la haine dans le cœur, ne pouvait seulement goûter le repos. Éveillé, il était toujours occupé de cette pensée; durant le sommeil, il voyait les mêmes images dans des songes effrayans. C'est pourquoi, il pressait par ses députés et ses présens le roi des Perses de consentir à lui livrer Ardachès, disant: « Toi, du même sang qne moi, mon proche parent, pourquoi élever le Mède Ardachès, cet ennemi de ma personne et de ma royauté, sur la foi des paroles du brigand Sempad, qui dit que c'est Ardachès le fils de Sanadroug? Du fils d'un pâtre, d'un berger, il s'efforce, ce Sempad, de faire un Archagouni, publiant partout que c'est ton sang, ton proche parent; non, ce n'est pas le fils de Sanadroug. Sempad, qui, par la ruse et l'artifice d'une nourrice, n'a trouvé qu'un simple jeune Mède, ment ». Érouant envoyait également plusieurs fois dire à Sempad: « Pourquoi te donner toute cette peine inutile? Trompé par une nourrice, tu élèves le fils d'un simple Mède contre moi ». Érouant ne reçoit pas de réponse amicale. Furieux, il envoie exterminer les braves qui sont à Païperte, fait captives les filles de Sempad, et les garde dans la forteresse d'Ani, sans les traiter durement.

Protégé par les Romains, Érouant n'éprouve aucun dommage sous l'empire de Vespasien et de Titus, moyennant la cession qu'il leur fait de la Mésopotamie; depuis ce moment, l'autorité de l'Arménie sur cette

Միջագետաց, և հարկս առաւելագոյնս տայր Երուանդ 'ի Հայոց ։ Իսկ գործակալացն հռովմայեցւոց մեծապէս հանդերձեալ զքաղաքն Եդեսիայ, 'ի նմա հաստատեն զտունս գանձուց հարկաց ժողովելոց 'ի Հայոց, 'ի Միջագետաց և յասորեստանեաց ։ Եւ ժողովեն 'ի նմա զամենայն դիւանս, և կարգեն դպրոցս երկուս. մի՝ զբունն իւրեանց զԱսորին, և միւս ևս զՅոյնն. և զդիւանն հարկաց և զմեհենականն, որ կայր 'ի Սինոպ պոնտացւոց, անդր փոխեն ։

## ԼԹ

Յաղագս շինուածի Երուանդաշատ քաղաքի ։

ՅԱՒՈՒՐՍ սորա փոխին արքունիքն յԱրմաւիրն անուանեալ բլրոյն. քանզի էր հեռացեալ գետն Երասխ, և յերկարել ձմերայնոյն, և 'ի դառնահոտ հնչմանէ հիւսիսոյ պաղացեալ ձուլեալ վտակն, ոչ ուստեք արքունեացն բաւական թագաւորականին գտանէր տեղւոյ ։ Ընդ որ նեղեալ Երուանդայ, նա և ամրագունի ևս տեղւոյ եղեալ 'ի խնդիր, փոխէ զարքունիսն յարևմուտս կոյս 'ի քարակտուր մի բլուր, զորով պատ առեալ Երասխայ ընդդէմ Ախուրեանն հոսի գետ ։ Պարսպէ զբլուրն, և 'ի ներքսագոյն քան զպարիսպն ընդ բազում տեղիս կտրեալ զքարինսն մինչև յատակս բլրոյն հաւասար գետոյն, մինչև դիմել ջուրց գետոյն 'ի փորուածն, յըմպելեաց պատրաստութե̃ ։ Զմիջնաբերդն ամրացուցանէր բարձր պարսպօք, և դրունս պղնձիս կանգնէր 'ի միջոցի պարսպին, և ելանելիս երկաթիս 'ի ներքուստ 'ի վեր մինչև ցդրունսն. և 'ի նմա որոգայթս իմն ծածուկս ընդ մէջ աստիճանացն, որպէս զի ըմբռնեսցի՝ թէ

contrée fut perdue, et Érouant tirait des Arméniens, pour les Romains, des impôts encore plus lourds qu'auparavant. Les fonctionnaires des Romains, après avoir restauré magnifiquement la ville d'Édesse, y établissent des trésoreries destinées à recevoir les impôts perçus sur l'Arménie, la Mésopotamie, l'Assyrie. Ils rassemblent à Édesse toutes les archives; organisent deux écoles, l'une pour la langue du pays, le syrien, et l'autre pour le grec; ils transportent à Édesse les archives relatives aux tributs et aux temples, archives qui étaient à Sinope, ville du Pont.

## XXXIX.

### Construction de la ville Érouantachad.

Du temps d'Érouant, la cour du roi est transportée de la colline dite d'Armavir sur un autre point. Comme le fleuve Éraskh était éloigné, l'hiver étant long et le souffle glacial du nord assez intense pour faire geler les eaux du canal, il n'y en avait plus assez pour le service de la résidence royale. Érouant, frappé de ces inconvéniens, cherche, trouve une position plus forte, transfère sa résidence royale à l'occident, sur une colline calcaire, autour de laquelle roule l'Éraskh, et à l'opposé le fleuve Akhourian; Érouant ceint la colline de murailles, et, à une profondeur plus grande que celle des murailles, il coupe les pierres en beaucoup d'endroits, jusqu'à la base de la colline, au niveau du fleuve, jusqu'à l'entrée des eaux du fleuve dans les conduits, pour les besoins de la consommation. Érouant garnit de hautes murailles le fort construit au milieu de la ville; il pratiqua des portes d'airain au milieu de ces murailles, des escaliers en fer dans l'in-



որք գտեալ ելանելով դաւել կամիցի զարքայն ։ Եւ էր, ասեն, երկդիմի. որպէս զի մինն լիցի սպասաւորացն արքունի և ամենայն ելևմտից ճանապարհ տուընջենային, իսկ միւսն գիշերային և մարդադաւաց ։

## Խ

Թէ որպէս շինեաց զԲագարան քաղաք կռոց ։

ԲԱՅՑ Երուանդ շինեալ զքաղաքն իւր, և փոխեալ անդր զամենայն ինչ յԱրմաւիրայ ուրոյն՝ ի կռոցն, զոր ոչ օգուտ իւր համարեալ յիւրն փոխել՝ ի քաղաքն, զի մի ՚ի գալն և ՚ի զոհել անդ աշխարհի, ոչ զգուշութեամբ պահեսցի քաղաքն. այլ հեռագոյն ՚ի նմանէ իբր քառասուն ասպարիսաւ զհիւսիսով նմանն իւր քաղաքին շինեաց քաղաք փոքր ՚ի վերայ գետոյն Ախուրենայ, և անուանեաց Բագարան, այս ինքն թէ ՚ի նմա յօրինեալ է զկազմութիւն բագնացն. և փոխեաց անդր զամենայն զկուռսն որ յԱրմաւիր ։ Եւ մեհեանս շինեալ, զեղբայր իւր զԵրուազ քրմապետ կացուցանէր ։

## ԽԱ

Վասն տնկելոյ զանտառն, որ կոչի Ծննդոց ։

ՏՆԿԷ և մայրի մեծ ՚ի հիւսիսոյ կողմանէ գետոյն, և որմովք ամրացուցանէ, արգելլով ՚ի ներքս այծեմունս երագունս, և զեղանց և զեղջերուաց ազգ, և ցիռս և վարազս. որք ՚ի բազմութիւն աճեցեալ

térieur jusqu'au dessus de la porte, des piéges cachés entre les degrès des escaliers pour saisir quiconque voudrait, en montant furtivement, attenter à la personne du roi; cet escalier, dit-on, était double, de manière qu'un côté était pour les officiers de la cour, pour les allans et venans pendant le jour, l'autre côté était l'escalier de nuit, l'escalier des traîtres.

## XL.

### Comment Érouant bâtit-il Pacaran, ville des idoles?

Érouant, après avoir bati sa ville, y transporte tout ce qui était à Armavir, excepté les idoles qu'il ne croit pas de son intérèt propre d'y transférer, de peur que, à cause du concours du peuple qui viendrait de toutes parts sacrifier aux dieux, la ville ne pût être bien et soigneusement gardée; mais, à une distance de quarante stades au nord, il bâtit une petite ville à l'instar de la sienne, sur le fleuve Akhourian, et la nomma Pacaran, c'est-à-dire que dans cette ville Érouant forma réunion des divinités; en effet, il y transporte toutes celles qui étaient à Armavir; le temple bâti, il institua son frère Érouaz grand-prêtre.

## XLI.

### Plantation de la forêt appelée forêt de la Multiplication.

Érouant plante aussi une grande forêt au nord du fleuve, l'entoure de murailles pour retenir dans son enceinte les daims légers, les biches, les cerfs, les ânes sauvages, les sangliers. Ces animaux, croissant et multipliant, remplirent la forêt, pour le grand plaisir du

լցին զանտառն, որովք ուրախանայր թագաւորն յաւուրս որսոց։ Եւ անուանէ զանտառն Ծննդոց։

## ԽԲ

Վասն ձեռակերտին, որ կոչի Երուանդակերտ։

ՊԱՏՇԱՃ է ինձ ասել և յաղագս գեղեցիկ դաստակերտին Երուանդակերտի, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ և չքնաղ յօրինուածովք։ Զանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ և պայծառ շինուածովք, լուսաւոր որպէս ական բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցաց և հոտարանաց կազմութիւն, որպէս շուրջ զբբոճն զայլ բոլորակութիւն ական։ Իսկ զբազմութիւն այգեստանոյ, իբր զարտևանաց խիտ և գեղեցիկ ծիր. որոյ հիւսիսային կողմանն դիր կորակնաձև՝ արդարև գեղաւոր կուսից յօնից դարևանդաց համեմատ։ Իսկ 'ի հարաւոյ հարթութիւն դաշտաց, ծնօտից պարզութեան գեղեցկութիւն. իսկ գետն բերանացեալ դարաւանդօք ափանցն՝ զերկթերթիւն նշանակէ շրթունս։ Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոգցես 'ի բարձրաւանդակ թագաւորանիստն զհայեցուածսն ունի. և արդարև բերրի և թագաւորական դաստակերտն։

Զայս ամենայն զգործեցեալսն Երուանդայ՝ պարգևէ մեծն Տրդատ մարդկան ազգին Կամսարականաց, որպէս զմտերմաց և արեան կցորդաց ազգին Արշակունեաց. զոր յիւրում տեղւոջն պատմեսցուք։

Բայց ասեն զԵրուանդայ՝ ըստ հմայից դժնեայ գոլով ական հայեցուածով. վասն որոյ ընդ այգանալ աշալրջացն սովորութիւն ունել սպասաւորացն արքունի՝ վէմս որձաքարեայս ունել ընդդէմ Եր-

roi aux jours de la chasse ; Érouant appelle cette forêt, forêt de la Multiplication.

## XLII.

### La ville appelée Érouantaguerd.

Il m'est doux de parler de la ville Érouantaguerd que ce même Érouant bâtit si belle, si élégante ; car il remplit le milieu de la grande vallée d'habitans et de belles constructions : c'est comme la brillante prunelle de l'œil. Autour de l'habitation des hommes est une réunion de parterres fleuris, odoriférans, comme autour de la prunelle est tout le cercle de l'œil. D'innombrables plants de vigne sont comme une belle rangée de cils bien garnis. La position circulaire du côté nord est vraiment comparable aux sourcils de jeunes et belles filles ; au sud, la surface plane des champs est comme de belles joues bien lisses, bien unies. Le fleuve avec ses rives, comme une bouche entr'ouverte, représente les deux lèvres ; et ce site magnifique semble regarder fixement le sommet où s'élève le palais du roi ; c'est vraiment une habitation riche et superbe, une habitation royale.

très belle description

Cette place si magnifiquement édifiée par Érouant, Dertad le Grand la donne dans la suite à la famille des Gamsarian, comme unie à la race des Archagouni par les liens du sang et de l'amitié : ce que nous rapporterons en son lieu.

On dit qu'Érouant, selon la magie, avait un regard nuisible, malfaisant ; c'est pourquoi dès le matin les domestiques du palais avaient coutume d'exposer des pierres très dures devant Érouant, qui, par la maligni-

րուանդայ, և 'ի հայեցուածոցն դժնութենէ ասեն պայթել որձաքար վիմացն։ Բայց այս կամ եղիցի սուտ և առասպել, և կամ դիւական ինչ առ իւր ունել զօրութիւնս, զի այսպէս հայեցուածոցն անուամբ վնասեսցէ զորս կամի։

## ԽԳ

Թէ որպէս Սմբատայ օգնական արարեալ զնախարարս Պարսից՝ խնդրէ թագաւորեցուցանել զԱրտաշէս։

ԻՍԿ 'ի զարգանալ մանկանն Արտաշիսի, և 'ի բազում արութիւնս քաջութեան ցուցանել դայեկին Սմբատայ, հաճեալ ընդ նա նախարարք Արեաց, մաղթեն զթագաւորն տալ նմա պարգևս զինչ և խնդրեսցէ։ Եւ յանձն առեալ թագաւորին, ասէ ցնախարարսն. Տեսէք զինչ կամի այրն քաջ։ Եւ նոքա ասեն. Անմահ բարերարութիւնդ քո. ոչ այլ ինչ կամի Սմբատ, քան թէ զարիւնդ քո և հարազատութիւն, զԱրտաշէս որդի Սանատրկոյ զմերժեալն 'ի թագաւորութենէ իւրմէ, հաստատել յիւրում թագաւորութեանն։ Եւ յանձն առեալ արքային արքայից, տայ 'ի ձեռն Սմբատայ մասն ինչ 'ի զօրացն ասորեստանի և զզօրս Ատրպատականի, զի տարեալ զԱրտաշէս հաստատեսցէն 'ի գահն հայրենի։

## ԽԴ

Յաղագս լսելոյ Երուանդայ զգալն Արտաշիսի, և գումարեալ զզօրս 'ի պատրաստութիւն պատերազմի։

ԼՈՒՐ հասանէ առ Երուանդ յուտէացւոց գաւառին, եթէ գումարեաց արքայն Պարսից զօր բազում 'ի ձեռն Սմբատայ, զի 'ի վերայ քո խաղացեալ

té de son regard, les fendait; mais, ou le fait est faux et fabuleux; ou bien, c'était une puissance satanique dans Érouant pour nuire, soi-disant par la puissance de son regard, à tous ceux à qui il en voulait.

## XLIII.

Sempad, aidé par les satrapes de Perse, cherche à mettre Ardachès sur le trône.

Or, le jeune Ardachès était devenu grand; Sempad, son père adoptif, avait fait une foule d'actions de valeur et d'éclat: les satrapes des Arik, très satisfaits de Sempad, supplient le roi de lui accorder en présent ce qu'il demandera. Le roi consentant, dit aux satrapes: « Voyez ce que veut ce brave guerrier ». — « Immortel et généreux monarque, Sempad ne veut qu'une chose: c'est que tu remettes sur son trône ton proche parent, ton propre sang, Ardachès, le fils de Sanadroug, expulsé de son royaume ». Le roi des rois, accueillant la requête, confie à Sempad une partie de ses troupes de l'Assyrie et les troupes de l'Aderbadagan, pour remettre Ardachès sur le trône de ses pères.

## XLIV.

Érouant à la nouvelle de l'arrivée d'Ardachès, rassemble son armée pour se préparer aux combats.

Érouant apprend dans le canton d'Oudi, que le roi des Perses a rassemblé une puissante armée sous les ordres de Sempad, pour marcher contre lui, Érouant, et

ածցէ զմանուկն Արտաշէս՝ ի թագաւորութիւն իւր։ Զայս իբրև լուաւ Երուանդ, եթող անդէն զբազումս 'ի նախարարացն կողմնապահս, և ինքն գնաց 'ի քաղաքն իւր փութանակի, կուտել առ ինքն զզօրս Հայոց և զԻբերաց և զկողմանցն Կեսարու, այլ և զՄիջագետացն աղերսիւք և տրովք։ Եւ էին աւուրք գարնայնոյ. վասն որոյ երագ ժողովեցան զօրքն ամենայն. նա և Արգամ տանուտէր ազգին Մուրացան, որ 'ի ծննդոցն Աժդահակայ, ամբոխ հետևակաւ։ Քանզի էր Երուանդայ դարձուցեալ 'ի նա զգահն երկրորդական, զոր հանեալ էր 'ի նոցանէ Տիգրանայ և տուեալ էր իւրում քեռայնն Միհրդատայ. իսկ յետ մահուանն Միհրդատայ՝ ոչ լինէր ումեք տուեալ, մինչև Երուանդայ դարձուցանել զնա առ Արգամ։ Եւ ոչ միայն նմա, այլ և ամենայն նախարարացն տայր պարգևս, և զօրացն ամենեցուն պարգևէր առատապէս։

## ԽԵ

Թէ որպէս ընդ մուտն Արտաշիսի յիւր աշխարհն աջողեցաւ գործն։

Իսկ Սմբատ հանդերձ մանկամբն Արտաշիսիւ աճապարէր հասանել 'ի սահմանս ուտէացւոց։ Ընդ առաջ նորա ելին զօրք այնր կողմանն, նա և նախարարքն զորս եթող Երուանդ։ Զայն իբրև լուան այլ նախարարքն Հայոց՝ լուծանէին լքանէին և զատչել յԵրուանդայ խորհէին. նա և զայն ևս տեսանէին, եթէ զօրքն հռովմայեցւոց ոչ հասանեն նմա 'ի թիկունս։ Իսկ Երուանդ առաւել ևս յորդորագոյն տայր զպարգևսն, և բաշխէր միոյ միոյ ումեք 'ի նոցանէ զգանձսն. և որչափ առատանայր, առաւել ևս ատելի լինէր։ Քանզի գիտէին ամենեքեան, եթէ

remettre le jeune Ardachès sur son trône. Aussitôt qu'Érouant eut appris cette nouvelle, il laissa plusieurs de ses satrapes pour garder le pays, vola lui-même dans sa ville, appela à lui les troupes de l'Arménie et les troupes de l'Ibérie, celles des cantons de Césarée et même celles de la Mésopotamie à force de prières et de présens. C'était alors le printemps, aussi toutes les troupes furent-elles promptement rassemblées. Arcam, chef de la race Mouratzan, issue de la postérité d'Astyage, était à la tête d'une troupe de fantassins. Érouant lui avait rendu le second trône que Dicran avait enlevé à sa famille pour le donner au mari de sa sœur, à Mihrdate; après la mort de Mihrdate,[1] la place n'avait été donnée à personne, jusqu'au moment où Érouant la rendit à Arcam. Érouant faisait aussi des présens à tous les satrapes, il donnait largement à toutes ses troupes.

## XLV.

### Comment l'entreprise d'Ardachès réussit-elle lors de son entrée dans son pays?

Sempad, avec le jeune Ardachès, se hâtait d'arriver au pays d'Oudi. Au devant d'eux s'avancèrent les troupes de ces contrées et même les satrapes qu'Érouant avait laissés; à cette nouvelle, les autres satrapes d'Arménie perdant tout courage, pensaient à se retirer du parti d'Érouant, d'autant plus qu'ils voyaient bien que les Romains ne venaient point à son secours. Mais Érouant prodiguait encore davantage les présens, distribuait à chacun ses propres trésors; et plus il se montrait libéral, plus il devenait odieux; car tous savaient bien qu'il ne donnait rien par libéralité, mais

ոչ առ առատութեան տայ, այլ առ երկիւղի վտանէ։ Եւ ոչ այնչափ սիրելի զայնոսիկ առնէր՝ որոց շատն տայր, քան թէ թշնամի զայնս՝ որոց ոչն տայր պերճագոյնս։

## ԽԶ

Երուանդայ պատերազմ ընդ Արտաշիսի և փախուստ, և առումն քաղաքի նորա և մահ։

ՌԱՑՑ Սմբատ հանդերձ մանկամբն Արտաշիսիւ եկն եհաս առ ափն ծովուն Գեղամայ, զթիկամբք Արագածն կոչեցեալ լերինն. աճապարէին հասանել 'ի բանակն Երուանդայ։ Առ ոչինչ համարեալ զբազմութիւն զօրաց նորա, միայն կասկածէին 'ի Մուրացանէն Արգամայ, զի այր քաջ էր և բազմաց տէր տիգաւորաց։ Եւ ճամբարն Երուանդայ էր բացագոյն 'ի քաղաքէ նորին աւելի քան երեքհարեւր ասպարիսաւ 'ի հիւսիսոյ 'ի վերայ գետոյն Ախուրեան։ Զայս իբրև լուէր Երուանդ, հանէր ընդ առաջ զբազմութիւն զօրացն, և ճակատէր ոչ հեռի յիւրմէ բանակէն։ Իսկ Արտաշիսի առաքեալ պատգամաւոր Արգամ նահապետ Մուրացանաց հանդերձ բազում երդմամբք, թողուլ 'ի վերայ նորա զոր ինչ գտեալ է յԵրուանդայ, և կրկին այլ յաւելուլ, միայն զի զԵրուանդ թողեալ 'ի բաց գնասցէ։

Եւ իբրև հանդէպ ճակատուն Երուանդայ ելին նշանք Արտաշիսի, Արգամայ առեալ զբազմութիւն հետևակացն՝ 'ի կողմ ելանէր։ Եւ Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել. և յառաջեալ զճակատն իւր, իբրև զարծիւ յերամս կաքաւուց խոյանայր։ Իսկ նախարարքն Հայոց, որ յաջ և յահեակ թևսն էին, 'ի նա խառնեալ միանային։ Եւ զօրքն Սրաց, հանդերձ արքայիւն իւրեանց Փարսմանաւ,

qu'il prodiguait tout par crainte ; d'ailleurs, il s'attirait moins l'amitié de ceux à qui il donnait beaucoup, que l'inimitié de ceux à qui il ne donnait pas plus libéralement.

## XLVI.

Combat d'Érouant avec Ardachès. — Sa fuite. — Prise de sa ville. — Mort d'Érouant.

SEMPAD, avec le jeune Ardachès, s'avance vers la rive de la mer de Kégham, derrière la montagne appelée Aracadz ; Ardachès et Sempad se hâtaient d'arriver au camp d'Érouant ; sans compter pour rien la multitude de ses soldats, ils ne redoutaient que le Mouratzan Arcam, intrépide guerrier, chef d'une troupe de hallebardiers. L'armée d'Érouant était à plus de trois cents stades de la ville, au nord, sur le fleuve Akhourian. Érouant, averti de la marche de l'ennemi, fit avancer ses innombrables légions, et rangea son armée non loin de son camp. Cependant Ardachès envoie un message à Arcam, chef de la race des Mouratzan, s'engageant par mille sermens à lui laisser tout ce qu'il a reçu d'Érouant, à doubler même ces concessions, pourvu que lui, Arcam, abandonne la cause d'Érouant.

Comme les drapeaux d'Ardachès s'avançaient contre l'armée d'Érouant, Arcam avec son infanterie passa du côté d'Ardachès. Sempad ordonna de faire retentir les trompettes d'airain, fit avancer son armée comme un aigle qui vient fondre sur des bandes de timides perdrix. Les satrapes d'Arménie, qui étaient à l'aile droite et à l'aile gauche, se réunirent, se rallièrent à lui. Les troupes de l'Ibérie, avec leur roi Parsman, malgré

Թէպէտ և յանդուգն յարձակմամբ յառաջեալ բա-
խէին, արագապէս դառնային 'ի միւս կողմն փա-
խուցեալ: Եւ անդ էր տեսանել կոտորած անհնարին
զգնդին Երուանդայ և զզօրաց Միջագետաց: Եւ
'ի խառնակել այսպիսի ճակատուց, պատահէն Ար-
տաշիսի արք քաջք տաւրացիք, որոց զոգիս 'ի բաց
եդեալ, Երուանդայ պայմանեալ՝ սպանանել զԱր-
տաշէս: Որոց դիպեալ հետի ընդ մէջ անցանէր Գի-
սակ որդի ստնտուին Արտաշիսի, և սատակեալ
զնոսա, ուր և զկէս դիմաց նորա 'ի վայր բերեալ
սուսերաւ, զյաղթութիւն ստացեալ՝ մեռանի 'ի վե-
րայ այսպիսեացս: Եւ մնացեալ զօրքն 'ի փախուստ
դառնային:

Իսկ Երուանդ ձիովն իւրով բովանդակ ասպարէզս
անցեալ, ելանէ 'ի խամս կարգեալս 'ի բանակէն իւ-
րմէ 'ի քաղաքն իւր, հեծեալ 'ի նոր ձիս համդոյց 'ի
համդուցէ փախչել: Եւ քաջն Սմբատ զհետ մտեալ,
սատակադոյն վարէր զնա 'ի գիշերի մինչև ցդուռն
քաղաքին: Եւ Արաց զօրացն անցեալ 'ի կողմն Ե-
րուանդական գնդին, նստմաւ 'ի վերայ դիականցն
բանակէին: Իսկ Արտաշիսի հասեալ Երուանդայ,
ընդ շրջապատեալ առագաստն 'ի կաշոյ և 'ի կտաւէ
պարսպին էջ, և 'ի խորանսն նորա բնակեցաւ զայն գի-
շեր: Եւ այգուն եղելոյ՝ տիրաբար արարեալ, զսպա-
նեալսն թաղել հրամայեաց. և անուանեաց զհովիտն,
ուր 'ի վերայ դիականցն բանակեցաւ, Արաց մարգ.
և զտեղի ճակատուն՝ Երուանդավան, որ կոչի մինչև
ցայսօր ժամանակի. այս ինքն եթէ յայսմ տեղւոջ
վանեաց զԵրուանդ: Եւ ինքն չուեաց 'ի քաղաքն
Երուանդայ. յառաջ քան զմիջօրեայ հասեալ 'ի դա-
տակերտն Երուանդայ, և միաբան գոչմամբ հրա-
մայեաց աղաղակել զօրացն՝ Մար ամատ, որ թարգ-
մանի Մարս եկն. յիշեցուցանելով զթշնամանսն, զոր
յղէր Երուանդ առ Թագաւորն Պարսից և առ Սմբ

l'impétuosité de leur premier choc, se mirent à fuir et passèrent promptement à Ardachès. On vit alors le carnage de l'innombrable armée d'Érouant et des troupes de la Mésopotamie. Cependant, dans la mêlée, Ardachès est surpris par les braves habitans de Taurus, qui au péril de leur vie, avaient promis à Érouant de tuer Ardachès. Mais Kissag, fils de la nourrice d'Ardachès, se précipita à pied à travers ces furieux, les tailla en pièces; malheureusement il a la moitié de la figure emportée, et maître de la victoire, il meurt sur ses sanglans trophées; le reste des troupes prit la fuite.

Érouant à cheval, franchissant tout l'espace, se jette dans les khans établis depuis son camp, jusqu'à sa ville, et de poste en poste montant sur un nouveau cheval, se remet à fuir; mais le brave Sempad le poursuivit vivement et le poussa, la nuit, jusqu'à la porte de sa ville. Les troupes des Mèdes, passant alors sur le champ de bataille d'Érouant, le soir étant survenu, campèrent sur des cadavres. Ardachès descendit dans la tente d'Érouant, tente dont les murs étaient de peau et de toile, et s'y arrêta cette nuit. Dès le matin, en maître du terrain, il fit enterrer les morts. Ardachès appela la vallée où il avait campé sur des cadavres, champ des Mèdes, et le lieu du combat, Érouantavan, nom conservé jusqu'à ce jour: c'est-à-dire qu'en cet endroit il défit Érouant; Ardachès partit pour la ville d'Érouant. Arrivé avant la moitié du jour, il ordonna a ses troupes de crier d'une commune voix: *Mar amad*, qu'on traduit ainsi: Le Mède est arrivé; pour rappeler l'insulte qu'Érouant adressait au roi des Perses et à Sempad, en appelant Ardachès Mède. D'après ce cri, la place fut nommée Marmed; car Arda-

թատ, Սար զնա կոչելով։ Յայսմ 'ի սոյն ձայն անուանեցաւ դաստակերտն Սարմէտ, իբր 'ի կամաց Արտաշիսի, բառնալ զանուն Երուանդայ 'ի տեղւոջէն. այս պատճառ է անուանակոչութեան դաստակերտին ։

Բայց Սմբատայ գիշերոյն զհետ Երուանդայ եկեալ սակաւ վաշտկանաւ, զդուռն քաղաքին պահէր մինչև 'ի գալն Արտաշիսի և զօրացն ամենեցուն ։ Եւ 'ի մարտնչել քաջացն ընդ ամրոցին, անձնատուրք եղեն մարդիկ ամրոցին, և բացին զդուռն քաղաքին։ Իսկ մի ոմն 'ի զինուորացն մտեալ եհար վաղերբ զգլուխն Երուանդայ, և ցրուեաց զուղեղն 'ի յատակս տանն. և այսպիսի ջախջախմամբ վախճանեցաւ, կալեալ զթագաւորութիւնն ամս քսան ։ Բայց Արտաշիսի յիշեալ՝ թէ խառնուած արշակունւոյ է Երուանդ, հրամայէ զդի նորա թաղել մահարձանօք ։

## ԽԷ

Թագաւորել Արտաշիսի և առնել բարի իւրոց երախտաւորացն ։

ՅԵՏ մահուանն Երուանդայ մտեալ Սմբատայ զարքունականսն յուզէր զգանձսն. և գտեալ զթագն Սանատրկոյ արքայի, դնէ 'ի գլուխն Արտաշիսի և թագաւորեցուցանէ 'ի վերայ ամենայն երկրիս Հայոց 'ի քսան և իններորդի ամի Դարեհի Պարսից արքայի։ Իսկ Արտաշիսի առեալ զթագաւորութիւնն, տայ պարգևս զօրացն Մարաց և Պարսից, և արձակեաց յաշխարհն իւրեանց։ Տայ և առնն քաջին և պատուականին Արգամայ զխոստացեալ գահն երկրորդական, և պսակ յակնթակապ, և գինդ յերկոսին ականջսն, և կարմիր զգեստ միոյ ոտինն. տարգալ ունել ոսկի և պատառաքաղ, և ոսկեղինօք ըմպել նուագօք ։ Եւ ոչ ինչ ընդհատ յայսց պատուոց տայ

chès voulait ôter à ces lieux le nom d'Érouant. C'est la cause de la dénomination donnée à la place.

Mais Sempad, qui s'était mis la nuit à la poursuite d'Érouant, avec une petite troupe gardait la porte de la ville jusqu'à l'arrivée d'Ardachès et de toute l'armeé. Le combat engagé contre la place, les hommes du fort se rendirent et ouvrirent la porte de la ville. Un des soldats de Sempad, pénétrant aussitôt, fendit, d'un coup de sabre, la tête d'Érouant, dont la cervelle couvrit le plancher; ainsi mourut Érouant après avoir occupé le trône vingt ans. Ardachès, se rappelant qu'Érouant était allié aux Archagouni, fait enterrer son corps avec les honneurs d'un monument.

## XLVII.

### Ardachès règne et fait du bien à ses partisans.

Après la mort d'Érouant, Sempad cherchait partout ses trésors: trouvant la couronne du roi Sanadroug, il la met sur la tête d'Ardachès et le proclame roi de toute l'Arménie, la vingt-neuvième année de Darius, roi des Perses. Ardachès, maître de son royaume, donne des présens aux troupes des Mèdes et des Perses et les renvoie dans leur pays. Il confère au brave et illustre Arcam le second trône qu'il lui avait promis, la couronne de pierres précieuses, les deux pendans d'oreille, la chaussure rouge à un pied seulement, plus, le droit de se servir de cuillère et de fourchette d'or, de boire dans des coupes d'or. Ardachès accorde, sans en rien retrancher, les mêmes honneurs à son père adoptif

դայեկին իւրոյ Սմբատայ, բայց միայն յերկուց զըն-
դաց և 'ի կարմիր կօշկէ. և աւելի քան զՀայրենական
զիւր Թագակապ ասպետութիւնն և զիշխանութիւն
արևմտեայ զօրուն, հաւատայ 'ի նա զամենայն զօրս
Հայոց, և զբոլոր աշխարհիս զգործակալս և զհամա-
րէն տունն արքունի։ Եւ զՆերսէս զորդի որդւոյ իւ-
րոյ առաջնորդութիւն Պլիտակայ` ազգ զնա սերելով, անուն
կոչէ զնահապետականութեանցն հօրն, Պլիմաքեան.
քանզի, որպէս ասացաքն, զկէս զխմացն սուսերաւ
'ի վայր բերին 'ի վերայ Արտաշիսի։

Պատմի սորա 'ի նոյն աւուրս սերեալ ազգ և զօր-
դիսն Տիրայ, պատանիս հինգ հանդերձ տատամբ,
յանուն հօրն իւրեանց տրտունիս. ոչ վասն արութեան
ինչ գործոց, այլ միայն վասն քսութեան հօրն նոցա,
զոր առնէր 'ի տանէն արքայի առ Սմբատ, քանզի
ընտանի էր Երուանդայ, սակս նորին և սպանաւ 'ի
նմանէ։

## ԽԸ

Սպանումն Երուանդայ, և շինել մեհեան Բագարանի, և հաշտիլ Արտա-
շիսի Հռովմայեցւոց։

Զկնի այսորիկ հրամանն տայ Սմբատայ, երթալ
յամուրն Բագարան, որ հուպ 'ի քաղաքն Երուան-
դայ 'ի վերայ Ախուրեան գետոյ, զի սպանցէ զԵ-
րուազ եղբայր Երուանդայ։ Զոր կալեալ Սմբա-
տայ, երկան զուլանէ հրամայէ կապել, և ընկենուլ
'ի պտոյտ մի գետոյն։ Եւ 'ի տեղի նորա 'ի վերայ
բագնացն կացուցանէ զընտանի Արտաշիսի, աշա-

Sempad, à l'exception des deux pendans d'oreille et de la chaussure rouge; outre la chevalerie héréditaire de Sempad, avec droit de poser la couronne sur la tête des rois, outre le commandement des forces occidentales, Ardachès confie à Sempad encore le commandement de toutes les troupes arméniennes, l'inspection de tous les fonctionnaires du pays, l'intendance de la maison du roi. Quant à Nersès, fils de Kissag, fils de la nourrice d'Ardachès, ce prince l'appelle lui et sa race, du nom de Timaksian (Balafré), en mémoire des exploits de son père; Kissag, comme nous l'avons dit, avait eu la moitié de la figure emportée en voulant sauver les jours d'Ardachès.

On raconte aussi que, en ces jours-là, Ardachès constitue en race les fils de Dour, au nombre de quinze jeunes gens, et les appelle Drouni, nom dérivé du nom de leur père; non pas à cause des hauts faits de Dour, mais seulement à cause des rapports que faisait leur père à Sempad sur la maison du roi; car Dour était attaché au palais d'Érouant, et fut exécuté par l'ordre de ce prince pour crime de trahison.

## XLVIII.

Meurtre d'Érouaz. — Construction d'une autre ville Pacaran. — Ardachès paie tribut aux Romains.

Après cela Ardachès donne ordre à Sempad d'aller à la forteresse Pacaran, située près la ville d'Érouant, sur le fleuve Akhourian, pour tuer Érouaz, frère d'Érouant. Sempad, ayant pris Érouaz, lui fait attacher une grosse pierre au cou, puis le fait jeter dans un tournant du fleuve, et met en sa place, pour veiller au culte des dieux, un officier de la maison d'Ardachès, un dis-

*կերտ մոգի որումն երազահանի, որ յայն սակս և Մոգպաշտէ անուն կարդային։ Եւ ապա աւար առեալ զգանձսն Երուանդայ, և ծառայս անձինս հինգ հարեւր, նա և զընտիր ընտիր գանձուցն մեհենից, բերէ Արտաշիսի։ Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուանդայ. բայց զգանձսն հրամայէ տանել Դարեհի Պարսից արքայի, յաւելլով և ինքն ՚ի գանձսն, ՚ի շնորհակալութեան պատիւ իբրու հօր և օգնականի։*

*Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուանդայ, զոր գերեացն ՚ի Բագարանէ, տարեալ բնակեցուցանէ ՚ի Թիկանց Մասեաց, ՚ի նոյն անուն Բագարան կոչելով զձեռակերտն։ Ինքն անցանէ ՚ի Պարս ընծայատար Դարեհի, ոչ ինչ փոյթ առնելով զհռովմայեցւոց իշխանութենէն։ Իսկ ՚ի գնալն Սմբատայ ՚ի Պարս հասանեն հարկահանք կայսեր և սպայ ծանր ՚ի սահմանս Հայոց, զորս մաղթեալ Արտաշիսի և կրկին տուեալ զհարկսն, հաշտեցուցանէ։ Եւ զայս մեզ ստուգապէս պատմէ Ողիւպ քուրմ Հանւոյ, գրող մեհենական պատմութեանց, և զայլ բազում գործս՝ զոր ասել կայ մեզ առաջի, որում և Պարսից մատեանքն վկայեն և Հայոց երգն վիպասանաց։*

## ԽԹ

Վասն շինուածոյ Արտաշատ քաղաքի։

ԱՐՏԱՇԻՍԻ *վերջնոյ գործք՝ բազում ինչ յայտնի են քեզ ՚ի վիպասանացն, որ պատմին ՚ի Գողթան. շինել զքաղաքն, և խնամութիւն ընդ Ալանս և ծնունդք զարմիցն, և իբր տրփանք Սաթինկան ընդ վիշապազունսն՝ առասպելաբար, այս ինքն ընդ զարմս Աժդահակայ, որ ունին զամենայն զառ ստո[illegible]*

ciple d'un mage interprète des songes, appelé pour cette raison Mocbachdè (ministre d'un mage). Sempad enlève ensuite les trésors d'Erouaz, ses esclaves au nombre de cinq cents, ainsi que les objets les plus précieux des trésors des temples, et porte tout à Ardachès. Ardachès donne à Sempad les esclaves d'Érouaz ; quant aux trésors, auxquels il ajoute encore, il les fait porter à Darius, roi des Perses, à titre de reconnaissance, comme à un père, à un généreux auxiliaire.

Sempad emmène alors les esclaves d'Érouaz, qu'il a pris à Pacaran, les transplante au revers du Massis, et appelle son établissement du même nom, Pacaran. Il va lui-même en Perse pour offrir les présens à Darius, sans s'inquiéter de la puissance des Romains. Cependant au départ de Sempad pour la Perse, les collecteurs de l'empereur, avec de grosses troupes arrivent en Arménie. Ardachès, à force de prières et en payant un double tribut, parvient à les appaiser. Ces faits nous sont attestés par Oughioub, prêtre d'Ani, qui écrit l'histoire des temples, ainsi que beaucoup d'autres faits qu'il nous reste à rapporter, et sont en outre confirmés par le témoignage des livres des Perses, par les chants historiques des Arméniens.

## XLIX.

### Construction de la ville d'Ardachad.

Les faits et gestes d'Ardachès dernier du nom te sont, la plupart, révélés par les chants historiques qui se débitent à Coghten : la construction de la ville d'Ardachès, son alliance avec les Alans,[1] sa race, sa postérité, l'amour de Satinig pour les descendans des dragons, comme dit la fable, c'est-à-dire pour les des-

Մասեաց. մարտ ընդ նոսա և քայքայումն յիշխանութենէն, և սպանումն նոցա և հրկիզութիւն շինուածոցն, և նախանձ որդւոցն Արտաշիսի և գրգռութիւն ընդ միմեանս 'ի ձեռն կանանցն: Այս ամենայն, որպէս ասացաք, յայտնի են քեզ յերգս վիպասանացն. բայց յիշատակեսցուք և մեք կարճառօտիւք, և զայլաբանութիւնն ճշմարտեսցուք,

Երթեալ Արտաշիսի 'ի տեղին, ուր խառնին Երասխ և Մեծամօր, և հաճեալ ընդ բլուրն, շինէ քաղաք յիւր անուն անուանեալ Արտաշատ: Ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք մայրից. վասն որոյ անաշխատ և երագ շինեալ, կանգնէ 'ի նմա մեհեան, և փոխէ 'ի Բագարանէ զպատկերն Արտեմիդայ և զամենայն կուռս հայրենիս. բայց զԱպողոնի պատկերն արտաքոյ քաղաքին կանգնէ հուպ 'ի ճանապարհն: Նաև յարուցանէ 'ի քաղաքէն Երուանդայ զգերութիւն Հրէիցն, որ փոխեալ էին անդ յԱրմաւրայ, և նստուցանէ զնոսա յԱրտաշատ: Այլ և զամենայն վայելչութիւն քաղաքին Երուանդայ, զոր տարեալ էր յԱրմաւրայ և զոր անդէն արարեալ նորա, փոխէ յԱրտաշատ. և առաւել ևս յինքենէ յօրինէ իբր զքաղաք արքայանիստ:

Ծ

Յարձակումն Ալանաց 'ի մեզ և պարտութիւն, և խնամութիւն Արտաշիսի ընդ նոսա:

Ա

ՅԱՅՍՄ ժամանակաւ միաբանեալ Ալանք լեռնականօքն ամենայնիւ, յինքեանս արկանելով և զկէս Վրաց աշխարհին, մեծաւ ամբոխիւ տարածեալ ընդ

cendans d'Astyage, qui occupent toute la partie située au pied du Massis; la guerre d'Ardachès contre eux, la destruction de leur puissance, leur meurtre, l'incendie dévorant leurs habitations; la jalousie entre les enfans d'Ardachès, jalousie, collision produite par leurs femmes. Tous ces faits, comme nous l'avons dit, te sont rapportés dans les chants historiques; mais nous les rappellerons, nous, en peu de mots, nous rendrons l'allégorie vérité.

Ardachès étant allé à l'endroit où se mêlent l'Éraskh et le Médzamor, voit une colline qui lui plaît, y bâtit une ville de son nom appelée Ardachad. L'Éraskh favorise Ardachès en lui fournissant le bois des pins; aussi, la ville s'élève sans peine et sans délai; Ardachès y construit un temple dans lequel il transporte de Pacaran la statue d'Artémis et tous les idoles de ses pères; quant'à la statue d'Apollon, il l'érige hors la ville, sur la voie publique. Ardachès tire de la ville d'Érouant les Juifs captifs qui y avaient été transplantés d'Armavir, et les établit à Ardachad. Tous les embellissemens de la ville d'Érouant, que ce prince avait apportés d'Armavir, et ceux qu'il avait faits lui-même, Ardachès les transporte à Ardachad; Ardachès ajoutant encore à la magnificence d'Ardachad, en fait une ville de résidence royale.

## L.

**Invasion des Alans chez nous. — Leur défaite. — Alliance d'Ardachès avec eux.**

En ce temps-là, les Alans, ligués avec tous les montagnards, avec une partie de l'Ibérie, viennent en forces considérables se répandre sur notre pays. Ar-



աշխարհս մեր ։ Ժողովէ և Արտաշէս զհիւրոյ զօրացն բազմութիւն, և լինի պատերազմ ՚ի մէջ երկրիս երկոցունց ազգացն քաջաց և աղեղնաւորաց ։ Սակաւ ինչ տեղի տայ ազգ Ալանաց, և գնացեալ անցանէ ընդ գետն մեծ Կուր, և բանակի առ եզերբ գետոյն ՚ի հիւսիսոյ. և հասեալ Արտաշիսի բանակի ՚ի հարաւոյ, և գետն ընդ մէջ նոցա ։

Բայց քանզի զորդի Ալանաց արքային ձերբակալ արարեալ զօրացն Հայոց ածեն առ Արտաշէս, զխաղաղութիւն խնդրէր արքայն Ալանաց, տալ Արտաշիսի զինչ և խնդրեսցէ. և երդմունս և դաշինս առնէր հաստատել մշտնջենաւորս, որպէս զի մի ևս մանկունք Ալանաց ասպատակաւ հինից ելցեն յաշխարհն Հայոց ։ Եւ ՚ի չառնուլ յանձն Արտաշիսի առ ՚ի տալ զպատանին, գայ քոյր պատանւոյն յափն գետոյն ՚ի դարաւանդ մի մեծ, և ՚ի ձեռն թարգմանաց ձայնէ ՚ի բանակն Արտաշիսի. Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս, որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց. եկ հաւանեաց աչագեղոյ դստերս Ալանաց՝ տալ զպատանիդ. զի վասն միոյ քինու ոչ է օրէն դիւցազանց զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն, կամ ծառայեցուցանելով և ՚ի ստրկաց կարգի պահել, և թշնամութիւն յաւիտենական ՚ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել ։ Եւ լուեալ Արտաշիսի զայսպիսի իմաստուն բանս, գնացեալ յեզր գետոյն. և տեսեալ զկոյսն գեղեցիկ, և լուեալ ՚ի նմանէ բանս իմաստութեան, ցանկացաւ կուսին ։ Եւ կոչեցեալ զդայեակն իւր Սմբատ, յայտնէ նմա զկամս սրտի իւրոյ, առնուլ զօրիորդն ՚ի կնութիւն իւր, և դաշինս և ուխտս հաստատել ընդ ազգի քաջացն, և զպատանին արձակել ՚ի խաղաղութիւն ։ Եւ հաճոյ թուեցեալ Սմբատայ, առ արքայն Ալանաց յղէ՝ տալ զտիկին օրիորդն Ալանաց զՍաթինիկ ՚ի կնութիւն Արտաշիսի ։ Եւ ասէ արքայն Ալանաց. Եւ ուստի

dachès rassemble aussitôt la multitude de ses troupes, le combat s'engage sur les frontières des deux nations, nations braves et exercées au tir de l'arc. Celle des Alans cède un peu de terrain, traverse le grand fleuve Gour, et s'en va camper au bord de ce fleuve, au nord. Ardachès arrive, campe au sud, et le fleuve est entre les deux parties.

Mais comme le fils du roi des Alans, fait prisonnier par les troupes arméniennes, était conduit à Ardachès, le roi des Alans demanda la paix à Ardachès, promettant de lui donner tout ce qu'il demandera. Il proposait d'établir des traités perpétuels, sous la foi du serment, pour que les enfans des Alans ne fissent plus irruption sur les terres des Arméniens. Comme Ardachès se refuse à rendre le jeune prince, la sœur du prisonnier se présente au bord du fleuve, sur un grand tertre, et crie par la bouche des interprètes, au camp d'Ardachès: « Je te dis, brave Ardachès, vainqueur de la brave nation des Alans, consens à donner à la belle fille des Alans, ton jeune prisonnier; car ce n'est pas le fait des héros, pour une vengeance, d'ôter la vie aux fils des autres héros, ni de les réduire en servitude, de les garder au rang des vils esclaves, ni d'établir une inimitié éternelle entre deux braves nations ». Ardachès ayant entendu ces sages paroles, se rendit au bord du fleuve; il vit la jeune et belle princesse, écouta ses sages propositions, brûla d'amour pour elle; appelant son père adoptif Sempad, Ardachès lui découvre le désir de son cœur, son intention de prendre la jeune princesse en mariage, d'établir un traité d'alliance et d'amitié avec la nation des braves Alans, et de mettre en liberté le jeune prince. Sempad, jugeant ces projets convenables, envoie demander au roi des Alans la jeune princesse des

տացէ քաջն Արտաշէս հազարս 'ի հազարաց և բիւրս 'ի բիւրուց ընդ քաջազգոյ կոյս օրիորդիս Ալանաց։

Զայս տեղի առասպելաբանելով վիպասանքն յեր-գելն իւրեանց ասեն. Հեծաւ արի արքայն Արտա-շէս 'ի սեաւն գեղեցիկ, և հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն, և անցեալ որպէս զարծուի սրաթև ընդ գետն, և ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝ ընկէց 'ի մէջք օրիորդին Ալանաց, և շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին, արագ հասուցանելով 'ի բանակն իւր։ Այլ և ճշմարտութեամբ ունի այսպէս։ Քանզի պատուեալ է առ Ալանս մորթ կարմիր, լայքս շատ և ոսկի բազում տուեալ 'ի վարձանս, առնու զտիկին օրիորդն Սաթինիկ։ Այս է ոսկէօղ շիկա-փոկ պարանն։ Նոյնպէս զհարսանեացն առասպե-լեալ երգեն, այսպէս ասելով. Տեղ ոսկի տեղայր 'ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ 'ի հարսնութեան Սաթինկանն։ Քանզի սովորութիւն իսկ էր թագաւորացն մերոց, փեսայութեամբ 'ի դուռն տաճարին հասանել՝ դահեկանս ճապաղել իբրև զհիւպատեանն հռովմայեցւոց. սոյնպէս և թա-գուհեացն յառագաստին՝ մարգարիտ։ Այս է ճըշ-մարտութիւն բանիցս։

Սա առաջին եղեալ 'ի կանանցն Արտաշիսի՝ ծնա-նի նմա զԱրտաւազդ և այլս բազումս, զորս ոչ կա-րևոր համարեցաք այժմ անուամբ թուել. բայց զեր-նիսն յորժամ 'ի գործ ինչ հասանիցեմք։

Alans, Satinig, en mariage pour Ardachès. « Eh bien! dit le roi des Alans, « le brave Ardachès me donnera-t-il mille fois mille et dix-mille fois dix-mille pour la noble princesse des Alans? »

Les chroniqueurs, transformant en fable ce passage, disent dans leurs chants: « Le valeureux roi Ardachès, monté sur un beau cheval noir, tirant une longe de peau rouge garnie d'anneaux d'or, comme un aigle qui fend l'air, passant le fleuve, lança cette longe de peau rouge, garnie d'anneaux d'or, sur la jeune princesse des Alans, la serra douloureusement par le milieu du corps, et l'entraîna vîte dans son camp ». Voici maintenant la vérité du fait: comme la peau rouge est très estimée chez les Alans, Ardachès donne beaucoup de peaux de cette couleur et beaucoup d'or en dot, et obtient la jeune princesse Satinig; c'est là la longe de peau rouge, garnie d'anneaux d'or. De même, au sujet des noces, ils chantent des fables en disant: « Une pluie d'or tombait en abondance au mariage d'Ardachès; une pluie de perles tombait en abondance au mariage de Satinig ». Car c'était la coutume de nos rois, lors de leur mariage, d'aller à la porte de leur palais, jeter des pièces d'argent, à la manière des consuls romains; c'était aussi la coutume des reines, de jeter des perles dans leur chambre nuptiale. Telle est la vérité des faits.

Satinig, la première des femmes d'Ardachès, lui donne Ardavazt et plusieurs autres enfans, que nous n'avons pas cru nécessaire de compter ici par leurs noms, jusqu'à ce que nous ayons à signaler quelques uns de leurs faits et gestes.

## ԾԱ

Սպանումն Արգամայ և որդւոց նորա:

Ի ՉԱՓ հասեալ Արտաւազդայ որդւոյ Արտաշիսի, եղև այր քաջ, անձնահաճ և հպարտ. և նախանձ բերելով ընդ ծերունոյն Արգամայ, հրապուրեաց զհայր իւր ցասնուլ Արգամայ, որպէս թէ թագաւորել 'ի վերայ ամենայնի խորհիցի: Այսպէս ընկեցեալ զնա 'ի պատուոյն, ինքն առնու զերկրորդութիւնն: Յետ այսր երթալով Արտաշիսի 'ի ճաշ Արգամայ, կասկած իմն անկեալ, իբր թէ դաւել զարքայն խորհեցան, յարուցանէին որդիքն արքային ապշտապ, և անդէն իսկ 'ի հացին քարշեն զալիսն Արգամայ: Եւ խռովութեամբ մեծաւ եկեալ յԱրտաշատ Արտաշէս արքայ, դարձեալ արձակեաց զորդի իւր զՄաժան մեծաւ գնդաւ, և զբազումս յազգէն Մուրացան սպանանել հրամայեաց, և զապարանսն Արգամայ այրել. և զհարճ նորին, որ կարի չքնաղ էր գեղով և մնացեալ գնացիւք ոտից, զոր կոչէին Մանդու, ածել 'ի հարճութիւն Արտաշիսի: Զոր դարձեալ նուաճեալ յետ երկուց ամաց, 'ի բաց տալ հրամայէ զինչսն բայց 'ի հարճէն:

Իսկ Արտաւազդայ ոչ շատացեալ առնուլ 'ի բաց 'ի նոցանէ զերկրորդութեան պատիւն, յաւելու ևս հանել և զՆախճաւան, և ըստ հիւսիսոյ Երասխայ զամենայն գեւղս, յորում և ապարանս և բերդս 'ի նոցանէ շինէ իւր 'ի ժառանգութիւն: Այսմ ոչ կարացեալ համբերել որդւոյն Արգամայ, ընդդիմանայ նմա պատերազմաւ. բայց յաղթեալ արքայորդւոյն՝ սատակէ զամենայն ծնունդս Արգամայ հանդերձ հարբն, և որք միանգամ երևելիք էին յազգէ Մուրացան. և գրաւէ յինքն զշէնս և զամենայն ինչ

## LI.

### Meurtre d'Arcam et de ses enfans.

Ardavazt, fils d'Ardachès, devenu grand, se montra intrépide, présomptueux, superbe; portant envie au vieux Arcam, il engagea son père à sévir contre Arcam, sous prétexte qu'Arcam pensait à régner sur tous; c'est ainsi que, dépouillant Arcam de ses honneurs, Ardavazt prend la seconde dignité du royaume. Quelque temps après, Ardachès va dîner chez Arcam; les enfans du roi, comme s'ils pensaient que des piéges lui sont tendus, suscitent du tumulte, et au milieu du festin, arrachent la barbe blanche d'Arcam. Plein de trouble et d'épouvante, Ardachès retourné à Ardachad, dépêcha aussitôt son fils Majan à la tête de nombreux soldats, et lui ordonna de faire périr quantité des Mouratzan, de brûler le palais d'Arcam, de prendre sa concubine, femme si remarquable par sa beauté, sa démarche majestueuse, appelée Mantou, et de la conduire à la couche d'Ardachès. Après une nouvelle défaite, deux ans après, Ardachès rend à Arcam tous ses biens à l'exception de sa concubine.

Ardavazt, non content de ravir à la race d'Arcam la seconde dignité du royaume, s'empare aussi de Nakhdjavan et de tous les villages au nord de l'Éraskh, y bâtit pour son apanage des palais, des forteresses; ce que ne pouvant souffrir, le fils d'Arcam résiste à Ardavazt les armes à la main; mais le fils du roi, maître de la victoire, extermine tous les enfans d'Arcam avec leur père, ainsi que les principaux des Mouratzan; il s'approprie leurs villages et toute leur autorité. Il n'y eut de sauvés que quelques individus inconnus, quelque

խանութիւնս նոցա ։ Եւ ոչ ոք ապրեաց 'ի նոցանէն , բայց միայն աննշանաւորք ոմանք և կրտսերք փախուցեալ առ Արտաշէս ապրեցան 'ի դրան արքունի ։ Այս Արգամ է որ յառասպելին Արգաւանն անուանի , և այս պատճառ պատերազմին ընդ Արտաւազդայ ։

ԾԲ

Եթէ որպէս Սմբատ , և զինչ յԱլանս գործեաց · և բնակել Արտաւազդու ։

ՍԻՐԵԼԻ է ինձ ասել և վասն առնն քաջին Սմբատայ · քանզի արդարև ըստ առասպելին ոչ ինչ կարի հեռի 'ի ճշմարտութենէն · որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեանն , և առաքինութեան ոգւոցըն որոշ , և գեղեցկութեան աչեօք վայելչացեալ · սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրականտիկոն 'ի վերայ ոսկւոյ և 'ի մէջ մարգարտոյ ծագէր · և 'ի վերայ շոյտ անձին և մարմնոյ՝ զգոյշ յամենայնի , և տուչութիւն յաջողուածոց ունէր 'ի մարտս առաւել քան զամենայն ոք ։ Ոչ է յետ այնչափ արութեանց՝ օգնական Սաթինկայ եղբօրն յաշխարհն Ալանաց համդերձ զօրու երթայ հրամանաւ Արտաշիսի ։ Քանզի մեռաւ հայր Սաթինկան , և այլ ոմն բռնացեալ թագաւորեաց աշխարհին Ալանաց , և հալածէր զեղբայրն Սաթինկան · զոր վանեալ հերքէ Սմբատ , և տիրացուցանէ 'ի վերայ ազգին զեղբայրն Սաթինկան , և զերկիր հակառակորդացն աւերէ · զամենայն միահամուռ ածէ գերի սաստիկ յԱրտաշատ ։ Եւ հրամայեալ Արտաշիսի բնակեցուցանել զնոսա 'ի հարաւոյ յարևելից կուսէ Մասեաց , որ կոչէր Շաւարշական գաւառ , 'ի վերայ պահելով զընիկ անունն Արտազ · քանզի և աշխարհն՝

puinés de famille, qui s'enfuirent près d'Ardachès et vécurent à sa cour. Cet Arcam est celui que dans la fable on nomme Arcavan, et voilà la cause de sa guerre avec Ardavazt.

## LII.

**Sempad. — Sa conduite dans le pays des Alans. — La ville d'Ardaz est habitée.**

Il m'est doux de parler du brave Sempad ; car vraiment la fable n'est pas très éloignée de la vérité: sa taille répondait à sa valeur, sa vertu lui gagnait les cœurs, sa beauté se trouvait rehaussée par l'éclat de ses cheveux blonds ; il avait une légère tache de sang dans les yeux, comme le dragon qui se fait souvent remarquer sur l'or ou au milieu d'une perle ; très agile de son corps et de sa personne, fin et prudent en toutes choses, il obtenait plus de succès que tout autre guerrier dans les combats. Après tant de hauts faits, il marche avec une armée, par l'ordre d'Ardachès, au secours du frère de Satinig, dans le pays des Alans ; car le père de Satinig était mort : un usurpateur avait chassé du trône des Alans le frère de Satinig. Sempad chasse à son tour le tyran, remet sur le trône le frère de Satinig, ruine les terres de ses ennemis qu'il traine tous violemment en captivité à Ardachad. Ardachès fit transférer les prisonniers à la partie sud-est du Massis, appelée le canton Chavarchagan, tout en conservant

ուստի զերեցանն՝ Արտազ կոչի մինչև ցայսօր ժա-մանակի :

## ԾԳ

Աւերումն Կասբից, և գրգռութիւն ընդ Սմբատայ զարմիցն Արտաշիսի և ընդ միմեանս :

Յետ մեռանելոյ վերջնոյ Արշակայ թագաւորի Պարսից, թագաւորեցուցանէ մերս Արտաշէս զհո-մանուն իւր զԱրտաշէս որդի նորին 'ի վերայ Պար-սից աշխարհին : Եւ ոչ կամեցան հնազանդել նմա բնակիչք լերինն, որ անուանեալ կոչի յիւրեանց լե-զուն Պատիժահար գաւառ, որ է Պեղմանց լեառն, և ծովեզերայք, և այսր ևս քան զնոսա. նա և Կաս-բից երկիրն յայն սակս ապստամբեն 'ի մերոյ արքայ-էն : Վասն որոյ առաքէ 'ի վերայ նոցա Արտաշէս զՍմբատ ամենայն զօրօքն Հայոց, ինքն արքայ յու-ղարկաւոր երթալով աւուրս ութն : Իսկ Սմբատայ երթեալ հնազանդէ զամենեսեան. բայց զերկիրն Կասբից աւերեալ, առեալ քան զարտաքեան գերին ածէ 'ի Հայս. ընդ որս և զՕարդմանոս անուն թագաւոր նոցին : Վասն որոյ արժանի ըստ վաս-տակոցն պարգևէ նմա Արտաշէս զմասն արքունի, որ 'ի շէնս Գողթան, և զՍուղտու ակունս, և առ-այսոքիւ՝ և զաւարն ամենայն նմա թողու : Ընդ որ նախանձեալ Արտաւազդ, կամեցաւ սպանանել զՍմբատ. և յայտնեալ խորհրդոյն, բազում խռովու-թիւն վասն այնր լինէր հօրն : Իսկ Սմբատայ տեղի տուեալ գնաց զկողմամբք ասորեստանի. իւրով կա-մաւ թողու զիշխանութիւն զօրացն Հայոց, ընդ որ խանդայր Արտաւազդ : Հրամանաւ Արտաշիսի բնա-կէ 'ի Տմորիս, որ այժմ կոչի Կորդրիք, 'ի յԱլկի նստուցեալ զբազմութիւն գերւոյն. քանզի էր 'ի

le nom primitif d'Ardaz; car le pays d'où provenaient ces captifs, s'appelle Ardaz jusqu'aujourd'hui.

## LIII.

**Ruine des Caspiens. — Conflit des enfans d'Ardachès avec Sempad, puis les uns contre les autres.**

Après la mort d'Archag dernier du nom, roi des Perses, notre Ardachès met sur le trône de Perse son homonyme, Ardachès, fils d'Archag; mais au nouveau roi ne voulurent obéir ni les habitans de la montagne appelée dans leur langue, canton Badijahar, c'est-à-dire la montagne Keghmantz, ni les habitans du littoral, ni ceux des pays plus éloignés; même à cette occasion, le pays des Caspiens se révolte contre notre roi. C'est pourquoi Ardachès envoie contre eux, avec toutes les troupes arméniennes, Sempad, qu'il accompagne lui-même pendant sept jours. Sempad soumet tous les révoltés, ruine le pays des Caspiens, conduit en Arménie plus de captifs qu'il n'en avait autrefois conduit à Ardaz. Parmi ces captifs se trouve leur roi nommé Zartmanos. En récompense de tant d'actions d'éclat, de si grands services, Ardachès donne à Sempad un apanage de la couronne, situé dans les villages de Coghten, ainsi que les sources de l'Oughd, plus, lui laisse tout le butin. Ardavazt jaloux, voulut faire périr Sempad; le projet découvert, une vive indignation s'empara d'Ardachès, père d'Ardavazt. Mais Sempad s'en alla en Assyrie; il quitte de sa propre volonté le commandement des troupes arméniennes que lui enviait Ardavazt, s'établit par l'ordre d'Ardachès à Demorik, appelé aujourd'hui Gortik, et installe à Algui la multitude des captifs; Sempad, déjà vieux, s'était marié en As-

ծերութեան կին արարեալ յասորեստանեաց հուպ յայն կողմանս ; զոր յոյժ սիրեաց , վասն այնորիկ և զնորին կողմամբք բնակեցաւ :

Իսկ Արտաւազդ յետ գնալոյն Սմբատայ առնու 'ի հօրէն , որում ցանկայրն , զիշխանութիւն զօրացն ամենայնի : Այլ նախանձ բերելով ընդ նմա եղբարցն՝ 'ի գրգռութենէ կանանց իւրեանց , վասն որոյ կարգէ Արտաշէս զՍմբատ՝ հազարապետ , զայր իմաստուն և բանաստեղծ , և հաւատայ 'ի նա զամենայն գործս տանն արքունի . և զՄաժան կարգէ քրմապետ 'ի յԱնի դիցն Արամազդայ : Բաժանէ Արտաշէս և զիշխանութիւն զօրուն ընդ չորս . զարևելեանն թողու 'ի վերայ Արտաւազդայ , և զարևմտեանն տայ Տիրանայ , զհարաւայինն 'ի Սմբատ հաւատայ և զհիւսիսայինն 'ի Զարեհ : Այլ Զարեհ էր այր սէգ և յորս երկոց նահատակ , իսկ առ պատերազմունս վատ և տաղտուկ . զորոյ զփորձ առեալ Բարձամայ որումն արքայի Սրաց , ապստամբեցուցանէ զերկիրն . և կալեալ զԶարեհ , 'ի բանտի դնէ 'ի Կաւկաս : Ընդ որում պատերազմեալ Արտաւազդայ և Տիրանայ հանդերձ Սմբատաւ , դարձուցանեն զեղբայրն 'ի մեծ կապանաց և 'ի բանտէ :

## ԾԴ

Պատերազմ ընդ զօրս Դոմետիանոսի 'ի Բասեան :

ԱՂՄՈՒԿ շփոթից իմն լեալ յարևմուտս , ընդ որ վստահացեալ Արտաշէս՝ նշկահեալ ընդդիմանայ հռովմայեցւոցն , ոչ տալով հարկս : Իսկ Դոմետիանոսի կայսեր ցասուցեալ , զօրս 'ի վերայ Արտաշէսի առաքէ . որոց հասեալ 'ի կողմանս Կեսարու , զՏիրան և զզօրսն արևմտեան առաջի եդեալ՝ ածեն տագ-

syrie dans ces contrées, il aimait beaucoup sa femme : c'est pourquoi il se fixa dans son pays.

Cependant Ardavazt, après le départ de Sempad, obtient de son père, comme il le désirait, le commandement de toutes les troupes ; mais bientôt éclate contre Ardavazt la jalousie de ses frères, excités par leurs femmes ; c'est pourquoi Ardachès choisit pour général Vrouïr, homme sage, savant et poète, lui confie la direction de toutes les affaires de sa cour ; il institue Majan grand-prêtre, à Ani, du dieu Aramazt. Ardachès partage ses troupes en quatre divisions : laisse la division de l'armée d'orient sous le commandement d'Ardavazt ; donne celle d'occident à Diran ; confie la division du sud à Sempad, et celle du nord à Zareh. Zareh était un homme hautain, très propre à la chasse des bêtes fauves ; mais lâche et inhabile dans les combats. Cartzam, roi des Ibériens, connaissant par expérience l'incapacité de Zareh, soulève tout le pays ; puis il charge Zareh lui-même de chaînes et le jette en prison sur le Caucase. Ardavazt et Diran avec Sempad fondent sur le fier Cartzam, et délivrent leur frère (Zareh) de ses lourdes chaînes et de sa prison.

## LIV.

### Guerre contre l'armée de Domitien dans la Pasène.

Des troubles surviennent en occident ; Ardachès se fiant à ces conjonctures, résiste aux Romains, en leur refusant le tribut accoutumé. Mais l'empereur Domitien, indigné, envoie des troupes contre Ardachès. Arrivée dans les contrées de Césarée, l'armée romaine pousse vivement Diran et ses troupes occidentales jus-

նապատ մինչև ցքաջ ընդարձակ հովիտն Բասենայ. յորում ընդդէմ դիպեալ Արտաւազդ արևելեայ և հիւսիսային զօրօքն, հանդերձ ամենայն որդւովքն արքայի, և պատերազմեալ սաստկապէս, վտանգին։ Յորոյ 'ի վերջս պատերազմին հասեալ Սմբատ հարաւային զօրօքն, ընդ մէջ անցեալ ապրեցուցանէ զորդիսն արքայի, յաղթութիւն և զրաւ պատերազմին արարեալ։ Զի թէպէտ և ծերագոյն էր, երիտասարդապէս յարդարեաց և մղեաց զճակատն, և հետամուտ եղեալ հալածեաց զզօրսն հռովմայեցւոց մինչև 'ի սահմանս Կեսարու։

Զայս կամելով երգել յառասպելսն, Դոմետ զոմն ասեն եկեալ, որ է ինքն կայսրն Դոմետիանոս. ոչ եկեալ այսր, այլ զհրամանն նորա և զզօրս այլաբանելով յանուն նորա կոչեն։

Բայց ըստ բախտին եղեալ Արտաշիսի, մեռանի 'ի նոյն ժամանակի Դոմետիանոս 'ի Հռոմ, և զկնի նորա Ներուաս ոչ աւելի թագաւորեալ քան զմի ամ։ Ընդ որս առաւել հպարտացեալ զօրացն Հայոց և Պարսից, ապստամբ ևս 'ի Յոյնս արարին։ Ընդ սոսա հայելով եգիպտացւոց և կողմանցն պաղեստինացւոց, արգելուն և նոքա զհարկին հռովմայեցւոց։

## ԾԵ

Յաղագս Տրայիանոսի և նորին գործոց, և մահուանն Մաժանայ յեղբարցն։

ԶԱՅՍՈՒ ժամանակօք լինի թագաւորեալ հռովմայեցւոց Տրայիանոս, և խաղաղացուցեալ զամենայն արևմուտս, դիմէ 'ի վերայ եգիպտացւոց և պաղեստինացւոց. և նուաճեալ զնոսա ընդ իւրով ձեռամբ, խաղայ յարևելս 'ի վերայ Պարսից։ Ատ

qu'à l'immense vallée de Pasène. Ardavazt, accouru avec ses troupes d'orient et du nord, avec tous les fils du roi, combat vigoureusement; le péril est grand. Vers la fin du combat, Sempad arrive avec les troupes du midi, et, se faisant jour à travers les ennemis, sauve les fils du roi, remporte une victoire complète, et met fin au combat. Quoique vieux, Sempad, avec toute la vigueur d'un jeune homme, disposa, conduisit la guerre; enfin, par une poursuite progressive, il chassa les troupes des Romains jusque sur les terres de Césarée.

Des chroniqueurs, voulant célébrer ce fait dans des chants fabuleux, disent que Domed, c'est-à-dire Domitien, s'était rendu à cette expédition. Domitien n'y était pas, mais ses ordres, ses troupes, sont pris ici pour sa personne et son nom.

La fortune semble favoriser Ardachès; car, sur ces entrefaites, Domitien meurt à Rome, et Nerva, qui lui succède, ne règne pas plus d'un an. Réveillées, ranimées par ces circonstances, les troupes des Arméniens et des Perses firent de nouvelles incursions en Grèce; en voyant cet exemple, les Égyptiens, les peuples des contrées de la Palestine, refusent le tribut aux Romains.

## LV.

Trajan. — Ses faits et gestes. — Mort de Majan tué par ses frères.

Vers ce temps-là, Trajan devenu empereur des Romains, ayant pacifié tout l'occident, vient fondre sur les Égyptiens et les habitans de la Palestine, soumet ces peuples, marche en orient contre les Perses. Cependant Ardachès se hâte d'accourir au devant de

անձապարեալ Արտաշէս մեծապէս ընծայիւք իջանէ ընդ առաջ նորա, զմեղանս 'ի յանձն առեալ, հանդերձ հարկօք անցելոց ամացն լինի առաջի նորա. և թողութիւն 'ի նմանէ գտեալ, դառնայ յաշխարհս Հայոց: Եւ Տրայիանոս անցեալ 'ի Պարսս, և զամենայն զկամս իւր կատարեալ, դառնայ ընդ Ասորիս:

Ընդ առաջ նորա իջանէ Սաժան. մատնութիւն զեղջարցն առնէր. Գիտեա, ասէ, արքայ, եթէ զԱրտաւազդ և զՏիրան փոխարանդիս ոչ արասցես, և զզօրսն Հայոց Զարեհի ոչ հաւատասցես, հարկքն անաշխատ 'ի քեզ ոչ եկեսցեն: Զայս արար Սաժան քէն պահելով վասն Սմբատայ, զի և զնա նորա էր մնուցեալ. ընդ նմին և զՏիրան խորհեցաւ հանել, զի ինքն լիցի քրմապետ միանգամայն և սպարապետ արևմտից: Զորմէ ոչ ինչ փոյթ արարեալ Տրայիանու, արձակէ ունայն: Իսկ Արտաւազդայ և Տիրանայ իմացեալ զխորհուրդն նորա, դարան գործեալ յորս սպանին զՍաժան, զոր տարեալ թաղեցին 'ի բագնացն աւանի իբր զքրմապետ: Իսկ Արտաշէս յայնմ հետէ անսայթաք հարկեաց Տրայիանու, և յետ նորա Ադրիանոսի կայսեր զամենայն աւուրս իւր:

## ԾԶ

Թէ որպէս բազմամարդացոյց Արտաշէս զաշխարհս, և սահմանս հաստատեաց:

ՅԵՏ ամենայն առաքինութեանց և գործոց ուղղութեանց Արտաշիսի, հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել. քանզի բազմամարդացոյց զաշխարհս Հայոց՝ եկամուտ բազում ածելով յազգս, և բնակեցուցանելով 'ի լերինս և 'ի հովիտս և 'ի

Trajan avec de riches présens, et, assumant sur lui toute la responsabilité de la faute commise, il se présente à l'empereur romain avec tous les tributs des années précédentes: Ardachès obtient son pardon de Trajan, et retourne en Arménie; puis l'empereur romain passe en Perse, fait tout ce qu'il veut, et retourne par la Syrie.

Majan va au devant de Trajan pour trahir et perdre ses frères; « Apprends, dit-il, ô roi, que, si tu ne chasses pas Ardavazt et Diran, si tu ne confies pas le commandement des troupes arméniennes à Zareh, les tributs ne rentreront pas sans peine dans ton trésor ». Majan n'agissait ainsi que par haine pour Sempad, qui l'avait élevé. Il méditait aussi la perte de Diran, pour devenir, lui, tout à la fois grand-prêtre et général des troupes de l'occident. Mais Trajan, sans s'inquiéter de ce rapport, renvoie Majan tout confus. Ardavazt et Diran, ayant pénétré les projets du traître, lui dressèrent des embûches dans une partie de chasse, le tuèrent, et allèrent l'enterrer au bourg des idoles, comme grand-prêtre. Depuis cette époque, Ardachès ne cessa de payer, jusqu'à sa mort, exactement le tribut à Trajan, et après lui à l'empereur Adrien.

## LVI.

### Manière dont Ardachès augmenta la population de notre pays, et en fixa les limites.

Après tant de hauts faits, tant de sages institutions, Ardachès fait régler, fixer les limites des bourgs et des villages. Il augmente la population de notre pays en y ammenant beaucoup d'étrangers qu'il établit dans les montagnes, dans les vallées, dans les plaines. Il établit

դաշտս։ Այլ նշանս սահմանաց հաստատեաց այսպէս. հրաման տալով քարինս կոփել չորեքկուսիս, և պնակաձև փոսել զմէջսն, ծածկելով յերկրի. և չորեքկուսիս 'ի վերայ յարուցանել ամբարտակս, սակաւ ինչ բարձրագոյն յերկրէ։ Ընդ որ նախանձեալ Արտաշիր, որդւոյ Սասանայ, զնոյն նման հրամայէ առնել և 'ի Պարսից աշխարհին և յիւր անուն անուանել, զի մի ևս յիշեսցի անուն Արտաշիսի։

Բայց ասի, 'ի ժամանակս Արտաշիսի ոչ գտանել երկիր անգործ յաշխարհիս Հայոց, ոչ լեռնային և ոչ դաշտային, յաղագս շինութեան երկրիս։

## ԾԷ

### Յաղագս նախարարութեանն Ամատունեաց։

ՅԱՒՈՒՐՍ սորա ասեն եկեալ զազգ Ամատունեաց 'ի կողմանցն արևելից Արեաց աշխարհին։ Բայց են սոքա բնութեամբ Հրեայ 'ի Մանուէայ ումեմնէ. որոյ որդի իւր մեծահասակ և ուժեղ, Սամսոն անուն կոչեցեալ, որպէս սովորութիւն է Հրէիցն՝ ըստ յուսոյ զնախնեացն կոչել անուանս։ Բայց է ճշմարիտ և այժմ իսկ տեսանել 'ի զարմն Ամատունեաց, քանզի անձնեայքն և բարեձևք ըստ պատշաճի վայել են ամենայն իրօք և ուժեղք։ Տարեալք են սոքա 'ի յԱրշակայ առաջինն 'ի Պարթևաց թագաւորեցելոյն, և յառաջադիմութեամբ անդէն յԱրեաց աշխարհին 'ի պատիւ հասեալք 'ի կողմանս Ահմատանի։ Բայց թէ յինչ պատճառաց գալուստ նոցա այսր՝ ոչ գիտեմ. այլ պատուէին յԱրտաշիսէ գեղիւք և դաստակերտօք, և անուանին Ամատունիք, որպէս թէ եկք։

ainsi les signes des limites: il fait tailler des pierres en forme quadrangulaire, les fait creuser en rond dans le milieu, et enfouir dans la terre; puis, il fait élever sur ces pierres des termes à quatre faces, un peu audessus du niveau de la terre. Jaloux de tout cela, Ardachir fils de Sassan, fait exécuter les mêmes travaux en Perse sous son nom, afin que l'on ne souvienne plus de celui d'Ardachès.

On dit que, du temps d'Ardachès, on ne trouvait dans toute l'Arménie aucun terrain inculte, ni dans les montagnes, ni dans les plaines, à cause de la prospérité du pays.

## LVII.

### Satrapie des Amadouni.

On dit que, sous Ardachès, la race des Amadouni vient de la partie orientale du pays des Arik. Cette famille juive d'origine, descend d'un certain Manué Son fils, d'une taille gigantesque et athlétique, est appelé Samson, comme c'est la coutume des Juifs de donner le nom des premiers Juifs dans l'espérance de les voir dignement représentés. Il est vrai qu'on voit encore aujourd'hui la même chose dans la race des Amadouni; car ce sont des hommes robustes, bien faits, doués de grâces et de vigueur en toutes choses. Lorsque les Amadouni furent amenés en Arménie par Archag, premier roi d'entre les Parthes, ils étaient déjà arrivés par degrès en honneur dans le pays des Arik, contrées d'Ahmadan. Mais quelle est la cause de leur migration ici? Je ne sais. Honorés et gratifiés par Ardachès, de villages et d'établissemens, ils s'appellent Amadouni, comme étant étrangers; mais il est des Per-

Եւ կէսք 'ի Պարսից մանուեանս զնոսա կոչեն յանուն նախնւոյն ։

## ԾԸ

Վասն առաւեղենից տոհմին, թէ ուստի սերեալ ազգ ։

ՅՍՈՐԱ աւուրս և առաւեղեանքդ յազգէ Ալանաց մերձաւորք Սաթինկայ զհետ նորա եկեալք, կարգեցան յազգ և 'ի նախարարութիւն աշխարհիս Հայոց, որպէս հարազատք թագուհւոյն մեծի. և 'ի ժամանակս Խոսրովու հօրն Տրդատայ խնամացեալ ընդ ումեմն քաջի Բասղացն եկեալ հատուածի ։

## ԾԹ

Արուեստից գիտութիւն որ ինչ յաւուրս Արտաշիսի ։

ՔԱՆԶԻ բազում ինչ գործք յաւուրս Արտաշիսի գործեցան, վասն այնորիկ 'ի բազում ճառս կոտորեցաք, զի մի երկայնութեամբ բանից տաղտկութիւն ընթերցողացն լինիցի. որոյ է վերջին ճառս այսպիսի ինչ, յիշատակել և զայլսն ես որ ինչ 'ի ժամանակս Արտաշիսի ։ Զի թէպէտ և զայլն ամենայն զոր ինչ յիշատակեցաք յառաջագոյն ճառիցն, կարգք և սովորութիւնք գեղեցիկք հաստատեցան 'ի Վաղարշակայ և յայլոց առաջնոց թագաւորացն, այլ 'ի մեծամեծ արուեստից և 'ի գիտութեանց ունայնացեալք էին, որպէս հինից և ասպատակաց պարապեալք, և այսպիսի գիտութեանց կամ անփոյթ արարեալք, և կամ ոչ հասեալք. զշաբաթուց ասեմ և զամսոց և զտարեաց բոլորմանց ։ Քանզի ոչ այսպիսի ինչ ճանաչիւր առ նոսա, այլոց ազգաց վարելով. և ոչ 'ի ծովակս աշխարհիս նաւագնացութիւնք, և ոչ 'ի վե-

ses qui les appellent encore Manouiens, du nom de leur ancêtre.

## LVIII.

### Maison des Arouéghian. — D'où est issue cette race?

Sous Ardachès, les Arouéghian, de la race des Alans, alliés de Satinig, venus à sa suite, furent admis au droit de nationalité, élevés à la dignité de satrapie en Arménie, comme parens d'une grande reine; et du temps de Khosrov, père de Dertad, ils s'allièrent avec une branche célèbre des Passils, venue en Arménie.

263

## LIX.

### Connaissance des arts introduite sous Ardachès.

Comme quantité de faits ont été accomplis sous Ardachès, pour cela nous les avons partagés en beaucoup de chapitres, de peur que, par la longueur du récit, il n'y ait fatigue pour le lecteur. Ce dernier chapitre est destiné à rappeler tous les autres faits arrivés du temps d'Ardachès; car, quoique, d'après tout ce que nous avons rappelé dans les précédens chapitres, de belles institutions, de sages coutumes aient été établies par Vagharchag et les autres premiers rois, ces princes n'avaient aucune idée des arts libéraux ni des sciences; occupés à des courses et à des incursions, ou ils négligeaient ces sciences, ou les ignoraient: je parle de la succession des semaines, des mois, des années; ces points leur étaient totalement étrangers, bien qu'en usage chez les autres nations. Il n'y avait ni navigation sur les lacs du pays, ni voyage sur les

րայ գետոց Ճանապարհորդութիւնք , և ոչ գործիք ձկանց որսոց . այլ և ոչ յամենայն տեղիս երկրագործութիւնք , բայց դոյզն ուրեք . ըստ օրինակի հիւսիսականաց կողմանց շաղզակերութեամբ և այլովք այսպիսեօք կեցեալք : Եւ այս ամենայն յօրինի յաւուրս Արտաշիսի :

## Կ

### Յաղագս Մահուանն Արտաշիսի :

ԳԵՂԵՑԻԿ իմն պատմէ և Արիստոն փեղղացի յաղագս մահուանն Արտաշիսի : Վասնզի 'ի ժամանակի որպէս ապստամբեցին Հրեայք յԱդրիանոսէ հռովմայեցւոց թագաւորէ , և ետուն պատերազմ ընդ Ռուփոսի եպարքոսի՝ առաջնորդութեամբ առն ուրումն աւազակի , որոյ անունն էր Բարքոքայ , այս ինքն աստեղ որդի , որ էր գործովք չարագործ և սպանող , բայց անուամբ իւրով մեծարանեալ պարծէր , որպէս թէ յերկնից ծագեաց նոցա փրկիչ , իբր նեղելոց և գերեաց : Եւ այնքան սաստկացոյց զմարտըն , մինչև 'ի նա հայելով 'ի բաց կացին 'ի հարկելոյ հռովմայեցւոց Ասորիք և Միջագետք և Պարսք ամենայն . քանզի էր և լուեալ , եթէ եմուտ յԱդրիանոս ախտ ուռկութեան : Բայց մերն Արտաշէս ոչ երկմտեաց 'ի նմանէ :

Եւ եղև ընդ այն ժամանակս հասանել Ադրիանոսի 'ի Պաղեստինէ և սատակել զապստամբսն պաշարմամբ 'ի քաղաքի մի փոքր՝ հուպ յԵրուսաղէմ . վասն որոյ և ամենայն ազգին Հրէից հրամայեաց մերժել 'ի հայրենի աշխարհէն , որ և ոչ 'ի բազում հեռաստանէ հայեսցին յԵրուսաղէմ : Եւ ինքն շինէր զԵրուսաղէմ զաւերեալն 'ի Վեսպիանոսէ և 'ի Տիտոսէ և յիւրմէ . և անուանեաց Եղիայ յիւր ա-

fleuves, ni instrumens de pêche ; l'agriculture même n'était pas pratiquée en tous lieux, mais sur quelques points seulement; comme dans les contrées du nord, on vivait de chairs crues et d'autres alimens pareils. Eh bien ! tout cela est réglé du temps d'Ardachès.

## LX.

### Mort d'Ardachès.

Ce que rapporte Ariston de Pella sur la mort d'Ardachès est vraiment intéressant. En ce temps, les Juifs se révoltèrent contre Adrien, empereur des Romains, firent la guerre contre l'hipparque Rufus, sous la conduite d'un certain brigand dont le nom était Barchochébas, c'est-à-dire fils de l'étoile. Malfaiteur, assassin, cet homme se glorifiait avec vanité de son nom, comme s'il eût été pour les Juifs un sauveur descendu des cieux afin de délivrer les opprimés et les captifs. Il poussa si vivement la guerre que, à cette vue, les Syriens, les habitans de la Mésopotamie et toute la Perse se soustrairent aux tributs des Romains ; car Barchochébas avait appris que le mal de la lèpre avait attaqué Adrien. Mais notre Ardachès ne quitta pas le parti de l'empereur.

Ce fut sur ces entrefaites qu'Adrien arriva en Palestine, et défit les révoltés, en les assiégeant dans une petite ville, près de Jérusalem. En conséquence, il ordonna à toute la nation juive de s'éloigner du pays de ses pères, et les Juifs n'apercevront pas même de loin Jérusalem. Adrien rebâtit Jérusalem, Jérusalem détruite par Vespasien, par Titus, par lui-même ; il nomma cette ville Ælia de son propre nom, car

նուն՝ որպէս և կոչէրն իսկ Ադրիանոս՝ արեգակն ։ Ընակեցոյց 'ի նմա հեթանոսս և քրիստոնեայս, որոց եպիսկոպոս էր Մարկոս ոմն ։ Ընդ այն ժամանակս առաքեաց զօր ծանր զկողմամբք ասորեստանեաց. և մերոյն Արտաշիսի հրամայեաց երթալ 'ի Պարսս հանդերձ իւրովք զիւգոստատօք. զորոյ զհետ քարտուղարութեամբ լեալ այս այր, որ զայս պատմութիւնս ետ մեզ, հանդիպի Արտաշիսի 'ի Մարսս, 'ի Մոհունդ անուանեալ տեղւոջ ։

Պատմի և հիւանդանալ նմա 'ի Մարանդի, 'ի Ռակուրակերտ աւանի. և զԱբեղոյ զոմն նահապետ աբեղինից տոհմին, զայր շոյտ և շողոմարար և սուտակասպաս 'ի նորին խնդրոյ արձակէ Ասկեղեաց Ասրիզայ, 'ի մեհեանն Արտեմիդայ, խնդրել 'ի կռոցն բժշկութիւն և զկազդուրկեանս ։ Որոյ ոչ ժամանեալ դառնալ, հասանէ վախճան Արտաշիսի ։ Այլ գրէ, եթէ որչափ ամբոխութիւնք մեռան 'ի մահուանն Արտաշիսի, սիրելի կանայք և հարճք և մտերիմ ծառայք. և որպիսի՛ շուք բազմադիմիս արարին առ 'ի պատիւ դիոյն, քաղաքական կարգօք և ոչ որպէս զբարբարոսս ։ Դագաղքն էին ոսկեղէնք, գահոյքն և անկողինքն բեհեզեայ. և պատմուճանն որ զմարմնովն՝ ոսկէթել. թագ կապեալ 'ի գլուխն, և զէնն ոսկւով առաջի եդեալ. և զգահոյիւքն շուրջ՝ որդիքն և բազմութիւն ազգականացն, և առ այսոքիւք պաշտօնէիցն զինուորութիւնք, և նահապետքն և նախարարութեանցն գունդք և միանգամայն զօրականացն վաշտք, ամենեքին կազմեալ զինու հանդերձ, իբր թէ 'ի պատերազմ ճակատեցին. և առաջի պղնձիս հարկանելով փողս, և զկնիւրն ձայնարկու կուսանք սուազգեստք և աշխարող կանայք, և զհետ՝ բազմութիւն ռամկին ։ Այս այսպէս տարեալ թաղեցին ։ Այս շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահունք,

on appelait Adrien soleil. Il y établit, des païens et des chrétiens, dont l'évêque était un certain Marc. Vers le même temps, Adrien envoya de grandes forces en Assyrie, et ordonna à notre Ardachès d'aller en Perse avec ses surintendans. Attaché à sa personne en qualité de garde-notes (secrétaire), celui qui nous a donné cette histoire rencontre Ardachès en Médie, dans un endroit appelé Sohount.

Il est dit qu'Ardachès tombe malade à Marant, dans le bourg de Pagouraguerd. Là se trouvait un certain Apégho, chef de la maison des Apéghian, homme actif, astucieux et fourbe adulateur; Ardachès, sur sa demande, l'envoie à Ériza, canton d'Éguéghiatz, au temple d'Artémis, demander à la déesse la guérison et une longue vie. L'envoyé n'est pas encore de retour, et déjà Ardachès n'est plus. Quelle foule de personnes, dit l'historien, moururent à la mort d'Ardachès, et ses femmes bien-aimées, et ses concubines, et ses fidèles esclaves! Quelle pompe ne fit-on pas de mille manières pour rendre honneur à ses dépouilles mortelles, avec tout l'ordre des cités, et non à la manière des barbares! La civière mortuaire était d'or; le trône, le lit, de toile fine; le manteau qui enveloppait le corps, un tissu de fil d'or; une couronne était attachée sur la tête d'Ardachès, son épée d'or posée devant lui. Autour du trône se tenaient les fils du roi défunt, et toute la multitude de ses parens et alliés. Puis, près d'eux étaient les officiers militaires, les chefs des satrapies, les classes des satrapes; les corps de troupes, avec armes et bagages, comme si elles devaient marcher au combat. En avant les trompettes d'airain retentissantes, derrière la cortège des jeunes filles, vêtues de noir, des femmes épleurées, et enfin la foule du peuple.

որպէս վերագոյնն ասացաք ։ Եւ սորա այսպէս սիրելի եղեալ աշխարհիս մերոյ, թագաւորեալ ամս քառասուն և մի ։

## ԿԱ

Արտաւազդայ թագաւորութիւնն, և հալածել զեղբարս իւր և զքորս, և մահ հանդերձ այլաբանելով։

Յետ Արտաշիսի թագաւորէ Արտաւազդ որդի նորա, և հալածէ յԱյրարատոյ զամենայն եղբարս իւր 'ի գաւառս Աղիովտոյ և Առբերանոյ, զի մի բնակեսցեն յԱյրարատ 'ի կալուածս արքայի. բայց միայն զՏիրան պահէ փոխանորդ իւր, զի որդի ոչ գոյր նորա ։ Որ յետ սակաւ ինչ աւուրց թագաւորելոյն իւրոյ, անցեալ զկամրջաւն Արտաշատ քաղաքի' որսալ կինճս և իշավայրիս զակամբք Գինայ, ազմրկեալ իմն 'ի ցնորից խելագարանաց, ընդ վայր յածելով երիվարաւն, անկանի 'ի խոր իմն մեծ, և խորասոյզ լեալ' անհետի ։

Զսմանէ երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս. եթէ 'ի մահուանն Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց. դժուարի, ասեն, Արտաւազդ' ասելով ցհայրն. Մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս ո՞րպէս թագաւորեմ։ Վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի' ասաց այսպէս. Եթէ դու յորս հեծցիս յազատ 'ի վեր 'ի Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յազատ 'ի վեր 'ի Մասիս, անդ կացցես, և զլոյս մի տեսցես ։

Ce fut ainsi qu'on porta, qu'on enterra Ardachès. Autour de son tombeau eurent lieu bien des morts volontaires, comme nous l'avons dit plus haut. Ainsi finit ce prince chéri de notre pays, ayant régné quarante-et-un ans.

## LXI.

**Règne d'Ardavazt. — Ce prince chasse ses frères et sœurs. — Mort d'Ardavazt avec toutes les circonstances fabuleuses.**

Après Ardachès règne Ardavazt, son fils. Ce prince chasse de l'Ararat tous ses frères, et les relégue dans les cantons d'Aghiovid et d'Arpéran, pour les empêcher d'habiter en Ararat, dans les domaines du roi. Mais il garde seulement près de lui Diran, comme agrégé et successeur au trône, car Ardavazt n'avait pas de fils. Le roi, après quelques jours de règne, en passant sur le pont de la ville d'Ardachad, pour aller chasser les sangliers et les ânes sauvages, près les sources de Kine, l'esprit troublé par quelque accès de folie, errant çà et là sur son cheval, tombe dans une vaste profondeur, et disparait entièrement.

Voici les fables que les chants de Coghten publient sur le compte d'Ardavazt : à la mort d'Ardachès, disent ces fables, il y eut beaucoup de sang répandu, suivant l'usage des païens. Ce que voyant avec peine, Ardavazt dit à son père : « Tandis que tu es parti, emportant avec toi tout le pays, que ferai-je, moi ? comment régner sur des ruines ? » Pour cela Ardachès maudit Ardavazt, et lui parla ainsi : « Si tu vas à cheval chasser sur le noble Massis, les braves habitans te prendront, te méneront sur le noble Massis ; tu resteras là, et tu ne verras plus la lumière ».

Զրուցեն զսմանէ և պառաւունք, եթէ արգելեալ կայ յայրի միում՝ կապեալ երկաթի շղթայիւք. և երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն, ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ 'ի ձայնէ կռանահարկութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն։ Վասն որոյ և առ մերով իսկ ժամանակաւ՝ բազումք 'ի դարբնաց, զհետ երթալով առասպելին, յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ։ Բայց է ճշմարտութեամբ այսպէս, որպէս աստացաքս վերագոյն։

Այլ ոմանք ասեն և 'ի ծնանելն զսա դիպեալ պատահարաց իմն. զոր համարեցան կախարդել զսա կանանց զարմիցն Աժդահակայ. վասն որոյ զնոսա բազում չարչարեաց Արտաշէս։ Եւ զայս նոյն երգիչքն յառասպելին ասեն այսպէս. եթէ վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ եդին։ Բայց ինձ արդարացեալ թուի լուրն այն, թէ 'ի ծննդենէն ևեթ մոլութեամբ լեալ, մինչ նովիմբ և վախճանեցաւ։ Եւ առնու զթագաւորութիւնն Տիրան եղբայր նորին։

## ԿԲ

### Որ ինչ վասն Տիրանայ։

ԹԱԳԱՒՈՐԷ Հայոց Տիրան որդի Արտաշիսի յերրորդ ամի Պերոզի առաջնոյ Պարսից արքայի։ Սորա ոչ ինչ պատմին գործք մեծամեծք, այլ միայն՝ թէ մտերմութեամբ ծառայեաց Հռովմայեցւոց. եկաց խաղաղութեամբ, որսոց և զբօսանաց պարապեալ, որպէս ասեն։ Եւ ձիոց երկուց լեալ՝ թեթև առաւել քան զՊեգասոս երագութեամբ անգաւ. զորս

Les vieilles femmes racontent d'Ardavazt, qu'il est incarcéré dans quelque caverne, chargé de chaînes de fer; deux chiens rongent incessamment les chaînes d'Ardavazt, qui s'efforce de s'échapper et de causer la fin du monde; mais, sous les coups retentissans des forgerons, les fers du captif, dit-on, prennent une nouvelle force. C'est pourquoi, même de notre temps, beaucoup de forgerons, suivant les enseignemens de la fable, battent l'enclume trois ou quatre fois le premier jour de la semaine, pour consolider, disent-ils, les chaînes d'Ardavazt. Mais la vérité est ce que nous avons rapporté plus haut.

On dit encore que, à la naissance d'Ardachès, il arriva un incident malheureux. Les femmes des descendans d'Astyage passèrent pour avoir jeté un sort sur Ardavazt; c'est pourquoi Ardachès les persécuta de mille manières. Voici ce que disent les chants de la fable: les descendans du dragon enlevèrent le jeune Ardavazt, et mirent un démon à sa place. Mais cette nouvelle me parait justifiée en ce que, depuis sa naissance jusqu'au moment de sa fin, Ardavazt fut atteint de folie. Diran son frère, prend la couronne.

## LXII.

### Faits relatifs à Diran.

Diran, fils d'Ardachès, règne en Arménie, la troisième année de Béroze Ier, roi des Perses. On ne rapporte de Diran aucune action d'éclat; on dit seulement qu'il servit les Romains avec fidélité. Ce prince vécut en paix, occupé de chasse et de plaisirs, comme l'on dit. Il avait deux chevaux plus légers à la course que Pégase; on eût dit qu'ils ne foulaient pas la terre, mais

ոչ երկրակոխս, այլ օդագնացս համարեցին. յոր խնդրեալ հեծանել Գատաքէի ուրումն իշխանի Բզնունեաց, պարծէր ընչեղագոյն գոլ քան զարքայ։

Եւ եկեալ առ նա կանխագոյն իւրոյ ազգին Արշակունեաց, որ էին 'ի կողմանս Հաշտենից, ասեն. Ընդարձակեա մեզ զժառանգութիւնս, զի նեղ է. քանզի բազմացաք։ Եւ նա հրամայէ ոմանց 'ի նոցանէ երթալ 'ի գաւառն Աղիովտի և Առբերանոյ։ Իսկ սոցա առաւել ևս բողոք կալեալ առ արքայի, թէ առաւելագոյն նեղ է մեզ, ոչ ինչ ունկնդիր լինի Տիրան. այլ հաստատեալ վճիռ՝ ոչ այլ ժառանգութիւն տալ նոցա, բայց զոր ունին հաւասար տրոհել յինքեանս։ Զոր բաժանեալ ըստ մարդաթուի, գտաւ պակաս ժառանգութիւն բնակողացն Հաշտենից. վասն որոյ բազումք 'ի նոցանէ եկեալ 'ի գաւառն Աղիովտի և Առբերանոյ։

Յաւուրս սորա ասեն լեալ զպատանի ոմն յազգէն Անձաւացեաց, սէգ յամենայնի, Երախնաւու անուն կոչեցեալ. որ առնէ կին զվերջին կանանցն Արտաւազդայ, զոր 'ի Յունաց էր ածեալ։ Եւ քանզի զաւակ ոչ գոյր Արտաւազդայ, արքայ թողու յԵրախնաւու զամենայն տունն Արտաւազդայ։ Զի ասէին զնա այր ընտիր լինել և համեստ յամենայնի, այլ և 'ի ցանկութիւն մարմնոյ իբրև զօրինաւոր ոք։ Զոր սիրեալ արքայի, տայ նմա զգահն երկրորդական, զոր ունէրն Արտաւազդ. և զհոգս արևելեան զօրուն 'ի նա հաւատացեալ, առ նմա թողու զԳրուասպ ոմն պարսիկ զմտերիմ իւր, որ խնամացեալ էր ընդ նախարարս Վասպուրականի, որում տուեալ էր զաւանն Տատեօնս հանդերձ ագարակօքն, և զայգին մեծ՝ յոր մտանէր առուն՝ գետ հանեալ 'ի ծովէն Գայլատուայ։ Եւ ինքն գնայ զկողմամբք Եկե-

bien qu'ils fendaient l'air. Un jour, Tadakè, prince des Peznouni, ayant demandé à monter sur ces chevaux, se glorifia d'être plus magnifique que le roi.

Venus vers Diran, les hommes de sa race, de la race des Archagouni, qui étaient dans les contrées de Hachdiank, lui disent : « Élargis, étends nos possessions, qui sont trop resserrées, car nous avons multiplié ». Le roi ordonne à une partie d'entre eux d'aller dans le canton d'Aghiovid et d'Arpéran. Mais ces gens ayant adressé au roi de nouvelles et de plus vives réclamations, en disant : « Nous sommes encore plus à l'étroit », Diran n'écoute rien. Il décide de ne pas leur donner d'autres possessions, mais bien de partager entre eux, par égale partie, le territoire qu'ils occupent. Le partage fait par tête, le territoire de Hachdiank fut trouvé insuffisant pour le nombre des habitans. En conséquence, grand nombre d'entre eux allèrent dans les cantons d'Aghiovid et d'Arpéran.

Il y avait, dit-on, du temps de Diran, un jeune homme de la race des Antzévatzi, jeune homme superbe en toutes choses, appelé Érakhnavou ; il épouse la dernière des femmes d'Ardavazt que ce prince avait amenée de Grèce, et, comme Ardavazt n'avait point d'enfant, le roi laisse à Érakhnavou toute la maison d'Ardavazt. Car on disait Érakhnavou homme de mérite, plein de modestie, homme réglé dans ses passions. Le roi, qui l'aime, lui donne la seconde dignité de l'état qu'occupait Ardavazt, lui confie le commandement de l'armée d'orient, et laisse près de lui le Perse Trouasb, son favori, qui était allié aux satrapes du Vasbouragan, et à qui il avait donné le bourg Dadion avec ses terres, et une grande vigne arrosée par un venant du lac de Caïladou. Diran s'en alla dans les contrées d'Éguéghiatz, fixer sa cour dans le bourg Tchermès.

ղեաց, ՚ի յաւանին Զըրմէս հաստատելով զարքունիսն: Ի հանդարտութեան վարեաց զթագաւորութիւնն՝ ամս քսան և մի. և մեռաւ ՚ի Ճանապարհի, ձեան հիւսիսոյ կալեալ:

## ԿԳ

Յաղագս Տրդատայ բագրատունւոյ և անուանց ազգի նորա առաջնոյ:

ՏՐԴԱՏ սմին անուն յազգէն Բագրատունեաց, որդի Սմբատուհեայ դստեր քաջին Սմբատայ, այր սրտեայ և ուժեղ, կարճ հասակաւ և գձուձ տեսլեամբ, զոր իւր փեսայացոյց արքայ Տիրան ՚ի դուստր իւր Երանեակ: Որ ատեցեալ զայր իւր զՏրդատ, պչրանօք և պռստելեաւ կայր զօրհանապազ, աւաղելով զինքն, իբր թէ չքնաղագեղ ընդ վատակերպոյ և քաջատոհմիկ ընդ վատթարազգւոյ բնակէ: Ընդ որ զայրացեալ Տրդատ, յաւուր միում գանէ զնա սաստկապէս. և կտրեալ զգեղձան հերսն և զվարսիցն փետտեալ զխոպոպիս, հրամայէ քարշել արտաքս և ընկենուլ ՚ի սենեկէն: Եւ ինքն գնաց ապստամբեալ ՚ի կողմանս ամրութեանն Մարաց. և հասեալ ՚ի Սիւնեաց աշխարհն, ժամանէ նմա համբաւ մահուանն Տիրանայ. զոր լուեալ՝ դադարէ անդ:

Եւ եղև յաւուր միում կոչել զնա յընթրիս Բակուրոյ նահապետին Սիւնեաց. և յուրախանալն գինւով՝ տեսեալ Տրդատայ զկին մի, զի յոյժ գեղեցիկ էր, և երգէր ձեռամբ, որում անուն էր Նազինիկ, տռփացաւ և ասէ ցԲակուր. Տուր ինձ զվարձակս զայս. և նա ասէ. Ոչ տամ, զի հարճ իմ է: Իսկ Տրդատայ բուռն հարեալ ՚ի կինն, յիւրն քարշեաց ՚ի բազմականն. շամչելով վաւաշէր ըստ օրինակի երիտասարդի անարգել տարփաւորի: Ընդ որ խան-

Diran occupa en paix le trône vingt-et-un ans; il mourut en route, sous la neige glaciale.

## LXIII.

Dertad Pacradouni. — Noms de sa première race.

Dertad, de la race des Pacradouni, fils de Sempadouhi, fille du brave Sempad, était un homme courageux et robuste, petit de taille et d'un extérieur chétif. Le roi Diran lui fit épouser sa fille Éraniag. La princesse, qui haïssait son mari Dertad, se lamentait, murmurait sans cesse, se plaignant d'être forcée, elle, si belle, d'habiter avec un homme si laid, d'être alliée, elle, d'une illustre maison, à un homme d'une basse extraction. Dertad, indigné contre sa femme, la frappe un jour très rudement, lui arrache ses cheveux blonds, et, après lui avoir entièrement emporté toute boucle, toute chevelure, ordonne de l'entrainer, de la jeter hors la chambre. Lui-même s'étant révolté, s'en alla dans les contrées fortifiées de Médie. Arrivé au pays des Siouni, il apprend la nouvelle de la mort de Diran, et, à cette nouvelle, il s'arrête.

Un jour Dertad est invité à la table de Pagour, chef de la famille des Siouni. Au milieu des joies du vin, il voit une femme qui était très belle, et chantait en s'accompagnant d'un instrument; le nom de cette femme était Nazinig. Dertad, transporté d'amour, dit à Pagour: « Donne-moi cette chanteuse ». — « Non, répond Pagour, car c'est ma concubine ». Dertad saisissant alors Nazinig, la tira à lui au milieu du festin, car Dertad était libertin, débauché comme un jeune homme aux pas-

դացեալ Անկրոյ, յարեաւ հանել զնա 'ի նմանէ ։ Բայց յոտն կացեալ Տրդատայ, ծաղկական սկտեղն իբր զինու վարեցաւ, նա և զբարձակիցսն 'ի բազմականացն 'ի բաց պուղեաց ։ Եւ անդ էր տեսանել նոր զոմն Ոդիսեւս՝ զՊենելոպայ զսեղեխն սատակելով, և կամ զԼապիթեայցն և զյուշկապարկացն կռիւս 'ի վերայ Պերիթեայ հարսանեացն ։ Եւ այնպէս յիւր վանսն եկեալ, իսկոյն 'ի ձի ելեալ հանդերձ հարճիւն 'ի Սպեր գնաց ։ Զայս աւելորդ եդև պատմել մեզ զնահատակութիւն առնն ցանկասիրի ։

Բայց գիտեա, զի 'ի թողուլ ազգին Բագրատունեաց զօրէնս հարցն, նախ խժական ժառանգեցին յորջորջումն, Բիւրատ և Սմբատ և այլ այսպիսի կոչմունս, զրկեալ 'ի նախնական անուանցն, որպէս կոչէին յառաջ քան զուրանալն՝ Բագադիա, Տուբիա, Սենեքիա, Ասուդ, Սափատիա, Ղազարիա, Ենանոս ։ Եւ ինձ թուի, թէ որ այժմդ կոչին Բագրատունիք Բագարատ՝ Բագադիա է դա, և Ասուդ՝ Աշոտ . դոյնպէս և Ղազարիա՝ Ղարազ, որպէս Շամբատ՝ Սմբատ ։

## ԿԴ

Եթէ փոքր Տիգրան վերջին, և զինչ 'ի նմանէ գործք ։

Փոխանորդէ զՏիրան՝ եղբայր իւր Տիգրան վերջին, թագաւորեալ Հայոց 'ի քսան և 'ի չորրորդի ամի Պերոզի Պարսից արքայի . և երկայնակեաց եղեալ ամս քառասուն և երկու՝ մեռանի, ոչ ինչ գործ արժանի յիշատակի ցուցեալ, այլ 'ի յաղջկանէ միոջէ 'ի յունէ 'ի կալանս ըմբռնեալ, 'ի ժամանակին յորում վախճանեցաւն Տիտոս երկրորդ թագաւոր հռովմայեցւոց, որ անուանեցաւն Անտոնինոս Աւգոս-

sions déréglées. Pagour, furieux de jalousie, se leva pour arracher sa concubine des bras du ravisseur; mais Dertad debout, s'arma d'une assiette chargée de fleurs, et chassa du banquet ceux qui, comme lui, y étaient assis. On croyait voir un nouvel Ulysse expulsant l'amant de Pénélope, ou bien les combats des Lapithes et des Onocentaures, au sujet des noces de Pirithoüs. Dertad arrivé ainsi en sa maison, monta aussitôt à cheval, et alla avec sa concubine au canton de Sber. Il était superflu de retracer les entreprises audacieuses de cet homme passionné.

Apprends que la race des Pacradouni, en abandonnant les lois de ses pères, reçut d'abord des noms barbares: Piourad, Sempad et autres noms semblabes; privés ainsi de ces noms primitifs, de ces noms d'aïeux qu'ils portaient avant leur renonciation: Pacatia, Doupia, Sénékia, Assout, Sapadia, Vazaria, Énanus. Il me semble que ce nom Pacarad, que portent à présent les Pacradouni, est bien Pacatia, comme Assout est Achod; de même aussi Vazaria est Varaz, comme Champad est Sempad.

## LXIV.

### Dicran dernier du nom. — Quels sont ses faits et gestes?

A Diran succède son frère Dicran, dernier du nom, qui règne sur l'Arménie la vingt-quatrième année de Béroze, roi des Perses. Après une longue vie de quarante deux ans, Dicran meurt, sans avoir fait une action digne de mémoire; mais il fut pris captif par une jeune fille grecque, dans le temps où mourut Titus deuxième, empereur des Romains, nommé Antonin Auguste. Béroze, roi des Perses, fondit sur l'empire des

տոս ։ Նաև Պերոզ արքայ Պարսից 'ի հռովմայեցւոց իշխանութիւնն արշաւեաց , ուստի և Պերոզ անուանեցաւ , որ է յաղթող ․ քանզի յառաջ անուանիւր Ղաղէզգեսոս 'ի Յունաց լեզուն ․ բայց թէ Պարսք զինչ կոչեն զնա , ոչ գիտեմ ։

Արդ յասպատակէն Պերոզի ընդ Ասորիս՝ 'ի կողմանս պաղեստինացւոց , վասն նորա և հրամանաւ նորին՝ և մերն Տիգրան 'ի միջերկրեայս ․ և 'ի կալանս ըմբռնեալ յաղջկանէ միոջէ իշխելոյ կողմանցն այնոցիկ , մինչ դեռ Ղուկիանոս կեսար յԱթէնս զմեհեանն չինէր ․ որոյ և անցեալ զօրօք բազմօք 'ի միջերկրեայսն յետ մեռանելոյն Պերոզի նուաճեաց զՀայս , և արձակեաց զՏիգրան ։ Նա զՍոփի զկոյս , զմերձաւոր իւր , նմա կնութեան ․ զոր եկեալ 'ի Հայս 'ի բաց թողու , և 'ի նմանէ լեալ պատանիս չորս՝ ազգ սերէ յանուն մօրն իւրեանց Սոփեայ՝ ռոփսեան ․ և զառաջին մանկանցն գլուխ նահապետ կացուցանէ , և կարգէ ընդ այլ նախարարութիւնս , զի մի անուանեսցին արշակունիք ։

Նաև այլ՝ որ ինչ կրտսերագոյն ազգ , եթէ աստ և եթէ զկողմամբք Կորճէից , հաստատէ այս Տիգրան ․ որք միանգամ անազգիք էին 'ի վաշտս և անձամբ երևելիք , և վասն նորա փրկութեան պատերազմեալ ընդ Յոյնս , որք 'ի Կորճէից և որք 'ի մերմէ կողմանէս , զյառաջագունից ասացելոց մօտաւորաց Աղձենից և զարմից հայկազանց , ոմանք 'ի յեկաց ։ Զոր ոչ անուամբ պատմեսցուք ․ է ինչ՝ որ վասն յայտնի ոչ լինելոյ մեզ , և է ինչ՝ որ վասն աշխատութե՜ 'ի վաստակելն խօսս տալով ․ երրորդ , զի և անհաստատութիւնն բազմաց՝ կարծիս 'ի ներքս ածէ ընդ բնաւն անցանել ։ Նաև այսորիկ աղագաւ՝ ոչ ինչ վասն այնց ազգաց , որք 'ի վերջնոյն Տիգրանայ կարգեցան , ճառեսցուք , թէ և բազում անգամ վասն այսր 'ի մէնջ

Romains, de là il fut nommé Béroze, c'est-à-dire vainqueur, car avant il se nommait Vologèse en langue grecque; mais comment l'appellent les Perses? je ne sais.

En même temps que Béroze fait incursion en Syrie, aux contrées de la Palestine, pour lui, et par ses ordres, notre Dicran fait incursion dans les terres méditerranées. Il est fait captif par une jeune princesse qui gouvernait le pays, dans le temps que Lucinius César élevait son temple à Athènes. Lucinius étant passé avec beaucoup de troupes dans les terres méditerranées, après la mort de Béroze, soumit l'Arménie, et délivra Dicran; il lui donna la jeune Rufa, sa parente, en mariage: mais, arrivée en Arménie, Dicran la délaisse; quant aux quatre jeunes fils qu'il a eus d'elle, il en fait une race appelée du nom de leur mère Rufa, Rufian. Dicran fait le premier de ces enfans, le chef de la famille qu'il met au rang des autres satrapies, pour l'empêcher de s'appeler Archagouni.

Quant aux branches cadettes ici et dans les contrées Gordjaïk, c'est Dicran qui les établit: c'était des individus qui, sans rang dans les milices, mais remarquables de leurs personnes, avaient combattu pour la cause de Dicran, en Grèce, des individus provenant des contrées Gordjaïk ou bien de notre côté; je veux parler de nos premiers voisins les Vedjiank et des descendans de Haïg, des étrangers même. Nous ne les appelons pas par leurs noms, à cause de l'ignorance où nous sommes à cet égard, à cause des difficultés de l'investigation; enfin, parce que le peu de fixité et la variété des opinions nous obligerait à les passer toutes en revue. Pour cette raison, nous ne dirons rien de ces races constituées par Dicran, dernier du nom, quoique plusieurs

աղերսիցես. այլ միայն զորս հաւատի գիտեմք զկը-
նիմն: Զի որչափ էր հնար, փախեաք յաւելորդ և
'ի պաճուճեալ բանից, և որ ինչ յանհաւատին հայ-
էր բանն և մտածութիւնն. միայն զհետ երթալով
ըստ կարողութեան՝ որ ինչ այլուստ և կամ 'ի մէնջ
զարդարոյն և զճշմարտի: Զնոյն և աստանօր պատ-
րաստելով, արգելումզընթացս բանից յոչ պատշաճէն
և որ զանհաւատութեանն 'ի ներքս ածել ակնարկէ
կարծիս: Եւ զքեզ, որպէս բազում անգամ, և այժմ
աղաչեմ, մի յաւելորդումն համարել զմեզ. և սա-
կաւ և կամ յոլով բանիւք՝ զմեծ և զհաւատի բո-
վանդակ աշխատութիւնս մեր՝ ընդ վայր և աւելորդ
ցուցանելով գործ. զի նմանագոյնս որպէս ինձ՝ և
քեզ գործէ վտանգս:

## ԿԵ

Յաղագս թագաւորելոյն Վաղարշայ, և շինելոյ զաւանն Բասենոյ, և պատել պարսպաւ զՆոր քաղաք, և պատերազմ ընդ Խազրաց և մահ նորին:

ՅԵՏ մահուանն Տիգրանայ թագաւորէ Վաղարշ
որդի նորին յերեսուն և երկու ամի հոմանուանն իւ-
րոյ Վաղարշայ Պարթևաց արքայի: Սա շինէ աւան
մեծ զտեղի ծննդեան իւրոյ 'ի վերայ Ճանապարհին.
ուր 'ի գնալն մօր իւրոյ 'ի ձմերոց յԱյրարատ, յան-
կարծակի պատեալ երկանց 'ի գնացու՝ ծնաւ 'ի վերայ
Ճանապարհին, 'ի գաւառին Բասեան, 'ի տեղւոջ
ուր խառնին Մուրց և Երասխ. զոր շինեաց յիւր ա-
նուն, և կոչեաց Վաղարշաւան: Սա պատեաց պարս-
պաւ և զհզօր աւանն Վարդգեսի, որ 'ի վերայ Քա-
սախ գետոյ. զորմէ յառաջապէն ասեն. Հատուած
գնացեալ Վարդգէս մանուկն 'ի Տուհաց գաւառէն,

fois tu nous aies prié de traiter ce sujet. Mais nous parlerons seulement de ce dont nous sommes certain, des faits postérieurs ; car nous avons évité, autant que possible, toute superfluité, toute parole pompeuse, tout ce qui n'est qu'incertitude et réflexion, nous attachant seulement, selon notre pouvoir, à tout ce qui de notre part ou d'autre part est juste et vrai ; faisant encore ici la même chose, je proscris toutes ces paroles inconsidérées, tout ce qui tend à introduire des opinions de doute et d'incertitude. Je te conjure encore, comme je t'ai déjà conjuré bien souvent, de ne pas nous forcer à des récits superflus, en faisant de notre travail, qui est partout une œuvre grande et basée sur la vérité des faits ; en faisant, disons-nous, de notre travail une œuvre vaine et superflue. Le danger serait le même pour toi que pour moi.

## LXV.

Règne de Vagharch. — Construction du bourg de Pasène. — La nouvelle ville est entourée de murailles. — Guerre contre les Khazirs. — Mort de Vagharch.

Après la mort de Dicran, Vagharch, son fils, règne la trente-deuxième année de son homonyme Vagharch roi des Perses. Vagharch élève un grand bourg au lieu même de sa naissance sur le chemin. Sa mère, en allant pour passer l'hiver en Ararat, se trouvant tout-à-coup surprise de douleurs, était accouchée sur le chemin dans le canton de Pasène, à l'endroit où se mêlent le Mourtz et l'Éraskh. Vagharch couvrit cet endroit de constructions, et de son nom le nomma Vagharchavan, l'entoura de murailles ainsi que le bourg de Vartkès, situé sur le fleuve Cassagh. Voici ce que dit la fable : Vartkès encore enfant étant parti du canton

զՔասաղ գետով, եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով, կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի: Այս Երուանդ՝ առաջինն է սակաւակեացն, որ 'ի Հայկազանց, զորոյ զքոյրն կին առեալ Վարդգէսի, շինեաց զաւանս զայս. յորում և Տիգրան միջին յարշակունեաց նստոյց զհասարակ առաջնոյ գերութեանն Հրէից, որ եղև քաղաքագիւղ վաճառօք: Այժմ այս Վաղարշ պատեաց պարսպաւ և հզօր պատուարաւ, և անուանեաց Վաղարշապատ, որ և Նոր քաղաք:

Սա թագաւորեալ ամս քսան, մեռաւ. թէ լոկ և այլքն կեցին. բայց ասեմ զսա և յետ մահուանն կեալ, յաղագս բարի անուանն քան զթուլագոյնս 'ի թագաւորաց: Վասն զի 'ի սորա աւուրս միաբանեալ ամբոխութիւն 'ի հիւսիսականացն, զԽազրաց ասեմ և զԲասլաց, արտաքս քան զդուռն Ճորայ ելանել, առաջնորդ և թագաւոր ունելով ինքեանց զՎնասեպ ոմն Սուրհապ. որք անցեալ վտարին այսր զԿուր գետով: Որոց պատահեալ Վաղարշ ամբոխիւ մեծաւ և արամբք մարտկօք՝ ցիր դիաթաւալ կացուցանել զամբոխն ընդ երեսս դաշտին, և ձիգ զհետ եղեալ՝ անցանէ ընդ կապանն Ճորայ: Ուր միւսանգամ միաբանեալ թշնամեացն, յօրինեցին ճակատ. զորս թէպէտ և վանեալ քաջացն Հայոց՝ փախստական առնէին, սակայն Վաղարշ մեռանի 'ի ձեռաց կորովեաց աղեղնաւորաց:

Նա առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորա յերրորդ ամի Արտաւանայ Պարսից արքայի: Նա նոյն հետայն միաբանեալ զզօրս Հայոց, անցանէ ընդ լեառնն մեծ, վրէժս պահանջելով զմահուան հօրն. և վանեալ սրով և գեղարդեամբ զհզօր ազգսն զայնոսիկ, մի 'ի հարիւրոց յամենեցունց պատանեաց առնու պատանդս. և զիւրոյ տէրութեանն նշանակ՝

Douh, près le fleuve Cassagh, va s'arrêter sur la colline Cherèz près de la ville Ardimèt, du fleuve Cassagh, se met à tailler, à sculpter la porte du roi Érouant. C'était Érouant Ier, qui vécut peu, descendant de Haïg. Vartkès ayant épousé la sœur d'Érouant, bâtit ce bourg. Dicran second, de la race des Archagouni, y établit la foule des Juifs captifs lors de la première captivité, et cette place devint un village commerçant. Vagharch l'entoura de murailles et de forts remparts et l'appela Vagharchabad: c'est la Nouvelle ville.

Ce prince mourut après avoir régné vingt ans; les autres ont seulement vécu: lui, je le dis, vit, après sa mort, à cause de sa bonne réputation qui l'élève bien audessus des rois lâches et efféminés. Car, de son temps des masses liguéesde septentrionaux, je parle des Khazirs et des Passils, s'avancent au-delà de la porte Djora, sous la conduite de leur roi Venaseb Sourhab, passent le fleuve Gour. Vagharch accourt à la tête d'une armée considérable de vigoureux soldats, fait rouler quantité de cadavres sur la surface de la terre, et poursuivant l'ennemi, passe par le défilé de Djora. Là, les ennemis s'étant ralliés, reformèrent leur front de bataille ; quoique les braves enfans de Haïg les aient chassé, mis en fuite, cependant Vagharch meurt sous les traits des vigoureux archers.

Le trône de Vagharch est occupé par Khosrov, son fils, la troisième année d'Ardavan, roi des Perses. Aussitôt ce prince, à la tête des forces d'Arménie, passe la grande montagne pour venger la mort de son père; chasse avec le glaive et le javelot ces peuples intrépides, prend sur eux le centième de toutes les choses utiles, et comme signe de sa domination laisse une co-

արժան հաստատէ հելլենացի գրով, որպէս զի յայտ լիցի ըստ հնազանդութեամբ լինել հռովմայեցւոց ։

## ԿԶ

Եթէ ուստի՞ զայսոսիկ պատմէ ։

ՈՒՍՈՒՑԷ մեզ զայս Բարդածան, որ յԵդեսիայ. քանզի նա յաւուրս Անտոնինոսի վերջնոյ երևեցաւ պատմագիր ։ Որ յառաջ աշակերտեալ էր աղանդին Վաղենտիանոսի, զոր յետոյ անարգեալ յանդիմանեաց. ոչ գալով 'ի ճշմարտութիւն, այլ միայն 'ի նմանէ զատուցեալ՝ այլ հերձուած յարդարեաց յինքենէ ։ Սակայն զպատմութիւնս ոչ ստեաց, զի էր այր կորովի բանիւք. որ և առ Անտոնինոս համարձակեցաւ գրել թուղթ, և բազում ասացուած արար ընդդէմ աղանդոյն մարկիոնացւոց և բաշխից և կռւոց պաշտաման, զոր 'ի մերում աշխարհիս ։

Վասն զի եկն նա այսր, որպէս զի աշակերտել զոք կարասցէ 'ի խուժ հեթանոսացս, և իբրև ոչ ընկալեալ եղև, եմուտ նա յամուրն յԱնի, և ընթերցեալ զմեհենական պատմութիւնն, յորում և զգործս թագաւորացն, յաւելլով իւր և որ ինչ առ իւրեաւն, և փոխեաց զամենայն 'ի լեզու ասորի. որ և ապա անտի յեղաւ 'ի յոյն բան ։ Յորում պատմէ 'ի մեհենիցն պաշտամանց, վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի 'ի բագնացն աւանի, որ 'ի Բագրևանդ գաւառի, բագինն 'ի վերայ գերեզմանին շինեալ՝ զի 'ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, և ընդունիցին հեւրք երեկօթիւք ։ Յորում և զկնի Վաղարշ տօն աշխարհախումբ կարգեաց իսկզբան ամի նորոյ,

